ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՄԷ.

# ՏԱՏԵԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

ԳՐԵՑ

Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1968



# ՏԱՏԵԱՆ ԳԵՐԴԱՍՏԱՆԸ

ԳՐԵՑ

**Հ. ԵՓՐԵՄ Վ. ՊՕՂՈՍԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1968

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Երբ 1963ին «Կոչ» մը կը հրատարակէի Պոլսոյ «Մարմարա»ի մէջ (Մարմարա, 1963, Մայիս 17, թիւ 6861), ի խնդիր հում նիւթերու Տատեանն Գերդաստանի մասին՝ ոչ մէկ հասցէ ունէի ողջ Տատեանցիի մը։ Ներկայիս ծանօթ են ինծ աւելի քան 50 ողջ Տատեանցիներ՝ Պոլիս, Աթէնք, Ֆրանսա, Բելգիա, Ամերիկա, եւ այլն։

Ուրախ եմ որ այսօր լոյս կը տեսնէ երկար եւ յոգնեցուցիչ պրպտումներու այս արգիւնքը՝ իբրեւ Ա. Հատոր իմ «Տատեանն Գերդաստանը» գործիս, որ ուրիշ բան չէ, եթէ ոչ նոյն Գերդաստանի Ա. Տոհմին պատմութիւնը լոկ։ Պատրաստ է նաեւ Բ. Տոհմի ձեռագիրը, յուսալով որ ան ալ բախտը կ'ունենայ օր մը լոյս աշխարհ գալու։

Բէյրութ, 1968 Յունիս։

Հեղինակը



# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Թրքահայ ամենահնագոյն Գերդաստանն է Տատեանց Գերդաստանը, որուն պատմութիւնը, իր ամբողջութեանը մէջ, տակաւին գրուած չէ, որքան գիտենք:

Տատեան Գերդաստանը ունեցած է ընտանեկան «ժամանակագրութիւն» մը, որուն հեղինակն է Յովհաննէս Պէյ Տատեան:

Այդ ժամանակագրութիւնը, որ Ձեռագիր է՝ կը բաղկանայ 57 մանրատառ մեծադիր էջերէ եւ բաժնուած է 47 հատուածներու: Ձեռագրին բովանդակութիւնն է Տատեան Գերդաստանի վերաբերեալ անձերու եւ անցքերու եւ ուրիշ քանի մը դէպքերու արձանագրութիւններ՝ սկսած Յովհաննէս Պէյի ծննդեան թուականէն՝ 1798 մինչեւ 1846ական թուականը:

Այս Ձեռագիր — ժամանակագրութիւնը ժամանակին ձեռք ձգած էր Հրանտ Ասատուր եւ զայն հիմ առնելով մտադրած էր գրել ամբողջական պատմութիւնը Տատեան Գերդաստանի՝ յատկապէս Ս. Փրկչի Ազգ. Հիւանդանոցի Տարեցոյցին համար: Իր մահը արգելք կ'ըլլայ այդ մտադրութեան գործադրութեան:

Թորոս Ազատեան՝ Հրանտ Ասատուրէն ստանալով այդ ժամանակագրութիւնը

(Հմմտ. Ընդարձակ Տարեցոյց 1932, էջ 90) անկէ 14 հատուածներ կը հրատարակէ Ընդարձակ Տարեցոյցին (1932, էջ 91—100) մէջ, մնացածէն կ՚օգտուի՝ իր մէկ գրութեան մէջ, որ սա խորագիրը կը կրէ. «Տատեան Գերդաստանին ծագումը եւ իր ականաւոր դէմքերը» (Աստղաբերդ, Կ. Պ. 1951 Թ. 8—9), զոր 1952ին առանձին հատորի ձեւով լոյս կը հանէ՝ իբրեւ 18 թիւ «Մշակոյթ» մատենաշարի:

Այս «Ժամանակագրութեան» բնագիրը Երեւան գրկած է Տիկին Աննա Ն. Պուտրոս Ղալի, Թոռնուհին Պօղոս Ամիրայ Տատեանի եւ մեքենագրուած օրինակ մը ստանալով Երեւանէն՝ զայն ինծի տրամադրեց ազնիւ Տիկինը: Այս մեքենագրուած օրինակին վերնագիրն է՝ «Օրագրութիւն Յովհ. Տատեանի — որդի Մահտեսի Առաքել Տատի 1798—1846 (Օրագրութեան շրջանը)»:

Բռնած է 55 էջ:

Տատեան Գերդաստանի մասին ցարդ լոյս տեսած մասնակի գրութիւններէն կարեւորը՝ Թորոս Ազատեանի յօդուածն է իր «Աստղաբերդ» ամսօրեայ հանդէսին մէջ (Ա. տարի Թ. 8—9, 1951, էջ 153—64), սա խորագրով: «Տատեան Գերդաստանին ծագումը եւ իր ականաւոր դէմքերը»:

Երկրորդ արժէքաւոր գրութիւնն է Ընդարձակ Տարեցոյցի (1900, էջ 143—51) յօդուածագրի գործը, որ անշուշտ Հրանտ

Աստուրինն է, քանի որ ինքն է Տարեցույցին հրատարակողը։

Երրորդ գրութիւնը կարելի է նկատել Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեանի յիշատակութիւնները՝ գրուած իր «Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ պատմութեան» (Վիեննա) եռահատոր գործին մէջ։

Յ. Գ. Մըրմըրեանէ իրաւամբ կրնայինք սպասել հետաքրքրական ծանօթութիւններ իր «Մասնական պատմութիւն հայ մեծատուններու» (Կ. Պ. 1910) երկին մէջ, սակայն քանի մը աննշան ակնարկութենէ զատ՝ բա՛ն չէ տուած։

«Ակն եւ Ակնցիք» (Փարիզ 1952), որուն փառաւոր գարդերէն մին կրնար կազմել Տատեան Գերդաստանի գոնէ ամփոփ պատմութիւնը՝ գոհ եղած է մէկ — երկու անձի մասին խօսելով։ Կանխենք ըսել թէ Տատեանց երկրորդ ծննդավայրն ու հայրենիքն եղած է Ակն եւ իր գիւղը Կամարակապ։

Յիշենք նաեւ Վ. Գ. Ջարդարեանը, որ իր «Յիշատակարան»ին մէջ (1911, էջ 377—80) տուած է Յովհաննէս Պէյ Տատեանի կենսագրականը՝ սխալմամբ անոր ծննդեան թուականը 1789 դնելով, մինչ ճիշդ թուականն է 1798։

Տատոնց ունեցած ենք մենք ալ փափաք հիմնական ուսումնասիրութիւն մը նուիրել Տատեան մեծագործ Գերդաստանին։ Միշտ ալ ուրիշ զբաղումներ մէկ կողմ հրեցին այս

աշխատանքը : Ցաւալին այն է որ սակայն մեր այս ձեռնարկութիւնը այնպիսիատենի մը ին-կաւ, երբ հսկայ Տատեան Գերդաստանէն ողջ մնացած մէկ — երկու անձ անգամ դժուար է գտնել : Կա՞ն իրապէս ողջ անձեր ներկա-յիս : Թէ՝ խապառ — սպառ կորսուած է յե-տին շառաւիղն անգամ այս մեծ ու փառայեղ Գերդաստանին : — Ձենք գիտեր : Թրքահայ ո՞ր անուանի Գերդաստանը կրցած է տոկալ ու յաջորդութիւն ապահովել : Ամենադըժ-բախտ կեանքի պայմանները թոյլ չեն տուած որ հայը իր հայրենական տան ու ծննդավայ-րին մէջ ուռճանայ, շառաւիղներ արձակէ ու տեւական գոյութիւն մ'ունենայ գոնէ քանի մը հարիւր տարիներ : Ներքին կեանքի ազ-դակներէն աւելի՝ արտաքին ազդակները վնասած են մեր ցեղին ու Ազգին :

### 1. ԾԱԳՈՒՄԸ ԵՒ ՆԱՀԱՊԵՏՆԵՐԸ

Տատեաններու Ծագումը Սեբաստիայէն է : Իրենց նախահայր Պերոզեանք (Պեռենք) Վասպուրականէն Սեբաստիա գաղթող Սե-նեքերիմ Արծրունեաց արքայի սերունդներէն կամ նախարարներէն կը համարուին, որոնք նախ Սեբաստիա ապրած, յետոյ Սեբաստիա-յէն Ակն գաղթած են : Ակն գաղթող առաջին անձը կ'ըլլայ Պերոզ (անծանօթ է իր ծննդեան թուականը), որ իր ամբողջ գեր-դաստանով Ակն կը փոխադրուի եւ հոն կը



Սեբաստիա

Հաստատէ իր բնակավայրը իրր 1350ի ատենները:

Ի՞նչ փաստաթուղթերու կամ վաւերաթուղթերու վրայ յեցած է այս վարկածը: Կա՞ն իսկապէս չօշափելի վկայութիւններ այս իրողութիւնը հաստատող:

Տատեան Գերդաստանի ծագումի եւ Ճիւղագրութեան վերաբերող հնագոյն փաստաթուղթը Ձեռագիր Յիշատակարան[1] մըն է, որ կը գտնուի Պարիսի Bibliothèque Nationaleի մէջ, ուսկից առնելով Կ. Բասմաջեան հրատարակած է 1907ին իր Բանասէրին (Պարիս Թ. տարի 1907, էջ 112—25) մէջ՝ թափթփած վիճակով, զի ո՛չ Ձեռագրի թիւ կայ, ոչ մէկ ծանօթութիւն անոր մասին թէ ի՛նչպէս Պարիս փոխադրուած էր, եւ այլն, ո՛չ սկզբնաւորութիւն կամ խորագիր Ձեռագրին, ո՛չ վերջաւորութեան առթիւ որեւէ նշանակում, եւ այլն, եւ այլն:

Ձեռագրին կարեւոր մասը Թ. Ազատեան եւս հրատարակած ըլլալով իր Աստղաբերդին (Կ. Պ. 1951 Ա. տարի Թ. 8—9, էջ 153—6) մէջ՝ բնագրին ամբողջութեան մասին տարակոյս չի մնար: Թորոս Ազատեան չ՚ըսեր թէ ուսկի՞ց առած կը հրատարակէ Տատեան Գերդաստանի «Ճիւղագրութեան բո–

[1] 1889ին տեսած եւ կարդացած է Պարիսի մէջ՝ Տքթ. Վահրամ Յ. Թորգոմեան (Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն. Վիեննա 1913, էջ 408):

վանդակութիւնը» եւ ի՞նչ կը հասկնայ, երբ կը գրէ. «Տատեան Գերդաստանի կենսագիրներուն կողմէ փոփոխութեան ենթարկուած ու եղծուած ըլլալով սոյն ճիւղագրութեան բովանդակութիւնը, Աստղաբերդի մէջ առիթը կ'ունենանք զետեղելու ո՛չ միայն Հարազատ բնագրին լուսանկարները, այլ եւ Պօղոս Արքպ.ի դժուար ընթեռնելի այդ Ձեռագրին անխախտ ընդօրինակութիւնը» (Աստղաբերդ, անդ՝ 154):

Որո՞նք են Ազատեանի ակնարկած «կենսագիրները», որոնք «փոփոխութեան ենթարկած ու եղծած» են Տատեանց ճիւղագրութեան բնագիրը: Իր տուած «բնագիրը» եղծուած չէ, թէեւ թերի եւ փոքր սխալատպութեամբ տրուած է «Բանասէր»ի մէջ: Մենք աչքի առջեւ ունենալով Թ. Ազատեանի տուած «բնագիրը՝» Բանասէրի մէջ եղածը նկատողութեան կ'առնենք:

Թ. Ազատեանի ակնարկած «կենսագիրը», որ Տատեանց «ճիւղագրութիւնը» «փոփոխութեան ենթարկած եւ եղծած է՝» հաւանօրէն Պետրոս Կարապետեանն է, որ իր «90ամեայ Յոբելինական Յիշատակարան Պաքրրքէօյի Ս. Աստուածածին եկեղեցւոյ եւ Տատեան վարժարանին» (Կ. Պ. 1934) երկին մէջ (էջ 10—11) տուգիւ ալ Տատեանց «Ճիւղագրութիւն»ը բոլորովին թերի եւ սխալ ձեւով ներկայացուցած է՝ քաղելով «13/27 Մարտ 1897 Թուակիր բնագրէ» մը (անդ՝

էջ 10), որուն մասին լուսաբանութիւն չի տար։ Ամէն պարագայի՝ Գ. Կարապետեանի անծանօթ եղած է 1907ի Բանասէրը, ուր պիտի գտնէր լաւագոյն բնագիր մը եւ յարակից տեղեկութիւններ։ Սխալ է, օրինակ, թէ Ակնայ Առաջնորդ Տ. Պետրոս Ծ. Վ. 1851ին յիշեալ ճիւղագրութիւնը «Նախկին Արտաքին գործերու մեծանուն խորհրդական՝ Յարութիւն Փաշա Տատեանի ղրկած է» (անդ՝ էջ 10—11)։ Յարութիւն Փաշա՝ 1851ին 21 տարեկան երիտասարդ մըն էր եւ իրենց տան գրեթէ ամէնէն կրտսերը։ Մինչդեռ Յարութիւն Փաշայի Հայրը՝ Յովհաննէս Պէյ Տատեանն է որ թղթակցութեան մէջ մտած Ակնայ Առաջնորդին հետ՝ ի՛նքը կը ստանայ «Ճիւղագրութիւնը»։

Յովհաննէս Պէյ Տատեանի (1798—1869) քով երկար տարիներ ապրող եւ անոր զաւակներուն ու թոռներուն դաստիարակ եղող Սերովբէ Պետրոսեան կը պատմէ 1851ին. «Ժամանակներ առաջ Ակնի Կամարակապ Գիւղի քահանաները՝ առաջին վառօդապետ Մահտեսի Տատ Առաքել Ամիրայի խնդրանքին վրայ Գիւղին եկեղեցւոյ Մկրտարանի ցանկին մէջ անոր նախնիքներու անունները մինչեւ Մահտեսի Յարութիւն Ամիրայ, որ անոր պապին պապն է, արձանագրուած գտնելով՝ անկէ օրինակ մը հանած Պոլիս իրեն ղրկած էին։ Այս Տոհմագիրը, որուն մէջ Մահտեսի Յարութիւն Ամիրայէն սերող-

ները մինչեւ Տառ Առաքել ամբողջապէս ճիւղագրուած են՝ մինչեւ այսօր կը պահուին նոյն Տոհմին քով :

Յետոյ՝ մեր ժամանակը՝ Տառ Առաքելի որդին՝ Վառօղապետ Յովհաննէս Ամիրայ Տատեան, խորհելով թէ հոն (Կամարակապ, Ակն) գուցէ կարելի կ'ըլլայ իւր ցեղի մասին Մահտեսի Յարութիւնէն աւելի հնագոյն յիշատակութիւն մը ձեռք բերել՝ կը գրէ Ակնայ Առաջնորդ Տէր Պետրոս Վրդ·ին եւ տեղւոյն ուրիշ երեւելի անձերուն՝ խնդրելով որ փնտռտուք կատարեն նոյն վիճակին մէջ այս բանիս համար :

Պետրոս Վարդապետ՝ Ակնայ Գէորգ քահանային քով Ձեռագիր Աւետարան մը կը գտնէ, որուն մէջ կը տեսնէ Պերողեան Ազգատոհմին ազգահամար — ցեղագրութիւնը գրուած բուն իսկ Ակնայ Առաջնորդ Տէր Պօղոս Արքեպիսկոպ(ոս)ի ձեռագրով, 1758ին եւ նոյնին կնիքով ալ հաստատուած : Կը հանէ անկէ օրինակ մը եւ տեղւոյն քահանաներու եւ պատուաւոր անձերու ստորագրութեամբ վաւերացնելով՝ կը ղրկէ 1851ին Յովհաննէս Ամիրային՝ հետեւեալ նամակներով եւ ծանօթութիւններով :

### Նամակ Տ· Պետրոս Վրդ·ին՝ ուղղուած Յովհ· Տատեանին

Պայծառափայլ իշխան եւ փառք վիճակիս իմում Գերապատիւ Ամիրայ· Ձի աստի

յառաջ գրեցի առ ձերդ Գերյարգութիւն թէ փոյթեռանդն յօժարութեամբ պատրաստ եմք տանիլ հոգ գեղեցիկ նախնաւէր խնդրոյդ եւ թէ Տեառն յաջողութեամբ զտենչ սրտի ձեր լցուցանել:

Արդարեւ ի յառաջին կետէ նամակին ձեր հասանելոյ առ իս՝ տաղնապէի զօրհանապազ եւ միտս ո՛չ սակաւ թէ արդեօք լինիցի՞ ինձ ժամ բարի նպաստել ի Տեառնէ եւ շնորհիւ նորին առ ձեռն բերել եւ կատարել ըղխնդիր ձերոյին Մեծութեան:

Ահա զոր ցանկայաքն շնորհեաց Տէր, զի զկնի անդադար հետազօտութեան մեր զտաք յանակնկալ տան միում երիցու քաղաքիս Աւետարան մի հնագիր, ուր հանդուցեալ բարեյիշատակ Այրն Այն Պօղոս Արքեպիսկոպոս դէտն վիճակիս, որոյ շիրիմ կայ ի գաւիթ Ս. Գէորգ եկեղեցւոյ քաղաքիս, ծիղագրէ եւս ձեռամբ իւրով, զհոգելոյս նախնիսն ձերումդ Ազնուութեան ի նմին Ս. Աւետարանի ի թերթոջ միում կարգաւ՝ իւրաքանչիւրն ուրոյն թուականաւ նշանակեալ զծնունդ՝ ո՛չ հեռի եւ այն եւս ի գրութենէ անտի ձեր եւ ի վերջն ապա կնքեալ յատուկ կնքով իւրով նորին Սրբազնութեան ի վեր եւ ի վայր նմին թերթի:

Ահա զայն անթերի եւ մեք գրեալ եւ վկայութեամբ հաւատարիմ անձանց ականատեսից կնքով, հաստատեալ ընդ գրովս առաքեցաք:

Ապաքէն ասեմք ա՛ռ ընկա՛լ զղուղնա–քեայս ի մէնջ ի սփոփանս բարեսէր կամացդ։ Ո՛ Գերամեծար Ամիրայ, որ եւ մնամ միշտ ցանկացող բարեացդ։

ի 1851 Յունվ․ 23 «Նու» Պետրոս Վրդ․

յԱկն քաղաք» Առաջնորդ Ակնայ

(Կնիք)

Օրինակ նամակի Կիւլիւմեան Իգնատի(ո)ս Ամիրայի երեւելւոջ ի Կամարակապ առ Յովհաննէս Ամիրայ Տատեան

Մեծապատիւ Սահակ իմ․

Կամիս թարաֆըս հարցանել սահապիս մութալիք ըլօղ բարեկամներն կամ ծառայ–նիտ ընտան(ե)օք պէքէտէրիմք Տէր Յիսուս սըհապըս եւ ըստ պէքէտէր պահեսցէ ամէն։

Արդ լիցի որ ասկի առաջ հըրամանոց–նուտ ճողըն (= ճիւղին) թահքիքին համար գրութիւն արած էիր, որ ծառայտ ալ գրեցի քի առաջնորթն խարաճին էքսէին ըլլալուն ետոյ, խապարն կու խըրկենք։ Խարաճի խօ–րայթան հատնելուն ետ, գեղանն վանքըն եւ քաղաքըն ավետարան մի գտավ, որ մէչըն գրած էր ինչ վէչով ըլայնայ առաջնորթ հօ–րըն գըրո(ւ)թենէն մալիմըտ կըլայ քաղքին գահանաներուն եւ քաղքին գըտընվօղ եղ–բարցըն եւ մեր գուղին տէր մեհտեսի Բար–

*Թողլիմէն կամ ծառայնիտ ալ մօհրեցանք մեք եւ ըստ տեսնելով հա(յ)ր սուրբին գըրին տերունքն գրիս հետ խըրկեցի: Կամք կանես եւ իննամիչ չես ըլլար գրես որ ավետարանըն առնեմ խըրկեմ որ եւ լիցի սահապխս մի որըն բաղում բարեաւ:*

267 / ը[էպի—իւլ—ա]]խր 5·

«սիպխս ծո»
«Իգնատիոս»
«Կիլիմեան»

Օրինակ ծանուցագրին առ Յոհաննէս
Ամիրայ Տատեան

*Պայծառափայլ մեծի իշխանի Յովհաննէս Ամիրայի բաղում յարգանօք ողջոյն մատուցեալ ծանուցանեմք·*

*Զի ըստ հայրենատէր գովանի խնդրոյ ձերում Մեծութեան որ առ Սրբազան Առաջնորդ Պետրոս շնորհափայլ Բարունի Հայրն մեր՝ այս է գճիւղագրութիւն նախնեաց ձերոց ի դիւանական գրութենէ Մկրտարանի եկեղեցեացն վիճակլիս կամ ի յիշատակագրութեանց բանասիրաց որքան եւ հնար է ի ճիշդ եւ վաւէր գրութեանց ստուգել եւ առաքել ի ձեզ: Ուստի եւ նորին Սրբազնութիւնն ըստ փոյթ եռանդն հնատէր բարուց հետազօտութեամբ այսր եւ անդր որոնեալ եւ գտեալ է ի միում տան քաղաքիս՝ հնագոյն Աւետա-*

բան մի ի մագաղաթի գրեալ ի թիւ Հայոց ՈԿԵ. (= 1216) ի Տարսոն քաղաքի առ թագաւորութեամբն Լեւոնի արքայի մերում, որ ըստ անցելոց ժամանակաց տարուբերեալ հասեալ է այսր ի ձեռն բարեյիշատակ հանգուցեալ Առաջնորդի վիճակիս մերում Տ. Պօղոսի սքանչելագործ հայրապետի, նմին երեւելւոյ առն Աստուծոյ, որ զիսպառ ակն ջրոյ քաղաքիս ի տեսիլ ամենայն այլազգեաց եւ Հայոց սուրբ աղօթիւքն բղխեցուցեալ է:

Սոյն սքանչելի Այրս Աստուծոյ գոլով բնութեամբն հնասէր եւ հայրենասէր միանգամայն՝ ուստի յիւրում ժամանակին գրեալ գոլով զկարեւոր զոմանս հնութիւնս վերաբերեալ առ հայրենիսն, վասն որոյ գրեալ ունի եւ զնախնիսն Ազնուութեան ձերում ի վերայ յիշեալ Աւետարանին ի թերթին պատկերի Մարկոսի (Բանասէրի մէջ սխալմամբ Յովհաննու գրուած է) Աւետարանչին՝ հանեալ ի դիւանէ Մկրտարանայցն քաղաքիս եւ կամարախայ Գեղջ, որպէս եւ ինքն ծանուցանէ, մինչեւ ցՏատ Մահտեսի Առաքել Ամիրայն հայրն ձեր, որ ծնեալ է յաւուրս իւր եւ առ ի ճշմարտութիւն բանին կնքեալ է վաւերական կնքովն իւրով. ուստի եւ մեք ներքոյ կնքեալ քահանայք եւ եղբարքս միանգամայն զնոյն Աւետարան տեսանելով աչօք մերովք եւ զվերոյգրեալ բնագիրն ի նմին Աւետարանէ ուղղակի համեմատեալ ընդ սմին կնքեցաք զայս թուղթ առ ի ճշմարտութիւն բանիս:

Յամի Տն. 1851, յունվարի 21, ի քաղաքն Ակնայ.

Տր Գէորգ աւագ, քհնյ մայր եկեղեցւոյ, քղքիս Ակնայ կնքեցի. (Կնիք)։

Տր Օհաննէս, եկղ քհնյ կնքեցի. (Կնիք)։

Տր Մկրտիչ աւագ, քհնյ. Ս. Ածածին եկեղեցւոյ, կնքեցի. (Կնիք)։

Տր Նիկողոս եկղ քհնյ. կնքեցի, (Կնիք)։

Մհի Տէր Բարդուղիմէոս քհնյ Կամրկապու, (Կնիք)։

Կիւլիւմեան Իգնատիոս (Կնիք)։

Ն. Ծ. Ս. Գէորգայ եկղցւոյ մութէվէլլի Կրպտ Պօյաճեան, (Կնիք)։

Ն. Ծ. Մհի Պետրոս Մխաքեան (Կնիք)։

Մհի Ստեփան Բարսեղեան (Կնիք)։

Ն. Ծ. Նշան Սեմիրճեան (Կնիք)։

Ղազար Խասապեան (Կնիք)։

Ն. Ծ. Յոհաննէս Դշխունեանց (Կնիք)։

Նվ(ա)ստ Կոզմա Ճանիկեանց (Կնիք)։

Նվաստ Մհի, Սիրապ Պօյաճեան (Կնիք)։

Մինաս Ալմախեան (Կնիք)։

Պօղոս Խասապեան (Կնիք)։

Սբ Ածածնայ եկղցին, Մութէվէլլի Պետրոս Գաբիկեան (Կնիք)։

Սբ Ածածնայ եկղցուն երեսփոխան Գրիգոր Քէչիեան (Կնիք)։

Մկրտիչ Պեռօզեան (Կնիք)։

Ծոյ Տն Ուսեփ Տարիմեան (Կնիք)։

## Յետոյ կ՚աւելցնեն ծանուցագրին մէջ՝ Սեպուհ Իշխան

*Ըստ խնդրոյ ձերոյին Գերազնուութեան ահա գծագրեմք զՏոհմաթիւ Նախնեաց ձերոց ըստ օրինակին զոր ի ձեռս բերաք շնորհիւ Տեառն: Այլ եւ ընդ վայր սոյն թղթոյս՝ զբնագիրն եղեալ եմք ամբողջ եւ անթերի, (որ աստ ստորեւ նշանակի) յորմէ եւ մեք հանաք ի ճիւղագրել աստանօր կարգաւ ըզնախնիս ձեր ի Տէր հանգուցեալս.*

| Ազգ | Նախահարք պատուական սերնդոյդ | Թուական ծննդ·նոցա |
|---|---|---|
| 1 | *Պեռոզ* | . . . |
| 2 | *Միհրդատ* | ՉՂԹ = 1350 |
| 3 | *Վահրամ* | ՊԻԷ = 1378 |
| 4 | *Զատայ* | ՊԾԹ = 1410 |
| 5 | *Պեռոզ* | ՊՁԹ = 1440 |
| 6 | *Կոստանդին* | ՋԺ = 1461 |
| 7 | *Տատ Առաքել* | ՋԽԳ = 1494 |
| 8 | *Սիմոն* | ՋՀԹ = 1530 |
| 9 | *Մկրտիչ* | ՌԻԵ = 1576 |
| 10 | *Մհի Յարութիւն* | ՌՀ = 1621 |
| 11 | *Մհի Առաքել* | ՌՃԺ = 1661 |
| 12 | *Մհի Աստուածատուր* | ՌՃԼԵ = 1[illegible]6 |
| 13 | *Մհի Նիկողոս* | ՌՃԿԲ = 1[illegible]3 |
| 14 | *Մհի Տատ* | ՌՄԲ = 1753 |

*Արժան դատեմք ի յաւելուլ աստ զայլ եւս զազնիւ սերունդս ձեր, զորս մեք զի–*

տեմք ճշմարտիւ։ Չի չորեքտասան ազգ Մհի Տատ Առաքել հողմլոյս Ամիրայն վսեմամիտ, որ է Հայր ձեր․ սա գաղթեալ ի Կոստանդնուպօլիս կարգեաւ արքունի վառօդապետ առաջին ի Հայկազանցս ի թագաւորութեան Գ․ Սուլդան Սելիմայ ինքնակալ թագաւորին Օսմանեան ի թուականի փրկչին 1795 յուն(ի)ս 17։ Սոյն Մհի Տատայ եղեն որդիք՝ Սիմոն, Թադէոս եւ Յոհաննէս։ Սիմոն եւ Թադէոս ծնան ի Կամարակապ եւ Յոհաննէս ի Կոստանդնուպօլիս։ Որդիք Սիմոնի՝ Նիկողոս, Պօղոս եւ Թումա։ Որդիք Թադէի՝ Անդրէաս, Բարդողիմէոս, Յակոբոս։ Վասն ամենապատուական կենաց ձերոց մըշտակաց աղօթարար Նու(աստ) Պետրոս վրդ Առաջնորդ վիճակին Ակնայ» (Կնիք)

Հոս կը վերջանան Ակնայ Առաջնորդ Պետրոս վրդ․ի, իր քահանաներուն եւ երեւելի անձերուն տուած ծանօթութիւնները (Բանասէր, անդ՝ էջ 117)։ Տատեանց դաստիարակ Սերովբէ Պետրոսեան կը շարունակէ իր տեղեկատուութիւնը, գրելով․

«Երկու տարի վերջ՝ վերոյիշեալ Ակնայ Տէր Գէորգ քահանան այն Ձեռագիր Աւետարանը Պոլիս՝ Յովհաննէս Ամիրայ Տատեանին կը գրկէ՝ իբր անոր պատշաճաւոր բան մը՝ անոր սրտին մեծ փափագը կատարելով։

Այդ Աւետարանը մենք ալ տեսնելով՝ կտանք որ գրչութեան Յիշատակարանը,





ինչպէս որ վերոյիշեալ ծանուցագրին մէջ կը նշանակուի՝ ամէն հանգամանքներով նոյն էր եւ կարդացինք նոյնին մէջ Տ. Պօղոս Սրբազան Արք. եպիսկոպոսին իւր ձեռքով գրած եւ կնքած հետեւեալ վկայութիւնը.

«Արդ որովհետեւ բնականաբար ցանկալի է ամենայն մարդոց զերեւելի անցս եւ զդիւցազունս աշխարհին իւրում եւ ազգին անկորուստ յիշատակարան արձանագրել իբր ի փառս աշխարհին իւրում կամ ազգին՝ պարծանք ինձ համարելով իւրոյ ինքեան, ըստ այսմ եւ ես մեղապարտ Պօղոս Եպիսկոպոս վիճակին Ակնայ հետազօտեալ հնութեանց երեւելի ազնուական սերնդոցն կամ անցիցն վիճակիս իմում եւ հայրենեացս՝ գտի ի մկրտարան դիւանի սր. Յօհաննու եկեղեցւոյ քաղաքիս, որ հրկիզեալ է իբր հարիւր ամօք յառաջ քան զայս ժամանակս, զազնուական տոհմն Պերօզեան, յորմէ անուանեալ են Պեռեանք: Այս Պեռոս որպէս եւ ծանեաք ի դիւանագրութենէ անտի, գոլով ի սերնդոցն Սենեքերիմայ Արծրունեաց զաղթեալ ի նահանգէն Սեբաստիոյ դիմեալ գայ ի յԱկնս քաղաք եւ հանդերձ գերդաստանեօք բնակութիւն կալեալ ծնանի զորդի իւր Միհրդատ ի Թիւ Հայոց. (ՉՂԹ.) Սորին անդրանիկ Վահրամ ծնա. (ՊԻԷ.) Սորին որդի Զատայ՝ ծնա. (ՊԾԹ.) Սորին երկրորդ որդի Պեռոզ ծնա. (ՊՁԹ.) Սորին անդրա. որդի Կոստանդին՝ ծնա. (ՋԺ.) Սորին անդր.

որդի Տատ Առաքել ծնա. (ՋԽԳ.) Սորին անդր. որդի Սիմոն՝ ծնա. (ՋՀԹ.) Սորին անդր. որդի Մկրտիչ՝ ծնանի (ՌԻԵ.) Սորին անդր. որդի Մհի Յարութիւն՝ ծնանի (ՌՀ.) :

Սոյն սա գոլով անձն կարի խոհական եւ բազմարուեստ, զառաջինն հիմնարկէ չինել կամուրջ ի վերայ հաստատ ժայռին՝ գործ զարմանալի հիւսուածոյ ազուցիկ փայտից ի զարմացումն տեսողաց ժամանակին. զի մինչ ցայն վայր լաստիւ լինէր անցանել ընդ Եփրատ գետ ի վտանգ երթեւեկաց. վասն որոյ նախանձեալ յոյժ տաճիկք քաղաքին կամէին վնասել նմա զանխուլ. զայս իմացեալ Մհի Յարութեան առ երկիւղի չարացն՝ փոխադրեաց զգերդաստան իւր ի քաղաքէն առ գիւղըն Կամարակապ :

Ահա մինչ ցայս վայր գրեալ տեսաք ի մկրտարան գիւանի որյ Յօհաննու եկեղե(ցւոյ) :

Եւ յետ քննեալ զազգայ ծնունդսն տոհմիս՝ գտանեմք ի մկրտարանի Կամարակապ եկեղեցւոյ, զի Մահտեսի Յարութիւն ծնեալ զՄահտեսի Առաքել (ՌՃԺ.) Սորին անդր. որդի Մհի Աստուածատուր՝ ծնա. (ՌՃԼԵ.) Սորին անդր. որդի[1] Տատ Առաքել (ՌՄԲ.) : Սոյն պատանի այժմ դեռ հինդամեայ տեսանի ի յինքեան ձիրք իմն զարմա–

---

[1] Հոս դուրս ինկած է տող մը, որ է. — Մհտսի. Նիկողայոս ծնանի (ՌՃԿԲ.) Սորին անդրանիկ որդի:

*նալի ուշիմութեանց՝ թերեւս երեւի նմանիլ նախնոյն խրոում Մհի Յարութեան, զոր Տէր ճոխացուցէ շնորհիւ իւրով։*

*Ահա զայս աղնուատոհմ դերդաստան ըստ ցուցման դիւանաց՝ երկոցունց եկեղեցեաց զրեցի աստ անկորուստ պահել, որ պարծանս համարիմ նահանգի իմում. զի սերունդ մեծի կամ թագաւորաց եւ կամ անկարծիք նոյին նախարարաց են, զոր եւ վաւերական համարեալ կնքեմ իմովս կնքով առ ի ճշմարտու(թիւն)։*

*Գրեցաւ ի թուին Հայոց (ՌՄէ.) Հոկտեմբեր Ա.ին» (Բանասէր, անդ, էջ 117—8)։*

*Ակնայ Առաջնորդ Պօղոս Արքպ.ի՝ Տատեան Գերդաստանի ծագման վերաբերեալ, 1758ին իր ձեռքով գրած այս վաւերագիրը իր բնագրէն լուսանկարելով՝ Աստղաբերդին մէջ (Կ. Պ. 1951, էջ 154) գետեղած է Թորոս Ազատեան։ Բանասէրի մէջ հրատարակուած բնագրին եւ Թ. Ազատեանի լուսանկարածին մէջ եղած տարբերութիւնը սա՛ է որ Բանասէրի հրատարակիչը տող մը փախցուցած է։ Մենք զայն կ՚ամբողջացնենք Թ. Ազատեանի օրինակին վրայէն։*

*1216ին Տարօնի մէջ գրուած այս մագաղաթեայ Աւետարանը, որուն Մարկոսի Աւետարանէն վերջ գտնուող երկու պարապ էջերը կը գրաւեն Ակնայ Առաջնորդ Պօղոս Եպիսկոպոսի նօտր ու կրճատ բառերով գրութիւնը (1758ին), որ վաւերաթուղթն է*

Տառեան Գերդաստանի ճիւղահամարին՝ այդ թանկարժէք Աւետարանը, կ՚ըսենք, 1925ին սեփականութիւնն էր Եղ. Ալեանաքեանի, որ այդ Աւետարանի Յիշատակարանը եւ Տատեանց Ճիւղահամարը հրատարակութեան տուած է Թէոդիկի «Ամէնուն Տարեցոյց»ին մէջ (Վենետիկ 1926, էջ 600—3), ուսկից կը տեսնուի թէ Պօղոս Եպիսկոպոսի կնիքը 1742 թուականը կը կրէ (Անդ՝ էջ 603): Տօքթ. Վ. Յ. Թորգոմեան (Երեմիա Չելէպիի Քէօմիւրճեան, անդ՝ Բ. էջ 683) այդ Աւետարանը տեսած է Յարութիւն փաշայի աղջկան քով եւ որ կը պահուի, կ՚ըսէ, Պէշիկթաշի Ս. Աստուածածին եկեղեցիին մէջ:

Ակնայ Առաջնորդ Պօղոս եպիսկոպոսի կազմած Տատեանց այս ճիւղագրութիւնը լոկ իբր աւանդութիւն կը նկատենք եւ ոչ թէ փաստացի վկայութիւն մը:

## 2. ՄԱՀՏԵՍԻ ՏԱՏ ԱՌԱՔԵԼ ԱՄԻՐԱՅ

Մահտեսի Տատ Առաքել Ամիրայ ծնած է Ակնայ Կամարակապ Գիւղը 1753 Դեկտ. 20ին: Իր ծնողքն են՝ Նիկողայոս եւ Մարգարիտ: Արդէն հինգ տարեկանին կը ցուցնէր «զարմանալի ուշիմութիւն» մը (Բանասէր, անդ՝ էջ 118):

Մանուկ հասակին կը կորսնցնէ իր հայրը՝ Նիկողայոս Ամիրայ, որ կը մեռնի Պոլիս: Տատ՝ մօրը խնամքով կը մեծնայ եւ 18 տա-

րեկանին ամուսնանալով Անեա խաթունի (ծն. Ալիքսանեան) հետ՝ Պոլիս կ՚անցնի՝ հօրմէն մնացած ժառանգութիւնը առնելու համար իր հօրեղբօր Սիմոն Ամիրայէն, որ իր հօրը հետ ընկերովի սեղանաւորութիւն կ՚ընէր։ Այդ ժառանգութենէ իրեն կ՚իյնայ ագարակ մը եւ երկու սենեակ, որոնք ծախելով՝ Տատ կը դառնայ Հայրենիք, ուսկից հօրը հետ Երուսաղէմ ուխտի կ՚երթայ եւ վերադարձին քանի մը ջրաղաց կը շինէ իր հայրենակիցներուն համար։

Այդ ժամանակ Մահտեսի Տատ կարօտ վիճակի մէջ էր եւ ստոյնանկութեամբ կ՚ապրէր, յետոյ ալ ժամագործութեան ձեռք կը զարնէ՝ ինքնիրեն սորվելով։ Այլուստ ճարել չկարենալով՝ Պոլիս կ՚անցնի նորէն եւ Երկանեան Յարութիւն Ամիրայի յանձնարարութեամբ Ակն կը մեկնի՝ ճամբաներ ու կամուրջներ շինելու համար։ Այդ գործը գլուխ հանելէ վերջ՝ 1787ին Պոլիս կը վերադառնայ եւ Ունգարբանի մէջ սեղանաւորութեան կը սկսի։ Կը հիւանդանայ 9 ամիս. այդ միջոցին կը թողու սեղանաւորութիւնը եւ կը մտնէ Փայտօս բռուած աղօրիքի Ընկերութեան մը մէջ։

Այս ատենները Սուլթան Սէլիմ Գ. կ՚ուզէ Պոլսոյ մէջ կանոնաւոր վառօդարան մը հաստատել։ Ֆրանսացի Ֆրանչիսկոս կը յուսադրայ վառօդը գիւրութեամբ պատրաստելու համար ճախարակ մը շինել Այ Ստե–

Փանոսի վառօդարանին մէջ, բայց լմնցնելէ վերջ՝ երկու ձիով կարելի չ՚ըլլար դարձըննել, որով երկու գոմէշ կը լծեն, սակայն ճախարակը կը կոտրի: Մինչեւ այդ ատեն վառօդարանը Ենիչէրիներու ձեռքն էր եւ սուղ կ՚արտադրուէր: Սուլթանը բարկանալով եղածին վրայ՝ կը կանչէ Արտաքին Գործոց Նախարար Րաշիտ էֆ., որ Տատը ճանչնալով (զի իր ժամագործն էր) կը կանչէ զայն եւ գործը անոր կը յանձնէ: Տատ ճախարակին պակասութիւնը հասկնալով՝ կը կարգադրէ եւ կը սկսի բանեցնել 2 ձիով: Րաշիտ կը քաջալերէ զայն եւ նոր ճախարակ մ՚ալ շինել կու տայ, որ կ՚աւարտի 1794ին: Սուլթանը օր մը կ՚երթայ տեսնելու եւ շատ կը հաւնի ու կը հրամայէ որ իր առջեւ բերեն Տատ Ամիրան, որուն կը հրամայէ Ազատլըի վառօդարանին համար ջրով դարձող մեքենայի մը շինութիւնը՝ խոստանալով ոչ միայն վառօդապետութեան պաշտօնը իրեն յանձնել, այլ եւ զինքը հարկէ եւ մաքսէ զերծ կացուցանել ու նուէրներ տալ:

Տատ Ազատլըի մեքենան կ՚աւարտէ: Սուլթանը տեսնելով զայն՝ կը հաւնի եւ նոյն օրը, 1795 Յունիս 17ին, իրեն կը յանձնէ վառօդապետութեան պաշտօնը: Ֆրանսացի Ֆրանչիսկոս նախանձելով՝ կ՚ուզէ վնասել Տատին, սակայն Սուլթանը կռահելով՝ երկուքին շինած վառօդներէն Տատինը գերազանց գտնելով՝ կը հեռացնէ Ֆրանսացին:

Մահմուտի Տատ քանի մը տարի վերջ վառօդի ուրիշ նիւթերը դիւրութեամբ արտադրելու մեքենայ մ'ալ կը հնարէ։ Այս մեքենան 4 գործ մէկէն կը տեսնէր — վառօդի զանգուածը կը մանրէր, կը մաղէր ու ածուխը ծեծելով կը մաղէր։ — Հնարամիտ ըլլալով՝ անուաւոր նաւակ մը կը շինէ, որուն անիւները հիմակուան շոգենաւերու անիւներուն նման էին։ Ծովակալ Հիւսէին Փաշա Տատի շինած նաւակը տեսնելով՝ արքունի նաւերու յատակը հաւաքուած ջրերը հանելու հնարք մը գտնելու կ'առաջարկէ․ Տատ ջրհան մը կը շինէ, որով քիչ ատենէն ջրերը ծովը կը թափէր։

1800ին նոյն Փաշային հրամանաւ մեքենայ մը կը շինէ՝ երկար գերաններ սղոցելով շուտով տախտակ շինելու համար․ 1802ին ալ «Սիլինտըր» ըսուած գործիքը կը հնարէ, որ պղինձը տափակցնելով տախտակի կը վերածէր՝ արքունի նաւերուն տակը պատելու համար։ Այս գործիքը անգլիացի մը տեսնելով՝ պնդած է թէ անպատճառ Անգլիայէն բերուած է։ Յիշեալ երկու մեքենաներն ալ գործածուած են նաւարանի մէջ մինչեւ Սուլթան Մահմուտի ժամանակ։

Ձուլսա գործելու համար 5 հատ գործիք (Թէզգեահ) կը շինէ եւ այնքան ընտիր չուխա կ'արտադրեն որ Սուլթան Սէլիմ իր արուեստագէտ ծառան քաջալերելու համար անոր շինած չուխայէն վերարկու մը հագնե-

լով՝ կ'երթայ Ազատը 1805ին թէ՛ շուխային գործուիլը դիտելու եւ թէ աչքէ անցնելու համար այն մեքենան, որ թնդանօթները ծակելու եւ յղկելու համար շինած էր։

Տատ Առաքելի հիմնած Ջուխայի գործարանը կը յիշէ Հայաստան (Կ. Պ. 1851 Թ. 58) եւ կ'ըսէ որ յետոյ խափանուեցաւ, բայց իր որդին՝ Յովհաննէս Պէյ դարձեալ հաստատեց։ — 1842ին է որ Յովհ. Պէյ Նիկոմիդիոյ (Իզմիտ) մէջ կը հիմնէ Ջուխայի գործատունը, ինչպէս պիտի տեսնենք վարը, երբ խօսինք Յովհ. Ամիրայ Տատեանի վրայ՝ նկատելով զինքը իբրեւ Հիմնադիր գործատուններու։

Սուլթան Մահմուտ Բ.ի ժամանակ Հատտէ անունով գործիք մը կը պատրաստէ, որ ոսկի եւ արծաթ դաւաղաններ կը տափկցնէր. այդ գործիքը իր դուկին՝ Սիմոն Ամիրայի ձեռքով աւելի կատարելագործուելով՝ յետոյ Տիւզեան Ամիրաներու միջոցաւ գործածուած է Փողերանոցի մէջ։

1810ին Պարսից Շահը լսելով Տատի ճարտարութիւնը՝ կը հրաւիրէ զինքը Պարսկաստան, սակայն Սուլթանը գնահատելով հնարագէտ Հայուն կարեւորութիւնը՝ թոյլ չի տար, բայց կ'արտօնէ որ Շահը գործաւորներ ղրկէ ուսումնասիրելու համար Տատի շինած մեքենաները։

Տատ Ամիրայ կրօնասէր եւ ազգասէր անձ մ'եղած է. փափաքող Հայ եւ Հայ Կա–

*Թողիկէներու միութեան*[1]*. այս Նպատակաւ քանի մ'անգամ ժողովներ ալ ըրած են մասնակցութեամբ Տիգրան Յովհաննէս Ամիրայ Չէլէպիի* († 1812), *բայց այդ գաղափարը յետաձգուած է* :

*Մահտեսի Տատ Առաքել Ամիրայ մեռած է* 1812 *Օգոստ*. 31*ին Ագատլըրի մէջ եւ թաղուած Օրթագիւղի գերեզմանատունը* (Բազմավէպ, 1849, *էջ* 8—11, Սերովբէ Պետրոսեան) :

*Տատ Առաքել Ամիրայի մէկ քոյրը կը յիշուի, որ ամուսնացած ըլլալով Սարըեանի հետ՝ ունեցած է մանչ զաւակ մը՝* Գրիգոր Սարըեան. *վերջինիս որդին է* Թորոս Սարըեան՝ *մեծցած ու զարգացած Յովհաննէս Ամիրայի քով, անոր ընկերացած դէպի* Եւրոպա *եւ յետոյ առանձին գործի տէր եղած* (*Օրագրութիւն*, *էջ* 43) :

*Սարգիս դպիր Սարաֆ Յովհաննէսեան իր Տեղագրութիւն Ստամպոլի Ձեռագիր գործին մէջ կը գրէ Մահտեսի Տատ Առաքելի մասին.*

«*Եւ սատ* (*Մաքրիգիւղի*)[2] *յոյժ մօտ է վարձեալ Նորոգ պարութխանէն, այսինքն գործարան վառօդոց, զոր շինեաց Ակնեցի ոմն մահտեսի Առաքել անուն ի Կամարակապ գեղջէ, ի Տանէն Պեռենց, որ ըստ փաղաքշական անուանակոչութեանն ասիւր հաճի*

[1] *Տե՛ս Աւետիս Պէրպէրեան, Պատմութիւն Հայոց, Կ. Պ.* 1871, *էջ* 61:

[2] *Տե՛ս էջ* 29:

*Տատ: Այլ խմն ձեւով՝ Անիւ ճախարակի կազմելով, եւ ի նմա ձի մի դնելով եւ ընթացիւք նորա զանիւ ճախարակին պտուտկելով եւ ելեւէջիւք բազում սանդխտոաւնց զվառօղն փչրելով: Եւ այս եղեւ ի ժամանակս սուլդան Սէլիմին երրորդի, ի թուա. հիճրէ* «1210» (*Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն. Ա. Վիեննա* 1913, *էջ* 407):

*Մահտեսի Տատ Առաքել Ամիրայ* առաջին հայ վառօդապետն է, *որ ունեցած է նաեւ իրաւունք իր սերունդին փոխանցելու ժառանգաբար վառօդապետութիւնը: Ատոր համար է որ Բանասէրի մէջ հրատարակուած Ձեռագրին մէջ ալ կը չեշտուի. «Մահտեսի Տատ Առաքել Ամիրայ հրամանաւ Սուլդան Սէլիմայ Գ. արքայի հիմնեալ յԱզատլու ըղվառօդարանն, կարգեցաւ արքունի վառօդապետ ժառանգաբար յորդւոց յորդիս հանդերձ արտօնութեամբք ազատ լինելոյ ի հարկէ, ի մաքսից եւն, 1795, յունիս 17 եւ եղեւ յազգէս Հայոց առաջին վառօդապետ»* (*Բանասէր, անդ՝ էջ* 121):

*Ազատլըի վառօդանոցի շինութիւնը եւ Տատ Ամիրայի* վառօդապետ կարգուիլը 1793 *Յուլիս* 3*ին կը դնէ Աւետիս Պէրպէրեան* (*Պատմ., անդ, էջ* 441—2), *որուն հետեւող ալ կայ, սակայն հնագոյն աղբիւրը եւ Տատեանց մօտ անձը՝ Սերովբէ Պետրոսեան,*

*ինչպէս վերը տեսանք (Բազմ. 1849, էջ 8—11), այդ թուականը ունի 1795 Յունիս 17: Բանասէրն (Անդ, էջ 121) ալ այս թուականը ունի: Հետեւաբար սխալ է Պէրպէրեանի թուականը:*

*Կաղզուանցի Պօղոս քահանայ 1805ին ոտանաւորով մը պատմած է Մահտեսի Տատ Առաքելի գործունէութիւնը վառօդարանի մէջ: Նմուշի համար կու տանք քանի մը տուն.*

*«...Հեղաւ շնորհ Տեառն տուեալ*
*Ի Մահտեսի Տատն Առաքել:*

*Զատենց Տոհմին ծաղիկ բուսեալ*
*Առ տոս ուրուք չիք ինչ ուսեալ*
*Աստ ի քաղաք յԱկնայ խուսեալ*
*Առ Արքային բարեխօսեալ:*

*Նախ գործարան մի նորոգէ*
*Յոր էր ոմն ի լատին ազգէ*
*Զոր մերձ նախկին տեղւոյն կանգնէ*
*Եւ Օսմանցւոց կարի օգնէ:*

---

[2] *Մաքրիգիւղի եւ Ս. Ստեփանոյի (Սան — Ստէ-ֆանօ)ի մէջտեղն է արքունի Վառօդարանը (Տօքթ. Վ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի, եւ այլն, Ա. էջ 406), որ «Այ Ստէֆանօի Վառօդարան» կը կոչուի եւ զա՛յս է որ կ՚ակնարկէ Սարգիս դպիր Սարաֆ Յովհաննէսեան:*

Անդ տայ չինել մեծ ճախարակ
Ութսուն երկու տափչօք յարակ
Զնիւթ վառօղին ծեծել բարակ
Զի կամ ջրի վարեալ միակ։

Զլուր համբաւոյ սորին միայն
Լուեալ չըքեղ հզօր Արքայն
Գայ մեծ փառօքն ի գննել զայն
Եւ պարգեւօք պատուէ զծառայն։

Ընդ որ հաճեալ եւ հաւանեալ
Զչինօղ նորին գովարանեալ
ԶԱպատրուն եւս նմա յանձնեալ.
Յոր նախ լատին ոմն էր բունեալ։

Հրամայէ խկ բերել յատեան
Զերկու որդիսն Հաճի Տատեան
Որք մինչ փութով յառաջ մատեան
Երկրպագեալ յետս դատեան։

Անդէն առատ ռոճիկ կարգեաց
Հօր եւ Որդւոց եւ ընտանեաց
Ազատ լինել հրրամայեաց
Յամէն հարկացըն Արքունեաց...»

(Տետրակ Զունայնութենէ կենցաղոյս. Կ. Պ. 1805, էջ 26—34)։

Ազատլըի (Այեօրկի) կէս ճամբուն վրայ կը գտնուէր երբեմն Փիլիպպոս անունով գիւղ մը. հոն Առաքել Տատ Ամիրայ 18րդ դարուն վերջերը հաստատած է, կ՚ըսուի,

Ս․ Նշան կամ Ս․ Խաչ անունով եկեղեցի մը․ Փիլիպպոս գիւղն ու իր եկեղեցին այժմ դոյութիւն չունին․․ տեղը կը ճանչցուի Ֆիլիպօս Չիֆթլիկի կոչումով (Տօքթ․ Վահրամ Յ․ Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն, Ա․ Վիեննա 1913, էջ 409—10)։

1811ին կը գրէ Պոլսէն՝ Վիեննա մեր Հ․ Անդրէաս Վ․ Ճիւքիւրեան․ «Ջեղբայր Սահակ Զամչեանց․․․ զի նա․․․ մտեալ է ի ծառայութիւն Հաճի Տատ ասացեալ երեւելի առն միոյ․․․ իբրեւ թարգման եւ գրագէտ ի Կ․ Պօլիս» (Դիւ․ Վիենն․ Մխիթ․ Մատենադարանի, 1811 Նոյ․ 25)։ Ուրեմն՝ Տրիեստի մեր կայանի անձ եղածն է եւ անկէ Պոլիս անցած է։ Մեռած է 1820ին։

Տատ Ամիրայի Տիկինը՝ Աննա խաթուն ծնած է Ակնի գիւղը՝ Կամարակապ 1757ին Պեռոզեան Տոհմէն եւ Տատ Առաքել Ամիրայի հետ ամուսնացած է 1771ին։ Մանչ եւ աղջիկ տղաքներ ծնանելէ վերջ՝ 1796ին Պոլիս կը փոխադրուի, ուր կը ծնանի Յովհաննէս եւ Անդրէաս զաւակները։ Ինքը ուրախ զուարթ բնութեան տէր անձ եղած եւ Տիկնութեան շնորհք ունեցած է։ Իր Մարիամ հարսէն նեղուելով՝ 1815ին Սիվրի Խաչատուր անունով անձի մը տան մէջ իբրեւ վարձուոր բնակած է, իսկ 1816ին իրեն համար սեպհական տուն կը շինէ Այեօրկի (Ագատլը) եւ հոն կը բնակի։ Իր որդին՝

Յովհաննէս կը հետեւի մօրը եւ ունեցած 80 ղուրուշ ամսական եկամուտը մօրը կը նուիրէ: Աննա Խաթուն՝ շատ անգամ խոստովանելով եւ հաղորդուելով՝ կը վախճանի 1819ին (Ժամանակագրութիւն Տատեանց, Տե՛ս Ընդարձակ Տարեցոյց, Կ. Պ. 1932, էջ 96[1]): Աննա Խաթունի մէկ քոյրը կը յիշուի — Բերսաբէ — որ ամուսնացած է Նշասթաճեան մականունով անձի մը հետ, որմէ ունեցած է Գրիգոր անունով մանչ մը (Ընդ. Տարեցոյց. 1932 էջ 91—92): Մեղի ծանօթ է Գրիգոր Նշասթաճեան մը աշակերտ Պոլսէն՝ Տրիեստի մեր Գիշերօթիկ վարժարանին, սկսած 1785էն: Զենք գիտեր թէ նո՞յն թէ տարբեր անձ մ'է Տատեանց «Ժամանակագրութեան» (Ընդ. Տարեցոյց, 1932, էջ 91—2) մէջ յիշուած Գրիգոր Նշասթաճեանը, որ «ի Վենետիկ Մխիթարեանց վանքն կրթութիւն առած» կ'ըսուի: Արդեօք «Ժամանակագրութեան» հեղինակը շփոթա՞ծ է Տրիեստի Մխիթարեան վարժարանը՝ Վենետիկի վանքին ետ: — Աննա Խաթուն մեռած է 1819 Օգոս. 3ին: Տատ Ամիրայի եւ իր տիկնոջ Դամբարանները կը գտնուին Օրթագիւղի Ազգ. գերեզմանատան մէջ: Ահա թէ ի՛նչ կը գրէ Թորգոմեան այս գերեզմանատան մասին, 1932ին. «Օրթագիւղի բարձունքին վրայ է Ազգային Հին Գերեզմանատունը՝ այժմ աւեր—աւերակ, ուր իրենց վերջին

---

[1] Տե՛ս էջ 33:

քումը կը նիրհեն վերոյիշեալ ամիրաներէն շատերը եւ որոնց փառաւոր շիրմաքարերը մօտակայ թուրք գինուորներու շնորհիւ կտոր կտոր եղած են։ Ասոնց մէջ 1912ին, ողբացեալ Հ. Թովմաս Կէտիկեանի հետ (Վիեննակ․ Մխիթարեան), գտած ու քաղած եմ ես Տատեաններու նախահօր վառօդապետ Առաքել Ամիրայի եւ իր կողակցին Տապանագիրները, զորս արժան կը համարիմ ներկայացնել հոս․

Է

Արքունի վառօդապետ
Միհ Առաքել ամիրայ
Տատայեանց Կամրկապցի
Ազնիւ տոհմական՝ իշխան փառաւոր
Ինքնավարժ ճարտար՝ ի գիւտ նորանոր
Սա եղեւ նախկին՝ ի յազգէս հանուր

---

[1] Այս «ժամանակագրութեան» բնագիրը սեպհականութիւնը եղած է Պօղոս Ամիրայ Տատեանի թոռնուհի Տիկ․ Աննա Ն․ Պուտրոս Ղալիի (Գահիրէ), որ զայն Երեւան դրկած է, բայց ընդունած է օրինակ մը, զոր հաճեցաւ 1964 Յունուարին ինձ տրամադրել։ Կը յայտնեմ շնորհակալիքս։ Գրութիւնս մեքենագիր է եւ ունի 55 էջ։ Խորագիր–վերնագիր չունի մեքենագրուած, այլ ձեռագրով գրուած է սա խորագիրը․ «Օրագրութիւն Յովհաննէս Տատեանի, որդի Մահտեսի Առաքել Տատի 1798—1846 (Օրագրութեան շրջան)»։ Մենք կը շարունակենք մերթ «ժամանակագրութիւն» յորջորջել եւ մերթ «Օրագրութիւն»․ երկուքն ալ նոյն բանն են․ տարբերութիւնը այս է որ առաջինը մասամբ հրատարակուածն է։

Մեծ վառօղապետ՝ արքայից հըզօր
Եւրոպիան ազանց՝ ճարտարք մտաւոր
Ապրին ընդ սորայս՝ վերնաձիր շընորհ
Զոր լուեալ ստէպ՝ Պարսից թագաւոր
Խնդրէ յարքայէս՝ յղել անդանօր
Նա զի պերճացեալ՝ ի գործըս մաքուր
Ազգօգուտ սիրով՝ վառէր մտադիւր
Անկատար մնայ՝ բաղձանք սրտի իւր
Որ ցանկայր տանել՝ մի զազգըս բոլոր
Քեզ ակնկալեալ՝ արքայ երկնաւոր
Եկաց բարեպէս՝ ի կեանս աստանօր
Սորա աղաչեմք՝ ի կեանս հոգեւոր
Անվախճանն փառօք՝ միշտ պսակաւոր:

*Ի Թուին Հայոց* 1261ի *յՕգոստոս* 31:

*Առաքել Ամիրայի ճիշդ քովն է կողակցին Դամբանը, որ ունի հետեւեալ երկաթագիր արձանագրութիւնը·*

է

Ի սոյն գերեզմանիս
Ամփոփեալ մարմին
Իշխանուհի Աննա
Խաթունի՝ որ էր կողակից
Միհի՝ Տատ՝ վառօղապետ
Առաքել Ամիրայի՝ որոյ
Տէր լուսաւորեսցէ զհոգին:

*Յամի Տեառն* 1819 *Օգ. ամս.* 3*ին* (*Տքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի*

Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն, Բ. Վիեննա 1932, էջ 679—81)։

Տատ Առաքելի լուսանկարը գտած չենք։

## 3· ՄԱՀՏԵՍԻ ՏԱՏ ԱՌԱՔԵԼԻ ԱՌԱՋԻՆ ՍԵՐՈՒՆԴԸ

Մահտեսի Տատ Առաքել Ամիրայի եւ իր Տիկնոջ՝ Աննա Խաթունի առաջին սերունդի մասին շատ բան չենք գիտեր։ Ակնի Առաջնորդ Պետրոս վարդապետի գրութեան մէջ (Բանասէր, անդ, էջ 116) յիշուած են Տատի որդիները եւ մասամբ թոռները լոկ անունով՝ առանց թուականի եւ առանց յիշատակութեան անոնց կիներուն եւ աղջիկներուն։ Բանասէրի մէջ հրատարակուած գրութիւններէն մաս մը Յովհաննէս Պէյ Տատեանի զաւակներու եւ թոռներու դաստիարակ Սեւրովբէ Պետրոսեանի գրութիւններն են։ Սա տուած է Տատ Առաքելի որդիներուն, թոռներուն եւ թոռնորդիներուն ցանկը մասամբ՝ հասցնելով անոնց ժամանակը մինչեւ 1858ի վերջը։ Մասամբ ըսինք, զի Պետրոսեան ալ չէ տուած Տատի եւ իր յաջորդաց կիներու եւ աղջիկներու անունները։ Բանասէր չէ յիշած նոյն իսկ Տատ Ամիրայի կնոջ անունը — Աննա։ Մենք զայն կը ճանչնանք «Ժամանակագրութենէն» եւ Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեանէն (Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն, Բ., էջ 680)։

*Ըստ Բանասէրի* (*Անդ*, *էջ* 120) *Տատ Ամիրայ ունեցած է երեք մանչ զաւակ*․ Սիմոն, Թադէոս եւ Յովհաննէս ։

1․ Սիմոն․ — *Տատ Առաքելի անդրանիկ զաւակը՝ Սիմոն ծնած է* 1777*ին Կամարակապի մէջ*։ *Ծննդեան թուականը տուած է Բանասէր* (*Անդ*՝ *էջ* 120), *մինչ Թ*․ *Ազատեան կը գրէ*․ «*Սիմոն Ամիրա ծնած է* 1780*ական թուականներուն*» (*Աստղաբերդ*, *անդ*՝ *էջ* 156) ։ *Կը տեսնուի որ Թորոս Ազատեան տեսած չէ՛ Բանասէրը*։ *Նա ունեցած է ուրիշ աղբիւր*, *զոր չէ յիշած իր Աստղաբերդին մէջ*։ *Սիմոն Ամիրայի կեանքի մասին կը գրէ նա*․ «*Իր ծնողքին հետ Պոլիս գալով կը ծառայէ իր հօր քով*։ *Վառօդարանի գործերուն մէջ յետոյ խոր հմտութիւն ու ձեռնհասութիւն ձեռք բերելով՝ իրեն կը վստահուի Արքունի վառօդապետութիւնը*, *զոր եղբօրը՝ Յովհաննէս Պէյի գործակցութեամբ կը վարէ մինչեւ իր մահը*։ *Իր հօրը օրինակին հետեւելով*, *մեծապէս կը սատարէ ծննդավայրին եկեղեցւոյն եւ դպրոցին*։ 1826*ին Սիմոն Ամիրա եւ Յովհաննէս Պէյ Տատեան կը կառուցանեն* Այ—Սթէֆանոսի Ս․ Ստեփաննոս եկեղեցին *եւ* Յունաց համար ալ աղօթավայր մը ։ *Օգտակար ծառայութիւններ կ՚ունենայ նաեւ համայնքային գործերու մէջ*։ *Իր մահը տեղի կ՚ունենայ* 1832*ին*» (*Աստղաբերդ*, *անդ*, *էջ* 156) ։

*Ե՞րբ ստանձնած է Սիմոն Ամիրայ* վա—

ռօղապետութեան պաշտօնը: — *Ակն եւ Ակնցիք (Անդ՝ Յաւելուած՝ էջ* 204) *կը գրէ.* «*Սիմոն Ամիրա Տատեան, Առաքել Տատի երէց որդին է, որ հօրը մահէն վերջ,* 1826*ին կը ժառանգէ իր եղբօր Յովհաննէս Ամիրայի հետ վառօդապետութեան պաշտօնը*»:

*Սխալ է այդ: Սիմոն Ամիրայ* 1826*ին չէ որ վառօդապետ կ'ըլլայ, այլ արդէն* 1812*ին. երբ հայրը կը մեռնի —* 1812 *Օգոստ.* 31*ին — Սիմոն անմիջապէս հօրը գործը կը ստանձնէ: Ահա թէ ի՛նչ կը գրէ Սերովբէ Պետրոսեան.* «*Մահտեսի Տատ Առաքել Ամիրայ... վախճանի ի գիւղն Այեօրկի* (31 *Օգ.* 1812)*: Եւ անմիջապէս ի պաշտօն վառօդապետութեանն յաջորդէ որդի իւր Սիմոն Ամիրայ: Որում յանձնեաց յետոյ Սուլդան Մահմուտ եւ զվարչութիւն վառօդարանին Այստեֆանօի* (13, *յուն.* 1826), *զկնի բառնալոյ զՃէնիչէրիս, զի յառաջն ընդ նոցա ձեռամբ էր վառօդարանն այն*» (*Բանասէր, անդ՝ էջ* 121—2):

Այ—Ստէփանօ (*յետոյ կոչուած* Սան—Ստէփանօ) *Մաքրիգիւղէն դէպի արեւմտեան հարաւ գտնուող գիւղ մըն է, ուր հինէն ի վեր Տատեանները տուն եւ բնակարան ունենալով՝ հաստատուած են. կառուցած են եկեղեցի, դնած կամ նուէր տուած են ընդարձակ հողեր եւ հոն ալ ունեցած են իրենց համար վերջին հանգստարան — շիրիմներ:*

*Թորգոմեան կը գրէ.* «*Այ Ստէփանօի*

մէջ կանգուն է դեռ Տատեան ապարանքը... Այ Ստէֆանօի մեծ մասը, մանաւանդ շրջականները շատ ընդարձակ տարածութեան մը վրայ, մինչեւ այսօր կը վերաբերի Տատեան Գերդաստանի անդամներուն, որոնք ցորենի առատ մշակութիւններ ընել կու տան հոն: Շատ լաւ կ'ըլլար որ այս գիւղը... յորջորջուէր ՏԱՏԵԱՆ — ԳԻՒՂ, որուն ոչ միայն գոյութիւնը, այլ եւ անոր զարգացմանն ու յառաջդիմութեանը Տատեանները պատճառ եղած են ի սկզբանէ մինչեւ մեր օրերը...» (Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երիմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն, Ա. անդ՝ էջ 405—6):

Այ Ստէֆանօի Ս. Ստեփանոս եկեղեցին 1826ին փայտաշէն կառուցած են Տատ Առաքելի 2 զաւակները՝ Սիմոն Ամիրայ եւ Յովհաննէս Պէյ: Երկրորդ շինութիւնը տեղի ունեցած է 1843ին՝ քարաշէն: Վերջինս գործն է Սիմոն Ամիրայի որդւոյն՝ Պօղոս Տատեանի, որուն մասին յետոյ մանրամասն պիտի անդրադառնանք, ուր պիտի տանք նաեւ երկու շինութեանց արձանագրութիւնը:

Ո՞վ էր Սիմոն Ամիրայի կինը:

Սիմոն Ամիրայի կինը կը յիշուի Տատեանց «Ժամանակագրութեան» մէջ (Տե՛ս Ընդարձակ Տարեցոյց, 1932, էջ 96) — Մարիամ Ներսիսեան, որ «փոքր ինչ խիստ» եղած է իր կեսուրին՝ Աննայի հանդէպ:

Սիմոն Ամիրայի մէկ աղջիկն ալ ծանօթ է մեզ. — Իսկուհի (ծնած 1815 † 1863 Փետր. 28), որ ամուսնացած է Խաչատուր Աշնանեանի հետ: Սերունդ ունեցա՞ծ են: Չենք գիտեր: Տիկ. Իսկուհի ձեռքի ոսկի խաչ մը նուիրած է Գանտիլլիի երկոտասան Առաքելոց եկեղեցւոյն (Հայրենիք, Կ. Պ. 1893 Թ. 628):

Տիկ. Իսկուհի 48 տարեկան կը կնքէ իր կեանքը 1863 Փետր. 28ին (Մասիս, Կ. Պ. 1863 Թ. 577, Մարտ 2): Ո՛ւր թաղուած ըլլալը անծանօթ է: Թերեւս Գանտիլլի:

Գտանք Տիկ. Իսկուհիի երկրորդ նուիրատուութիւնն ալ Գանտիլլիի Ս. Առաքելոց եկեղեցիին: Սկիհ մըն է, որուն Յիշատակարանն ալ ահաւասիկ. «Յամի Տն. 1841. Առաքելոց եկեղեցւոյս Ս. Սկիհ ի նուէր Տատեան Տոհմին համեստ այն Իսկուհին հոգեւէր, տայ յիշատակ ննջեցելոյն. Ո՛վ Տէր Յիսուս յիշող լեր, ծարաւ հոգիս մարմնով եւ արեամբ կերակրեսցես, խաչեալ Տէր» (Մանզումէի Էֆքեար, Կ. Պ. 1902 Թ. 385): — Սիմոն Ամիրայ ունեցած է երկրորդ աղջիկ մ'ալ ամուսնացած ԱՆԴՐԷԱՍԻ հետ (Օրագրութիւն, էջ 46), մականունն է ԵԿԷՆԵԱՆ (Հանէսեան, Յիշատակարան, 1932, էջ 61):

Սիմոն Ամիրայ ունեցած է ըստ Բանասէրի (Անդ՝ էջ 120) երեք մանչ զաւակ. ա) Նիկողայոս (ծն. 1799ին) ամուսնացած է Թերեզա Մանանեանի հետ, որ ունեցած է

Նիկողայոս (ծն. 1825) *անունով մանչ մը.* բ) Պօղոս (ծն. 1800*ին*), *սոր մասին առանձին պիտի խօսինք՝ իբրեւ մեծ Տոհմի մը Գլուխը.* գ) Թովմաս (ծն. 1802*ին*) *ամուսնացած է* Երմոնիայ Մ. Կէօնճեանի *հետ եւ ունեցած 2 զաւակ.* Տիգրան (ծն. 1827) *եւ* Քրիստինէ: *Թովմաս եղած է ջութակահար. ֆրանսերէնի թարգմանած է վառօդաշինութեան վերաբերեալ գրքեր*: 1828*ին վառօդարանին մէջ տեղի ունեցող պայթումի մը զոհ կ'ըլլայ Թովմաս (Յովհաննէս Տատեան, Օրագրութիւն*, *էջ* 23: — *Թ. Ազատեան, Աստղաբերդ, անդ՝ էջ* 163):

*Մեր Հ. Անտոն Դանեան կը գրէ Պոլսէն* 1828 *Յուլիս* 25*ին. «Յաւուրս յայսոսիկ պատահեցաւ նշանաւոր դիպուած մի. ի* 18 *ամսոյս Փապրիքայն վառօդոյ, որ ի Ազատըլ ատացեալ գիւղն, պատահմամբ իւր հրդեհեալ՝ ցնդեցաւ յօդս եւ մեռան բազում արք, ըստ ոմանց* 500 *եւ ըստ այլոց* 300. *ընդ նոսա եւ որդի մի Սիմէոն Աղայի վերակացուի գործոյն... Եւ քանզի ի վաղուց հիւանդացեալ նստէր ի տան Սիմէոն Աղան, զերծաւ ի սպառնալեաց եւ ի պատուհասէ թագաւորին, ասելով թէ «զաղա տըր»*
*(Դիւ. Վիեննաի. Մխիթ. Մատեն.* 1828 *Յուլ.* 25):

---

[1] *Եւ ՎԱՍԻԼՈՒՀԻ անունով դուստր մը, որ* 1819*ին մկրտուած է Պէշիկթաշ*:

Սիմոն Ամիրայ 1827ին վերջերը ջրգողութեան հիւանդութեամբ պառկած է. ունեցած է նաեւ սրտի ցաւ (Օրագրութիւն, էջ 47)։ Մեռած է 1832 Մարտ 4ին (Բանասէր, էջ 122)։ Կը թաղուի Պէշիկթաշ (Օրագրութիւն, անդ)։

2. Թադէոս. — Տատ Առաքել Ամիրայի երկրորդ զաւակը՝ Թադէոս ծնած է Ակնի Կամարակապ գիւղը 1785ին։ Թադէոսի մասին ունինք քանի մը ծանօթութիւններ Բանասէրէն (էջ 120), որ կը յիշէ անոր զաւակները եւ թոռը եւ յետոյ Յովհաննէս Ամիրայ Տատեանէն, որ իր «Ժամանակագրութեան» (Օրագրութիւն, էջ 6) մէջ անորոշ բառերով կ՚արտայայտուի։ Վերջնոյս տուած ծանօթութենէն այնպէս կը հասկնանք թէ Թադէոս ունեցած է ներկարարութեան արհեստ մը, որուն մէջ յաջողակ եղած է։ Թադէոս երկու անգամ ամուսնացած է. նախ Մէնէքշէ Թէվէքէլեանի հետ իբր 1800ի ատենները, որմէ ունեցած է երեք զաւակ. Անդրէաս (ծն. 1801ին), Բարթուղիմէոս (ծն. 1804ին) եւ Յակոբոս (ծն. 1811ին). այս վերջինէս կը ծնանի Թադէոս (ծն. 1850) (Բանասէր, Փարիզ 1907, էջ 120։ — Տե՛ս նաեւ Յովհաննէս Ամիրայի «Ժամանակագրութիւն» (Օրագրութիւն, էջ 6)։

Յովհաննէս Ամիրայի «Ժամանակագրութեան» մէջ անորոշ կերպով կ՚ըսուի որ Թա–

*դէտսի առաջին կինը՝ Մէնէքշէ՝ «Բնածական ախտին մատնեալ» է : Կը թուի թէ այդ «ախտով» կանխահաս մահ ունեցած է Մէնէքշէ, թէեւ Յովհաննէս այս վերջին կէտը չի յիշատակեր. այս կանխահաս մահին հետեւանքով Թադէոս հիւծախտի կը բռնուի : Յովհաննէս Ամիրայ կ'աւելցնէ. «երիտասարդ ըլլալով կամեցաւ ամուսնանալ» : Անշուշտ ասիկա երկրորդ ամուսնութիւնն է : Որո՞ւն հետ կ'ամուսնանայ Թադէոս այս երկրորդ անգամին : Յովհաննէս դարձեալ անորոշ կերպով կ'ըսէ. «Վասն որոյ* ՇՆՈՐՀՔԵԱՆ ՄՈՒՐԱՏԻ *դստերն հետ ամուսնացաւ* 1814*ին սկիզբները եւ ասոր վրայ բոլորովին մահիճն ինկաւ մինչեւ* 1814 *Ապրիլի* 20*ին մեռաւ* 29*րդ ամի հասակի իւրում եւ մայրն Աննա Խաթուն թախծագին վշտօք եկն յԱյեօրկի հանդերձ հարսին իւրոյ* ՆԱՐԴՈՒՀԻԻՆ *ու* ՇՆՈՐՀՔԻԻՆ...» : (Օրագրութ. էջ 6) :

*Ուրեմն՝ Թադէոսի երկրորդ կինն է* Նարդուհի Շնորհքեան :

*Ինչպէս կը տեսնուի՝ Թադէոս դժբախտ եղած է իր սիրած առաջին կինը կանուխէն կորսնցուցած ըլլալով, որմէ սաստիկ ազդուելով՝ ինքն ալ հիւծախտի կը բռնուի եւ* 28 *տարեկանին կը կնքէ իր կեանքը : Այս ամէնը կը պատմէ նաեւ իր տապանագիրը, զոր կը պարտիմ Տոքթ. Վահրամ Յ. Թորգոմեանի : Թադէոս մեռած է* 1814 *Ապրիլ* 20*ին եւ թաղուած Օրթագիւղի Ազգ. գերեզ-*

*մանատան մէջ իր ծնողքի կողքին։ Ահա իր տապանագիրը.*

Է

Աստ ամփոփի Թադէոս աղայն՝ որ
էր որդի արքունի վառօղապետ մահտեսի
Առաքել Ամիրայի Ջատայեան
Ո՛վ անցաւորք ճանապարհի կեցաղոյս
Եկայք ի տես ի տեսարան իմ հոգւոյս.
Այն ինչ որդւովք առոյգ տիօք խայտայի
Անդ ի խնդրելն համ բերանոյս կորուսի.
Սուր սուսերի դառն մահուան ամուսնոյս
խոցեց զսիրտ ախտիւ հիւծման իմ հոգւոյս
Մինչչեւ հասեալ ի Ի եւ Ը ամ կենաց
Եհաս ինձ քուն Աստուածային կամաց
Յոյժ թախանձէ՛ ըզսիրելիսդ իմ համակ
Աղերսաշունչ բարբառոյ իմ ոսկերաց
Նպաստել ինձ արտասուելով խնդրելով
Յարուցանել զմեռելութիւնըս մարմնով։

*Յամի Տեառն* 1814 *Ապրիլի* 20։

(*Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն. Բ. Վիեննա* 1932, *էջ* 681—2)։

3. Յովհաննէս. — *Մահտեսի Տատ Առաքելի երրորդ զաւակը՝ Յովհաննէս եղած է մեծ Տոհմի մը Գլուխը։ Ինչպէս Թորոս Ազատեան* (*Աստղաբերդ, էջ* 162) *ալ գիտած է՝ Տատեան Գերդաստանի պատմութեան մէջ*

*կը տեսնենք որ այս Գերդաստանը գլխաւորաբար երկու մեծ Տոհմերով ճիւղաւորուած ու բարգաւաճած է, իր սերունդները հասցնելով մինչեւ 20րդ դար եւ անկէ վեր: Հետեւաբար դաստուրումի, պատմական ճըշգութեան եւ յստակութեան տեսակէտով լաւագոյն կը համարիմ Տատ Առաքելի որդի Յովհաննէս Պէյը եւ Սիմոն Ամիրայի որդի Պօղոս Պէյը նկատել իբրեւ երկու Տոհմագլուխներ եւ այնպէս շարունակել Տատեան Գերդաստանի պատմութիւնը:*

*Բայց նախ տեսնենք Տատ Ամիրայի երեք զաւակներն ալ.*

4. Մարգարիտ. — *Տատ Առաքել Ամիրայի մէկ աղջիկը կը յիշուի Տատեանց «Ժամանակագրութեան» մէջ, ուր կ'ըսուի. «Աննա Խաթուն (կին Տատայ) յոյժ տկարացեալ ի հիւանդութենէ, էջ յՕրթագիւղ ի տուն* դստեր *իւրոյ Մարգարիտայ...» (Ընդարձակ Տարեցոյց, 1932, էջ 96 եւ 92): Այս առթիւ յիշենք որ Տատ Ամիրայի մայրն ալ Մարգարիտ կոչուած էր ինչպէս տեսանք վերը: Մարգարիտ ամուսնացած էր Ագուլեցի Մանուկի որդի Յովհաննէս Աճեմեանցի հետ (Անդ, էջ 92[1]):*

[1] *Յովհաննէս Ամիրայի «Օրագրութեան» բնագիրը կը գրէ. «Մարգարիտ Խաթունը Օրթագիւղ տուն ունէր, ծախեց եկաւ Էյիւպ տուն մը առաւ բնակութեան... Յովհաննէս Տատեան՝ քեռայրը քովն առաւ ընդ նմին քեռորդին՝ Մանուկ Աղան ալ, որդի Մարգարտայ, որոնց բաւական ամսական կը տրուէր*

5. Անդրէաս. — *Տատի այս զաւակը ծնած է 1799ին՝ Ակատլըի մէջ եւ եղած է վաղամեռիկ. — «Յետ միոյ ամի մեռանի»* (*Ընդարձակ Տարեցոյց, անդ՝ «Ժամանակագրութիւն»*)։

6. Մարթա. — *Տատ Առաքել Ամիրայի այս երկրորդ աղջիկը կը յիշուի Յովհաննէս Ամիրայի «Օրագրութեան» մէջ* (*էջ* 22)։ *Մարթա ամուսնացած էր Ղազար Կիւլիւմեանի հետ եւ* 1823 *Սեպտեմբեր — Հոկտեմբերին կը մեռնի*։

## 4. Ա. ՏՈՀՄԱԳԼՈՒԽ — ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՄԻՐԱՅ

*Տեսանք վերը թէ ինչպէս Մահտեսի Առաքել Ամիրայի երրորդ որդի Յովհաննէս՝ Ակնի Առաջնորդ Պետրոս Վ.ի եւ Ակնի ու Գիւղերու երեւելիներուն նամակներ գրելով՝ հետամուտ եղած է գտնել ձեռք բերել իր նախնեաց Յեղագիրն ու պատմութիւնը։ Ջանք մը, որ գեղեցիկ արդիւնքով պսակուած է, ինչպէս նկատեցինք միասմի*։

Թ. Ազատեան *կը գրէ իր մասին. «Յովհաննէս Պէյ Տատեան ամէնէն ուշադրաւ*

---

*... Յօհաննէս Տատեան իրիկուններն կ՚երթար քրոջը տուն հանդստանալու։ Մարգարիտ Խաթուն քոյրն՝ էրիկ մարդու բնութիւն մը ունէր, նեղութեանց համբերող եւ անայլայլելի ոգի կար... ի վերայ եղբօրն Յօհաննու մայրական գութ ունէր եւ միշտ ցաւակից եւ ուրախակից էր ընդ նմա...»* (*Օրագրութիւն, էջ* 35)։

դէմքը կը հանդիսանայ իր Գերդաստանին։ Իր մշակութային խոր հմտութիւնը ի յայտ կու գայ այն կարգ մը երկարաշունչ երկասիրութիւններով եւ որոնք սակայն ցարդ անտիպ եւ հետեւաբար անծանօթ մնացած են իր բոլոր կենսագիրներուն» (Տատեան Գերդաստանը, անդ, էջ 6)։

Ջանանք, ուրեմն, ներկայացնել Տատեան Գերդաստանի այս կարկառուն դէմքը իր հնարաւոր կատարելութեամբ։

Ծնունդ եւ ուսում

Յովհաննէս Պէյ ծնած է Ազատլըի Տատեան բնակարանին մէջ 1798 Փետր. 14ին եւ մկրտուած մօտակայ Փիլիպպոս գիւղին Ս. Նշան եկեղեցին (Օրագրութիւն Յովհաննէս Ամիրայի, էջ 1). Ըստ Թորգոմեանի՝ Ս. Խաչ եկեղեցիին մէջ Կաղզուանցի Պօղոս քահանայէն (Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, անդ, էջ 409—10)։ Սուլթան Սելիմ Գ. Յովհաննէսին եւ իր Սիմոն ու Թադէոս եղբայրներուն ամսական 40 (յետոյ 70)ական ղուրուշ վարձք կը շնորհէ 1798 Յունիսին։

Յովհաննէս՝ իր մանկական հասակին ծաղիկ հիւանդութեան կը բռնուի՝ մահուան դուռը հասցնելով զինքը. ախտին հետքը կը մնայ՝ մինչեւ ծերութիւն՝ աջ աչքէն ծորելով հիւթ մը եւ դէմքը մնալով ծաղկոտ։

Ուսումը սկսած է 5—6 տարեկանին. Նախ ԱՅԵՕՐԿԻ (Ազատլը) գիւղի յոյն դպրոցը յաճախելով եւ Յունաց եկեղեցին փո–

*խաստացութիւն ընելով: Եօթը տարեկանին հայերէնի դասեր կ'առնէ ԳՐԻԳՈՐ ՆՇԱՍՏԱՃԵԱՆԷՆ*[1] *մինչեւ* 1808: *Նշաստաճեանի մահէն* († 1809) *վերջ ուսուցիչ կը բռնուի* Սամաթիացի տիրացու Յակոբ (1809—12) հայերէնի եւ թուաբանութեան, *իսկ ՍԱՀԱԿ* **ԶԱՄՋԵԱՆ՝** գաղղիերէնի *համար: Պահ մը դաստութիւն ըրած է այս միջոցին նաեւ ԹԱԳԻՈՐ ՊԱՏՈՒԵԼԻ ՎԱՐԺԱՊԵՏԻՆ* Նշանեը *Մայր Դպրատան մէջ, ուր էր այդ միջոցին իր քոյրը՝ Մարգրիտ: Ուսման այս ընթացքը կը տեւէ մինչեւ հօրը՝ Տատ Ամիրայի մահը* (1812), *որմէ վերջ արդէն* — 1813 *Փետր.* 20*ին* — *Սիմոն եղբօրը քով* վառօդարանի *գործին մէջ կը մտնէ՝* Ազատը:

*Հոս կը սկսի Յովհաննէս Պէյ ապագայ կեանքի ասպարէզի համար պէտք ունեցած ուսումը ամբարել :Կ'ուսումնասիրէ վառօդարանի մեքենաները, անոնց կազմը եւ գործածութիւնը: Իրեն առաջնորդ կ'ունենայ նախ իր Սիմոն եղբայրը, յետոյ* Սիվրի խաչատուր Քեհեան, *որ հին վառօդագործ մըն է,* Բալուցի Ուստա Ղուկասը, *որ Մահտեսի Տատ Ամիրայի ձեռնասունն ըլլալով՝ հմուտ էր մեքենական արհեստին եւ գուրգուրոտ սէր մը կ'ունենայ Յովհաննէսին վրայ իբրեւ խնամոտ հայր մը սորվեցնելով՝ ինչ որ կարելի էր (Օրագրութիւն, էջ* 3):

[1] *Ինչպէս վերը յիշեցինք՝* Գրիգոր Նշաստանեան *աշակերտած է* Տրիեստի Վիեննական Մխիթարեան գիշերօթիկ վարժարանին՝ 1785էն սկսած:

1814*ին եւ* 1815*ին* ժամանակը *սարսափի մատնած էր Պոլիսը եւ իր շրջապատը: Ազատլըն եւս խնայուած չէր: Սիմոն Տատեան իր ընտանիքովը կը քաշուի Ազատլըի* խուլէի (*աշտարակ—բերդ*) *մէջ՝ հետը ունենալով Յովհաննէսը: Վերջինս հոդ առիթ կ'ունենայ* աշխարհագրութիւնը *ուսումնասիրելու, միշտ կարդալով այդ նիւթին շուրջ եղած գրութիւններ, որմէ մեծ փափաք կ'արթննայ իր մէջ անգամ մը այցելելու* Պարիս եւ պտտելու եւրոպական երկիրներ:

*Յովհաննէս ընածին հեղ եւ ծնողասէր ընութիւն ունենալով՝ մօրը կը հետեւի, երբ ան* 1816*ին* Ազատլըի *մէջ անձնական* նոր տուն մը շինելով՝ *կ'երթայ կը բնակի հոն: Յովհաննէս մօրը ծերութեան նեցուկը կ'ըլլայ՝ միշտ անբաժան անկէ եւ հնազանդ անոր եւ իր ամբողջ եկամուտ վարձքը* — 80 *դրշ*. — *անոր յանձնելով* (*Տե'ս* Ընդարձակ Տարեցոյց, 1932, *էջ* 91—7, *Տատեանց* «ժամանակագրութիւնը») :

### ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

1818 *Յուլիս* 28*ին տեղի ունեցած է Յովհաննէս Պէյի ամուսնութիւնը, ԱՑԵՕՐԿԻ* (*Ազատլը*) *եւ պսակադիրը եղած է* Տէր Գրիգոր քահանայ (*Օրագրութիւն, էջ* 9) :

*ՊԷՇԻԿԹԱՇԻ մէջ տուն ունէր* Սիմոն Տատեան: *Յովհաննէս ամուսնանալէ վերջ՝ Պէշիկթաշ՝ եղբօրը տունը գացած է: Այդ*



Յովհաննէս
Ամիրայ

միջոցին իրենց մօր՝ Աննայի հիւանդագին վիճակը ծանրանալով՝ կու գայ Պէշիկթաշ, Սիմոնի տունը, ուր Յովհաննէսի կինը իր անդրանիկ ծնունդը ունենալով՝ ամբողջ Տատեան Տան ցնծութեան առիթ մը կ՚ընծայէ։ Նորածինը աղջիկ մըն էր։ Աննա Խաթուն գայն գիրկն առնելով ու համբուրելով՝ «ԱՆՆԱ ԱՆՈՒՆՍ ԱՍՈ՛Ր ՏՈՒԻ, ԱՍ ԻՄ ԱՆՈՒՆՈՎՍ ԱՆՆԱ ՊԻՏԻ ԿՈՉՈՒԻ», կ՚ըսէ եւ այդպէս ալ կը մկրտուի փոքրիկը (Ընդ. Տարեցոյց, 1932, անդ՝ էջ 91—7)։

Ո՞վ էր Յովհաննէս Ամիրայի Տիկինը։

— Տատեանց «Ժամանակագրութիւն»ը, այսինքն՝ Յովհաննէս Ամիրայի «Օրագրու–

թիւն»ը կը յիշէ. «ԵԱԳՈՒԹ ԽԱԹՈՒՆ, դուստր ՄԻՆԱՍ ԱՂԱՅԻ ՄԱՆԱՍԵՆՑ ՁԱՐԳՀԱՆԵՑՈՑ» (Օրագրութիւն, էջ 9)։

Տիկին Եագուլթի քոյրն ալ ծանօթ է. — ՔՕՆՋԷ ՏՈՒՏՈՒ, որ ամուսնացած ըլլալով ունէր ՅՈՎՀԱՆՆԷՍ անունով տղայ մը (Օրագրութիւն, էջ 46—47)։

Տիկին Եագուլթ ծնած է 1799ին եւ մեռած 1871 Յուլ. 15ին. Թաղուած է ՄԱՔՐԻԳԻՒՂԻ Տատեանց գերեզմանատունը, որ կը գտնուի Մաքրիգիւղի ԾՆՈՒՆԴ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ եկեղեցւոյն պարտէզին աջ կողմը։ Տիկին Եագուլթ թաղուած է իր ամուսնոյն՝ Յովհաննէս Պէյ Տատեանի քով (Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն, Ա. Վիեննա 1913, էջ 402)։

Տիկին Եագուլթ տապանագիր չէ ունեցած։ Իր մահուան առթիւ կը գրէ Պոլսոյ Փունջ Օրագիրը 1871 Յուլ. 16ին. «Արքունի վառօդապետ Տատեան Յովհաննէս Պէյի ամուսին այնուափայլ Եագութ Տիկինը երէկ գիշեր իւր 71ամեայ կենաց ընթացքը կնքեց յետ բազմաժամանակեայ հիւանդութեան... Հանգուցեալ Տիկինը նշանաւոր եղած է իւր առաքինական բազմաթիւ գործերովը. իւր բարձր դիրքին մէջ խոնարհ էր նաեւ ամէնուն հետ քաղցրութեամբ կը վարուէր։ Մանաւորապէս գութ ունէր աղքատաց վրայ եւ իրեն կարկառեալ օգնութեան ձեռ–



Տիկին Եագուբ (իր Սիմոն թոռնիկով)

քերն ընդունայն չէին դառնար» (Փունջ Օրագիր, Կ. Պ. 1871 Թ. 608, Յուլ. 16):

ՎԵՐԱՏԵՍՈՒՉ ԳԷՅԳՈՋԻ ԳՈՐԾԱՏԱՆ

*Ինչպէս գրեցինք վերը՝ Յովհաննէս Տատեան* 1813*ին մտած էր* Ազատլըի *վառօդարանի գործին մէջ, ուր իր եղբայրը Սիմոն՝ Տնօրէն եւ վառօդապետ կարգուած էր: Թէեւ ատեն մը առանձին գործի ետեւէ կ'ըլլայ՝ սակայն* 1810 *Սեպտ.* 10*ին վերջնականապէս կը յարի եղբօր գործին: Յովհաննէս կը սորվի ամէն բան ինչ որ հարկաւոր էր վառօդարանի գործին համար: Ոչ միայն* մեքենա–

գիտութեանց մէջ մասնագիտութիւն ձեռք կը բերէ, որուն մասնաւոր յատկութիւն ունէր, այլ եւ բացէն կը սորվի աշխարհագրութիւն, երկրաչափութիւն եւ գծագրութիւն: Իր մասնագիտական ուսումը զարգացնելու եւ կատարելագործելու համար իր ճիւղին վերաբերեալ ֆրանսերէն գրութիւններ Հայերէնի կը թարգմանէ: (Ընդարձակ օրացոյց, էջ 144):

1820ին ՎԵՐԱՏԵՍՈՒՉ ԿԸ ԿԱՐԳՈՒԻ ՊԷՅՔՈԶԻ ԹՂԹԱՇԻՆՈՒԹԵԱՆ ԳՈՐԾԱՏԱՆ, զոր կը վարէ երկու տարի եւ կեանքի վտանգէ մը վերջ՝ կը հեռանայ (Օրագրութիւն, էջ 17):

Դարձեալ կը մտնէ Ազատլըի Վառօդարանը, Սիմոն եղբօրը քով: Երբ եղբայրը 1823 Հոկտ. 13ին ԱՆԿԻՒՐԻԱ կ'աքսորուի՝ Յովհաննէս Ամիրայի կը յանձնուի ՎԱՌՕԴԱՐԱՆԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ, մինչեւ վերադարձ եղբօրը, որ կը տեւէ 4 ամիս (Օրագրութիւն, էջ 19):

Այս առթիւ յիշատակենք որ Տատեան Տան խոստովանահայր եղած է «ՏԷՐ ԳՐԻԳՈՐ ՄԵԾ ՔԱՀԱՆԱՅՆ, որ էր ԵՂԲՕՐՈՐԴԻ ՏԷՐ ՊՕՂՈՍԻ» (Օրագրութիւն, էջ 23):

1826ին վերջը ԷՅՈՒՊԻ ՄԱՆԱԾԻ ԳՈՐԾԱՏԱՆ ՏԵՍՈՒՉ Կ'ԱՆՈՒԱՆՈՒԻ: Այս գործատունը հաստատուած էր Առաքել անունով Հայէ մը, որ Վիեննայի մէջ ուսած էր (Օրագրութիւն, էջ 25): Յովհաննէս այս

գործն ալ կը թողու 1829 Դեկտ. 30ին (Օրագրութիւն, էջ 38: — Ընդ. Տարեցոյց, 1900, էջ 144—5):

## ՀՆԱՐԻՉ ՄԵՔԵՆԱՆԵՐՈՒ

Յովհաննէս Տատեան սկսած էր աշխատիլ գործիքներ ու մեքենաներ շինելու: Ինքնահնար ճարտարութեամբ կը շինէ նախ ՀՐԱՑԱՆՆԵՐՈՒ ԵՐԿԱԹՆԵՐԸ ԾԱԿԵԼՈՒ ՄԵՔԵՆԱՅ ՄԸ: Երբ ՍՈՒԼԹԱՆ ՄԱՀՄՈՒՏ փափաք կը յայտնէ որ հրացաններու երկաթները ողորկելու մեքենայ մ'ալ շինուի եւ այս գործը Սիմոն Տատեանի կը յանձնէ՝ Սիմոն այս գործն ալ իր ճարպիկ եղբօր Յովհաննէսին կը յանձնէ: Այս առթիւ Տատեանց «ժամանակագրութիւն»ը կը գրէ. «Յովհաննէս Տատեանը ամենայն ուրախութեամբ սա բանիս ալ ձեռնարկութիւն ըրաւ եւ սկսաւ ՇԻՆԵԼ ԻՆՔՆԱՀՆԱՐ ՃԱՐՏԱՐՈՒԹԵԱՄԲ որ միանգամայն երկաթը ծակէ ու վրան ալ խալէմով յարդարէ եւ ողորկէ: Եւ յիրաւի շատ լաւ բան մըն էր եւ ճարտար գործ մը — թիւֆէնկին երկաթը յենարաններուն վրայ երկու ծայրը անցած կը դառնար եւ պուրղուն դարձեալ ուրիշ յենարանի վրայ կեցած միշտ ներս մղուելու կերպով դրուած էր եւ ընդ երկարութեան ալ մէկ վիտայ մը ուշիկ դառնալով խալէմը վերէն վար ու վարէն վեր կը քալեցնէր եւ երկաթին երեսը բոլոր կը յար—

զարկէր ու յետոյ կ'ողորկէր․ օրը 12 ժամ բանելով 10 հատ մէկ մեքենան կ'արտադրէր» (Ընդարձակ Տարեցոյց, 1932, անդ՝ էջ 97․ նոյն՝ 1900, էջ 145)։

Այս գործերը կատարուած էին 1827 Ապրիլ—Յունիսին։ Սուլթան Մահմուտ Բ․ (1808—39) պալատականներու եւ պետական աւագանիին հետ Չրաղանի պալատի պարտէզին մէջ Յովհաննէս Տատեանի շինած մեքենաները փորձը տեսնելէ վերջ այնչափ կը հաւնի եւ հաճութիւն կը ցուցնէ որ կը հրամայէ «ի դիմաց արքային շէրպէթ ու խահվէ իքրամ ընել» Սիմոն եւ Յովհաննէս Տատեաններուն։ Յետոյ ի նշան գոհունակութեան Սուլթանը «աթլաս քսակի մէջ» Սիմոնին 15·000, իսկ Յովհաննէսին 10,000 զուրուշ նուէր կու տայ, որուն վրայ թուրք աւագանին «պէրհուտար օլսուն» ըսելով կը գովեն ու կ'օրհնեն երկու Տատեանները (Ընդ․ Տարեցոյց, 1932, էջ 98—9, «Ժամանակագրութիւն[1]»)։

Յովհաննէս Տատեան, որ նաեւ կրօնական խոր հաւատքի ու բարեպաշտութեան ոգիով մեծցած էր՝ կը փութայ Աստուծոյ շնորհակալութիւն մատուցանել այս յաջողութիւններուն համար։ Այդ տեն — 1827

[1] Յովհաննէս Ամիրայի «Օրագրութեան» ընագրին մէջ (էջ 31) ո՛չ թէ 25·000 դուրուշ, այլ 25·000 ոսկի գրուած է՝ Սիմոն Ամիրայի եւ Յովհաննէս Ամիրայի տրուած նուէրը։

— *Հրդեհով մը* Գումգափուի Մայր—եկեղեցին *այրած ըլլալով՝ բացօթեայ խորան կանգնած էին ու պաշտամունք կը կատարուէր: Յովհաննէս «իջաւ չիտակ* խումխափու *Մայր եկեղեցին, որ թէպէտեւ բացօդեայ էր հրկիզութեան առենը այրելուն համար, բայց սեղան կար ուր պաշտօն կը մատուցուէր:* Գնաց ուխտիւք Աստուծոյ այնչափ ողորմութեանը եւ շնորհացը փառք եւ գոհութիւն մատուցանել եւ աղքատաց ողորմութիւն տալ եւ քահանայից պաշտօն նուիրել» (*Անդ*, *էջ* 99):

*Ատկէ վերջ Յովհաննէս* Այ—Ստեփանօ *կ՚երթայ* «ուր բոլոր փամիլիան հոն էին» (*Անդ*, *էջ* 100), *ամբողջ Գերդաստանով ուրախանալու համար:*

*Այդ առաջին յաջողութենէն վերջ՝ Յովհաննէս Պէյ Սուլթանի փափաքին վրայ* երեք նոր մեքենայ *հրացանի համար*, չորս մեքենայ ալ մանածի *համար կը շինէ՝* 1827 *Սեպտ.* 9*ին սկսելով* 1828 *Մայիս* 30*ին վերջացնելով* (*Անդ*՝ *էջ* 100):

*Յովհաննէս Պէյի ինքնահնար մեքենաներէն լուսանկար—նմոյշ մը տուած է Թ.* Ազատեան (*Ընդարձակ Տարեցոյց*, *անդ*՝ *էջ* 99):

## ՊԵՏԱԿԱՆ ՎԱՌՕԴԱՊԵՏ

*Յովհաննէս Տատեան Էյուպի գործատունը լքելէ վերջ՝* 1830 *Յունուար* 1*ին կը*

մանէ վառօղարանի գործին մէջ՝ իբրեւ եղբօրը՝ Սիմոնի գործակից: Երբ Սիմոն Տատեան 1832 Մարտ 4ին կը մեռնի՝ Սուլթան Մահմուտ Բ. իրատէով Յովհաննէս Տատեանը Ազատլըի վառօդարանին վառօդապետ կը կարգէ 1832 Մարտ 7ին (Բանասէր, անդ՝ էջ 122), 1000 ղրշ. ամսականով:

Յովհաննէս Պէյ այս կարեւոր պաշտօնին կոչուելէ վերջ՝ կ'աշխատի իր ճիւղին մէջ կատարելագործութիւններ մտցնել հետըզհետէ նորագոյն ուսումնասիրութիւններ կատարելով[1]: Այս նպատակով 1835ին ցամաքի վրայէն ճամբորդութիւն մը կ'ընէ դէպի Եւրոպա, հանդիպելով Իտալիա, Ֆրանսա, Անգլիա, Աւստրիա: Ֆրանսայի մէջ ինքզինքը կը զարգացնէ տեսական ու գործնական քիմիաբանութեան մէջ (Արշ. Արարատեան, 1844 Թ. 174, Ֆրանս. Թերթի վկայութիւնը) յետոյ իր ճիւղին վերաբերեալ գիտական հաստատութիւններու մէջ՝ Ֆրանսա եւ Անգլիա ուսումնասիրութիւններ կ'ընէ: Այդ առթիւ է որ ծանօթութիւններ կը քաղէ երկաթի ձուլարաններու եւ չուխայի գործարաններու եւ անոնց համար պէտք եղած գործիքներու եւ այլն, մասին:

Այս ճամբորդութեան մասին ունի մանրամասնութիւն Աւետիս Պէրպէրեան, որ կը գրէ. «Արքունի վառօդապետն Յովհաննէս...

---

[2] 1832 Յունիսին գրաղած է «ՆՈՐԱՀՆԱՐ ՄԵՔԵՆԱՅԻՑ ՏԻՆՈՒԹԵԱՆՑ» (Օրագրութիւն, էջ 46):

խնդրեաց յարքայէ, զի յատուկ հրամանաւ եւ յանձնարարական թղթով Նորին շրջեսցի յԵւրոպիա ի գործարանս բնական արուեստից Եւրոպական թագաւորութեանց, զի տեղեկութիւն առասցի բազմաց հարկաւոր գիտելեաց շուրջ զնոքօք եւ կամ զթերին իւր լցուսցէ ակն յանդիման տեսութեամբ եւ փորձառութեամբ... եւ զայսոսիկ ուսեալ ապա վերադարձցի ի Կ. Պոլիս եւ ի կիր արկցէ զնոսին ըստ օրինակի Եւրոպացւոց յօգուտ եւ ի փառս Օսմանեան թագաւորութեան: Ուրախացեալ արքայ ընդ այս բարեմիտ յօժարութիւն Նորին, որ յօգուտ տէրութեանն յանձն առնու ճանապարհ առնել ընդ այսչափ հեռաւոր աշխարհս. գովեաց զբարեխոհ յառաջադիմութիւն Նորին եւ ետ Նմա նշանն ականակապ ունել յարաժամ ի կուրծս իւր եւ գիր յանձնարարութեան առ թագաւորութիւնս Գաղղիացւոց եւ Անգղիացւոց եւ առ կայսրն Աւստրիոյ, խնդրելով ի Նոցունց, զի մի՛ զլասցին ի ցուցանելոյ Յովհաննու հաւատարիմ ծառայի իւրում հայկազնոյ զամենայն՝ զոր միանգամ անձկայ տեսանել եւ հարցանել եւ զփորձ առնուլ: Գնացեալ Յովհաննու վառօդապետի այսպիսի շքով, շրջեցաւ յԻտալիա, ի Գաղղիա եւ յԱնգլիա եւ ետես ի նոցանէ պատիւս եւ ընդունելութիւնս եւ առացեալ բազմատեսակ ծանօթութիւնս հարկաւոր գիտելեաց բնական սկզբանց եւ Նիւթոց եւ որ այլեւս կարե—

ւորքն էին խուրում իսկ արուեստի վառօղա-
չինութեանն եւ մեծաւ պատուով վերադար-
ձաւ ի Կ. Պոլիս: Երեր ընդ իւր եւ զզանա-
զան գործիս հրաշալուրս ի տես արքայի. ընդ
որ ուրախ լեալ արքայ, յաւել զպատիւ եւ
զարտօնութիւն նորա» (Աւետիս Պէրպէրեան,
Պատմութիւն, էջ 264—5. Տե՛ս նաեւ էջ
492):

Յովհաննու այս ճամբորդութիւնը տե-
ւած է մէկ տարիի չափ եւ վերադարձած է
1836 Նոյ. 23ին (Պէրպէրեան, անդ՝ էջ 492):
Այս առթիւ Յովհաննէս Պէյ հանդիպած է
Վիեննայի մեր Մայր-վանքը եւ չինել տուած
է փոքր երկրագունտը եւ երկնագունտը,
որոնց հեղինակն եղած է Հ. Աղեքսանդր
Պալեանն (Տե՛ս Արշալոյս Արարատեան,
Զմիւռնիա 1845 Թ. 241): Որուն յիշատա-
կութիւնը կը նշմարենք Եւրոպայի (Վիեննա
1847 Դեկտ. 23) ստ տողին մէջ. «... երկրի
ու երկնից արուեստական գնդերը նորէն
մինչեւ հիմա ունեցածներէս շատ աւելի մեծ
շինենք ...»:

Այս ճամբորդութիւնը, զոր իր Առաքել-
Միսակ որդւոյն ընկերակցութեամբ ըրած է՝
Յովհաննէս Պէյ անձամբ գրի առած է 70
մանրատառ էջերու մէջ, որմէ նմոյշ մը
տուած է Թ. Ազատեան (Տատեան Գերդաստանը, անդ՝ էջ 22—4): Ուղեւորութիւնը
տեւած է մէկ տարի: 1836ին կը վերադառնայ Պոլիս՝ հետը բերելով վկայականներ,

որոնք կը հաստատեն թէ իր ժամանակը պարապ անցուցած չէ Եւրոպայի մէջ։ Դարձին նոր մեքենաներ կը հաստատէ եւ բոլորովին նոր դրութեամբ կը կազմակերպէ վառօդարանի գործը (Ընդարձակ Տարեցոյց, 1900, էջ 145)։

1838 Յուլիս 4ին հրդեհ մը կը յիշէ Պէրպէրեան «ի վառօդարանին Մագրիգիւղին» (Աւետիս Պէրպէրեան, Պատմ. էջ 495), որուն մասին հանդիպած չենք ծանօթութեան մը լուսաբանող։ Ըստ Ընդ. Տարեցոյցին (1900, էջ 146) Սուլթան Մահմուտ Յովհաննէս Տատեանի շնորհած է 1838ին իփթիխարի պատուանշանը։

1841ին կը գրէ Իզմիրի հայաթերթը. «Անցածները Նորին Վեհափառութիւնը Տէրութեան գլխաւոր պաշտօնատարները հետը Այի Ստեփանոս գացեր է արքունի վառօդարանը, որպէս զի ինքն անձամբ տեսնատես ըլլայ ու երեւելի գործարանին բարեկարգութեանը ու յառաջդիմութեանը, որնոր Բարձրագոյն Դուռը յանձնած է ի վաղուց անտի բազմահանճար խնամոց Մեծ. Յովհաննէս Աղային եւ Պօղոս Աղային Տատեանց ... Մեծազօր ինքնակալը հրամայեց որ իր ներկայութեանը զանազան տեսակ վառօդներուն զօրութիւնը քննըվլի ու փորձըվլի։ Տէրութեան պաշտօնի մէջ գտնուող բրուսացի ճարտարագործներ (ինճեներ)... Ներկայ էին ու զանազան գործիքներով ու հրաձիգ

*ղէնքերով փորձ ընելով բաղդատեցին* յիշեալ գործարանին վառօդները՝ անգղիական արքունի վառօդին հետ, որուն ըստ ամենայն մասին համեմատ գտնըվեցաւ զօրութիւնն ալ ու սաստկութիւնն ալ: *Նորին Վեհափառութեան հրամանովը ու անոր ներկայութեանը* Գերամեծար Յովհաննէս Աղան Տատեան *պատիւ ունեցաւ քանի մը* քիմիական վերլուծութիւններ ընել, *որոնց վրայ խիստ գոհ ըլլալով Ինքնակալը*՝ իր սրտին բարեհաճութիւնը յայտնեց իր հաւատարիմ ու հանճարեղ պաշտօնատարին: *Նմանապէս բոլոր գլխաւոր Նախարարներն ալ գովեցին անոր բնական հնարագիտութիւնը ու յաջողակութիւնը*» (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1841 *Թ*. 55, *Հոկտ*. 18):

*Այս առթիւ Սուլթանը Յովհաննէս Տատեանին կը շնորհէ* ԻՄԹԻԱԶ ՊԱՏՈՒԱՆՇԱՆԸ, *որ Թուրքիոյ ամենաբարձր պատուանշաններէն մէկն է եւ որ շատ քիչերուն կը տրուի, կը գրէ Պարիս հրատարակուող* Revue Sintétique des Sciences *ամսաթերթը* (*Տե՛ս* Արշալոյս Արարատեան, 1844 *Թ*. 174)[3]:

[3] Սուլթան Մահմուտ *հաստատած էր* իմթիազը իփթիխար *պատուանշանը, զոր նուիրած էր նախ* Տատ Առաքել Ամիրայի, *յետոյ* Յովհ. Պէյ Տատեանի, *որմէ ժառանգած էին իր որդիքը*: 1887*ին կը հրամայէ Սուլթան Ապտիւլ Համիտ Բ*. Յարութիւն Պէյ Տատեանի *որ գործածէ* իմթիազը իփթիխար *պատուանշանը* (Արմէնիա, *Մարսէյլ* 1887 *Թ*. 17, *Հոկտ*. 15):



ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՄԻՐԱՅ
(1835 — 40ին)

Անշուշտ ատկէ առաջ ուրիշ շատ պատիւներ ու պատուանշաններ ստացած էր Յովհաննէս Պէյ, բայց ո՞վ պիտի յիշատակէր, երբ Հայ Մամուլ կը պակսէր: Պէրպէրեանն է որ մէկ—երկու յիշատակութիւն ըրած է, ինչպէս տեսանք:

1846ին Յովհաննէս Տատեան՝ գործակցութեամբ իր Առաքել—Սիսակ, Ներսէս—Խոսրով եւ Յարութիւն—Գաբրիէլին զաւակներուն՝ գիւտ կ'ընէ բամպակէն վառօդ շինելու: Ճիշդ է որ իրմէ առաջ Զուիցերիացի Շէնբայն այդ գիւտը ըրած էր, սակայն սա գաղտնի պահած էր իր գիւտը եւ հրապարակ չէր հանած: Յովհաննէս Պէյ զանազան փորձերով կը գտնէ բամպակէն վառօդ շինելու բաղադրութեան գաղտնիքը: Երբ կ'իմանայ Սուլթան Ապտիւլ Մեճիտ՝ անձամբ ներկայ կ'ըլլայ փորձերուն: Ժամանակակից ՀԱՅԱՍՏԱՆ թերթը կը գրէ. «Բարձրապատիւ Ահմէտ Ֆէթհի փաշային՝ Մեծազօր ինքնակալին հրամանին համեմատ՝ այս փորձերուն համար արքունի վառօդարանին մէջ բաւական քանակութեամբ բամբակէ վառօդ պատրաստել կու տայ: Ազնուական Յոհաննէս եւ Պօղոս Ամիրայքն Տատեան՝ բարձրագոյն դուռը նախարարաց առջին այս բամբակէ վառօդին փորձը ըրին Նոյեմբեր 18ին (1846) հրացան գործածելով եւ գնդակը ուժգին յարձակուեցաւ, բայց մէկալ վառօդին պէս ձայն չի հաներ. ցնցումն չունի, մուխ եւ աղ—

*տեղութիւն չունի. միայն մէկ խժոռ խոնաւութիւն մը ունի, որ կը պլշկի. բայց հրացանը երկրորդ անգամ լեցուած ատենը առաջին անգամէն մնացած խոնաւութիւնը դիւրաւ կը մաքրէ: Բաղադրութեան կերպը այս է. Հաւասար մասն ծխահան բորակային թթուուտ (սալտ Նիդրիք քօնսանդրէ) եւ ծծմբային թթուուտ (սալտ սիւլֆիւրիք) իրարու հետ խառնելով մաքուր եւ չոր բամբակը յիշեալ լուծողութեան մէջ թաթխելու է անանկ որ կատարեալ թրջի եւ ծծէ եւ քառորդի մը չափ այն լուծողութեան մէջ թողլէն ետքը՝ պէտք է պարզ եւ առատ ջրով լուանալ, մինչեւ որ թթուուտին համը չի մնայ բամբակին վրայ: Եւ պէտք է լաւ մը չորցընել մեղմ ջերմութեամբ եւ չատ զգուշութեամբ: Ահաւասիկ յիշեալ վառօդոյն պատրաստութեան բոլոր գաղտնիքը»* (Հայաստան, *Կ. Պ.* 1846 *Թ.* 23, *Նոյ.* 30: — *Տե՛ս նաեւ* Արշ. Արարատեան, *Զմիւռնիա* 1846 *Թ.* 274):

*Յովհաննէս Տատեան Եւրոպայէն վերադարձին* հիմնադիրը կ'ըլլայ պետական շատ մը գործարաններու: *Այս գործարաններու* անունները *կը յիշուին Տատեանց մասին գրողներէն, ինչպէս* Ընդարձակ Տարեցոյցի (1900, *էջ* 145) *յօդուածագրէն* (*Հրանտ Ասատուր*), *սակայն* ոչ ոք փորձած է ճշդել այդ հիմնադրութեանց վայրը, ժամանակը եւ այլ

պարագաները։ *Մենք պիտի փորձենք այդպիսի ճշդում մը*։

ա) *Առաջինը կ'ըլլայ* մետաքսի գործատունը, *որուն հիմնադրութիւնը* 1840*ի վերջերը կը թուի տեղի ունեցած ըլլալ, զի ժամանակակից հայ թերթը Պոլսէն առած լուրին արձագանգ կ'ըլլայ* 1840 *Դեկտ.* 6*ին՝ գրելով.* «Ասղնեգործի (*մուշապախ*) համար գործատուն մը պիտի հաստատվի հոս, *Եւրոպայի մէջ եղածներուն նման. կըսվի որ* անոր կառավարութիւնը արքունական վառոդապետ Տատեան Յովհաննէս Աղային յանձնըվելու է» (Արշ. Արարատեան, *Զմիւռնիա* 1840 *թ.* 11, *Դեկտ.* 6)։ *Թերթը իր յաջորդ թիւին մէջ կը ճշդէ Պոլսէն ստացած լուրը.* «*Անցած օր կը ծանուցանէին* դանդէլայի գործատան հաստատութիւնը. *ասօրվան օրս՝* մետաքսէ գուրպա (չորապ) շինելու գործատան վրայ կը գուրցվի (Անդ՝ թ. 12)։

*Ասիկա հաւանօրէն* Հէրէքէի գործատունն է, *որուն մասին* Սերովբէ Պետրոսեան 1858*ին կը յիշատակէ* «ի Հէրէքէ՝ *գործարան* նրբաթել եւ բարականման ազգի ազգի իրաց *եւ* անկանելոյ բեհեզեաց եւ մետաքսեայ կերպասս» (Բանասէր, Փարիս 1907, էջ 122)։

բ) *Երկրորդ գործատան հիմնումն ալ* 1840*ին կ'իյնայ, քանի որ* 1840 *Դեկտ.* 13*ին կրնայ օրուան թերթը տեղեկացնել թէ.* «Նաեւ ուրիշ տեղ մ'ալ պիտի հաստատովի, *կ'ըսեն*, բեւեռ (չիվի) շինելու համար ու ա–

սոնց ամմէն ալ Տատեան Յովհաննէս Աղային ջանքերովը» (Արշ· Արարատեան, *անդ՝ թիւ* 12, *Դեկտ*· 13) :

*Այս գործարանը, որ Յովհաննէս Պէյի միջոցաւ հիմնուած է՝* Այի Ստեփանոյի *մէջ* վառօդարանի մօտ *շինուած է՝* երկաթ հալեցնելու համար (Արշ· Արարատեան, 1844 *Թ*· 193) :

գ) *Երրորդ գործարանը Պօլսոյ* Պէյքոզ գիւղին *մօտ եղող* Պօղազիչի *կոչուած տեղւոյն մէջ հաստատուած է : Ասիկա* խաղախորդարան–կաշեգործարան *մ'էր ուր «զանազան տեսակ կաշի կը շինվի զինուորներուն կօշիկի, փալասկայի եւ ուրիշ հարկաւոր բաներու համար» : Այս գործատան «կառավարութիւնն ալ* Յովհաննէս Աղային *ու Մեծ· Ճարտարապետ Կարապետ Աղային (Պալեան) յանձնեց բարձրագոյն Դուռը, ի նշան մտերիմ հաճութեան»* կը գրէ Արշալոյս Արարատեան (1841 *Թ*· 55, *Հոկտ*· 10· 1842 *Թ*· 99 : — *Տե՛ս նաեւ* Բանասէր, *անդ՝ էջ* 122) :

*Այս գործատան շինութիւնը* 1842*ին կ'աւարտի, ինչպէս կ'իմացնէ օրուան միակ մամուլը*· «Կաշիի գործարանը... Մայրաքաղաքիս մէջ մօտերս կը լըմննայ : *Ծառերը, որոնք տեսնալու գացին* աս նոր ու երեւելի շինվածքը, *կը համաձայնին մեծ գովեստներ ընելու քաջատոհմիկ* Տատեանց Յովհաննէս Աղային *ճարտարութեանը ու մեքենական*

*մանաւոր տեղեկութեանցը վրայ*, *որով* կարգի դրաւ *աս երեւելի գործարանը*, *որուն* հաստատութիւնը իրեն հանճարեղ հոգողութեանը յանձնըւեր է» (Արշ. Արարատեան, 1842 *Թ.* 96):

*Ինչպէս տեսանք*՝ օրուան Մամուլին *եւ* ժամանակակից վկայութեան *համեմատ* խաղախորդարանի գործարանը Պէյքոզի *մօտ* Պօղազիչի *կոչուած վայրին վրայ հիմնուած էր*: Հրանտ Ասատուր՝ *Ընդարձակ Տարեցոյցին մէջ* (1900, *էջ* 146) տարբեր անունով *կը ներկայացնէ* խաղախորդարանի *վայրը*: *Նա կը գրէ*. «1841*ին* Սէլվի Պրունի *մէջ* խաղախորդի գործարան *մը շինելու ձեռնարկուած էր*: *Յովհաննէս Պէյին* (*Տատեան*) *յանձնուեցաւ շոգեշարժ մեքենայ մը հաստատել այդ գործարանին մէջ եւ շինել կարգ մը գործիքներ կաշի ծեծելու եւ ողորկելու մեքենաներ, եւ այլն*: *Յովհաննէս Պէյ* 1841*ին այդ գործիքները եւ մեքենաները վառօդարանին մէջ շինելու ձեռնարկեց եւ տարի մը ետքը աւարտեց*»:

*Հաւանօրէն* Պօղազիչի *վայրը կը կոչուէր նաեւ* Սէլվի Պրունի:

*Այս առթիւ յիշատակենք Յովհաննէս Ամիրայի ուրիշ մէկ ճարպիկութիւնն ալ*: *Կը պատմէ Իզմիրի թերթը՝ գրելով* 1841 *Հոկտ.* 10*ին*:

«*Այս բարեսէր, ազնուական Անձը* (*Յովհաննէս Ամիրայ Տատեան*), *շատ ատեն չէ*,

Անգլիայէն շոգեշարժ աղօրիքի մը մեքենաներ բերել տուած էր ու շինել կու տար իր մասնաւոր հաշուին Այի Ստեփանոս գիւղը: Հիմակ կը լսենք թէ աս օգտաւէտ գործառնութիւնը խիստ յաջողակ վախճան մը ունեցեր է: Քանի մը անգլիացի ու գաղղիացի մեքենագործներ յատկապէս աս աղօրիքը տեսնելու գացեր են ու շատ զարմացեր են վերոյիշեալ Յովհաննէս Աղային բազմահանճար յաջողակութեան որ առանց իրենց օգնականութեանը ի՞նչպէս կրցեր է առանկ կարգի դնել ու բանեցնել տալ» (Արշ. Արարատեան, 1841 Թ. 55):

դ. 1842ի գարնան Յովհաննէս Տատեան Պրուսա եւ Նիկոմիդիա կ'երթայ «Տէրութեան կողմանէ հոն տեղ հաստատուելու զանազան գործարաններուն հանգամանքները իմանալու» համար (Արշ. Արարատ. 1842 Թ. 83—84, Ապրիլ):

Ի՞նչ էին այդ գործարանները: — Առաջին եւ ամենակարեւորը չուխայի գործարանն էր, հիմնուած Նիկոմիդիոյ (Իզմիտ) մէջ, որուն հարկաւոր մեքենաները եւ արհեստաւոր մարդիկը բերելու համար Յովհաննէս Պէյ իր երկրորդ ճամբորդութիւնը կ'ընէ դէպի Եւրոպա: 1842 Հոկտ. 15ին Լոնդոն կը մեկնի՝ Ֆրանսական նաւով: Ահա այս մասին ժամանակակից տեղեկատուութիւնը. «Արքունի վառօդապետ Մեծ. Տատեան Յովհաննէս Աղան աս օրերս կը մեկնի ասկէց զաղ-

*գիտական շոգենաւով* Լոնտրա երթալու համար։ *Նորին Վեհափառութեան հրամանաւը, որ* չուխայի գործատան *հարկաւոր եղած մեքենաները գնէ*» (Արշ․ Արարատեան, 1842 *Թ․* 84, 107, *Հոկտ․* 9)։

*Յովհաննէս Պէյ այս երկրորդ ճամբորդութիւնը ըրած է իր* Ներսէս–խօսրով *եւ* Յարութիւն–Գարեգին *որդիներուն ընկերակցութեամբ*[4]։ *Նախ հասած է* Պարիս (8—20 *Նոյ․* 1842), *ուր* ճեմարանի *մը մէջ տեղաւորած է* Յարութիւնը՝ *ուսանելու համար* (Արշ․ Արարատ, 1844 *Թ․* 174), *յետոյ* Ներսէսը (*որ* 18 *տարեկան կար*) *հետը առնելով* Անգլիա *անցած է եւ տեղաւորած զայն* մեքենագիտական վարժարանի *մէջ, յատկապէս* Մանչեստր (Արշ․ Արարատ, *անդ*), *իսկ ինքը շրջած է Անգլիոյ զանազան քաղաքները՝ թէ՛ ուսումնասիրելու եւ թէ գնելու համար մեքենաներ ու գործիքներ՝ անցնելով նաեւ* Բեղգիա (*Բելժիկ*) (Արշ․ Արարատ․ 1844 *Թ․* 174)։

*Լոնդոնէն դեռ չդարձած՝ անկէ քանի մը անգլիացի արհեստագէտներ եւ մեքենաներ ղրկած էր*։ 1842 *Հոկտ․* 28*ին Այի–Ստեֆանոյի մէջ* Սուլթան Մէճիտ *ներկայ կ'ըլլայ նոր հա–*

---

[4] *Պոլսէն* Իզմիր *հասնելով՝ կ'այցելէ տեղւոյն* Ս․ Մեսրոպեան *վարժարանը եւ կը ստորագրէ հիւրերու յատուկ տետրին մէջ․* «1842 *Հոկտ․* 7 *Յովհաննէս Տատեան Լօնդրա ճանապարհորդութեանս ժամանակին յատկապէս եկի տեսանել դպրոցն Սրբոյ Մեսրոպայ, հանդերձ ուրախութեամբ*» (Արեւելք, Կ․ Պ․ 1899 *Թ․* 4059)։

սած մեքենաներու փորձին, զոր կը կատարեն Պօղոս Տատեան, իր որդին Առաքել եւ Յովհաննէս Պէյի մեծ որդի՝ Առաքել-Միսակ: «Բարեգութ Արքան խիստ գոհ եղաւ հայազգի գործակալներուն հաւատարիմ ու ճարտարամիտ ծառայութիւններէն», կը գրէ Արշ. Արարատեան (1842 Թ. 163):

Յովհաննէս Պէյ Տատեան դէպի Եւրոպա ըրած այս ճամբորդութենէն կը վերադառնայ Պոլիս 1844 Փետրուարին սկիզբը (Արշ. Արարատ. 1844 Թ. 177):

Նիկոմիդիոյ այս գործարանը պիտի արտադրէր տարեկան 200,000 կանգուն ազնիւ չուխա: Յովհաննէս Տատեան այդ գործարանին Ընդհանուր կառավարիչն (Նազիր) էր: Սուլթանին փափաքով կ'ապսպրէ քանի մը նոր մեքենաներ ալ, որպէս զի 200,000 կանգուն հասարակ չուխա ալ գործուի՝ զինուորներուն համար (Արշ. Արարատ, 1844 Թ. 193): Այս եկած մեքենաներով երկրորդ գործարան մը շինուած է չուխայի, որով Պէրպէրեան (Պատմ. էջ 519) որոշ կը յիշէ «գործարանացն չուխայի» բացատրութեամբ մէկէ աւելի ըլլալը գործարաններուն:

Յովհաննէս Տատեան իր այս գործունէութեանց համար արժանի եղած է ստանալու պատիւներ Սուլթան Մէճիտէն: Այդ պատիւներէն մին կը յիշէ Աւետիս Պէրպէրեան (Պատմութիւն, էջ 519), գրելով. «Հրամանաւ արքային նշան ոսկեղէն թուղրայի տուաւ

Տատեան արքունի վառօդապետաց․․․ դնել ի վերայ փէսից իւրեանց» ։ *Յովհաննէս եւ Պօղոս Տատեանք արժանի եղած են այդ պատուին* 1844 *Ապրիլին* ։

*Երկրորդ վարձատրութիւնն ալ հետեւեալն է* ․ — 1844 *Մայիս* 13*ին Սուլթան Մէճիտ այցելութիւն կու տայ* Նիկոմիդիոյ չուխայի գործարաններուն, *ուսկից կ'երթայ* Պրուսայի *հանքային բաղնիքները տեսնելու, որոնցմէ վերջ կը դառնայ Պոլիս* ։ *Այս ճամբորդութեան առթին «Ուղեկից էին արքայի եւ ի մերազնեայց* վառօդապետքն Յովհաննէս եւ Պօղոս ․․․*որոց եւ պարգեւեաց մէն մի* ադամանդեայ տուփս *ի վարձատրութիւն նոցին հաւատարիմ ծառայութեանց*» , *կը տեղեկագրէ* Պէրպէրեան (*Պատմ*․, *էջ* 519—20) ։

ե․ *Հինգերորդ գործարանը* Հէրէքէ*ի մէջ է գարձեալ, ուր հաստատուած է* քամպակի գործարան *մը, որ կը յիշուի* 1844 *Յունիսին* (Արշ․ Արարատեան, 1844 *Թ*․ 193) ։ *Հիմնումի թուականը* 1844 *է, զի* 1844 *Յունիսին* նորահաստատ *է ըստ* Արշ․ Արարատեանի (*Անդ*) ։

*Գործելու սկսած է* 1845*ին* ։ *Զի* 1846 *Նոյ*․ 1*ին կը գրէ* Արշ․ Արարատ․ (1846 *Թ*․ 271) ․ «Հէրէքէի *պատուական գործարան, որ* տարիէ մը ի վեր․ «կը բանի» ։ 1846*ին կը տեղեկագրէ իրմիրի հայաթերթը*. Հերէքէի *գործարանը «կը բանի չատ յաջողութեամբ եւ բազմատեսակ կերպասներ հանած է* քէ՛ քամ-

պակեղէն, թէ՛ բրդեղէն եւ թէ մետաքսեղէն»։ *Վարիչներն են* Յովհաննէս եւ Պօղոս Տատեանները։ 1846 *Հոկտ· 14ին կ'այցելէ* Սուլթան Աբտիւլ Մեճիտ *եւ լաւ մը դիտելէ ու քննելէ վերջ՝ «ի նշան կայսերական բարեհաճութեան մէյմէկ* ադամանդեայ մեծագին տուփ *շնորհելու հաճեցաւ* Տատեան վսեմափայլ Յօհաննէս Ամիրային եւ Պօղոս Ամիրային» (Արշ· Արարատեան, 1846 *թ*· 271· — *Հմմտ· նաեւ Անդ՝ թ*· 270)։

Արշակ Ալպօյաճեան (Արեւելք, *կ· դ*· 1909 *թ*· 7197) *կը գրէ*· «Հէրէքէի *գործարանը հիմնուած է* 1845*ին*։ *Այդ գործարանին մէջ կը պատրաստէին* փէս, փանէլա, գուլպայ, աստղի, շաեազ, գորգ եւ մետաքսէ կերպասներ»։

գ· 1844—45*ին*, *մէկ տարուան ընթացքին*, *շինուած է* Ձուլարան *մը* Այ-Ստեփանոյի վառօդարանին մօտ Ձէյթին Պուռնու *կոչուած վայրը* (Հայաստան, *կ*· *դ*· 1848 *թիւ* 94), *ուր «երկաթի կտորակները կը հալեն եւ մետաղէն երկաթ ու չելիկ շինելու համար յատուկ քանի մը փուռ շինուեր են*... *այս պզտիկ գործարանէն*[5] (*որնոր իբրեւ օրինակ շինուեցաւ երկաթի մեծ գործարանին համար*) *բաւական գործ կը կատարուի հիմա*–

[5] Ձէյթին Պուռնուի *մէջ* երկաթի գործարան *մը շինուած կ'երեւայ արդէն* 1830*էն շատ առաջ*, *որուն հիմնումի թուականը չկրցանք ստուգել*։ Պետրոս Կարապետեան*ի* (90*ամեայ Յոբելեան*, *էջ* 27) *գրածէն այնպէս կը հասկցուի թէ* 1820*ական թուականներէն է*։

*կու հիմոյ...»* (Արշ. Արարատ, 1845 *Թ.* 245, Նոյ. 2)։ Բանասէր (*էջ* 122) *կը գրէ.* «Զէյթինի Պուռնու՝ *գործարան* ձուլելոյ զեր-կաթ»։

1845 *Հոկտ. 9ին Սուլթան Մէճիտ մեծամեծներով կ'այցելէ այս փոքրիկ գործատունը եւ տեսնելով թէ «բոլորովին Անգլիոյ գործարանաց նման բարեկարգեալ է ամէն հարկաւոր մեքենաները եւ գործիքները ունենալով», «իր արքայական խնդակցութիւնը յայտներ է Տատեան Մեծ. Յովհաննէս Ամիրային». «Օգոստափառ թագաւորը ասոնք ամէնը տեսնելով՝ խիստ ուրախացեր է եւ իր արքայական գթութեանը եւ գոհունակութեանը ապացոյց մը տալու համար բարեհաճեր է* ի ներկայութեան բոլոր Նախարարաց՝ ծանրագին ադամանդեայ տուփ մը *շնորհելու* վառօդապետ Տատեան Մեծ. Յովհաննէս Ամիրային» (Արշ. Արարատեան, 1845 *Թիւ* 245)։

Է. 1845*ի ընթացքին սկիզբ եղած է շինութեան* Զէյթինի Պուռնուի երկաթի մեծ գործարանին, *որուն համար* վարպետներ *բերուած են Անգլիայէն, Ֆրանսայէն եւ Աւստրիայէն։ Ասոր* պատրաստութեան *համար էր որ շինուած էր նախապէս, ինչպէս տեսանք՝* Այ—Ստեփանոյի ձուլարանը (Արշ. Արարատեան, 1845 *Թ.* 245)։

*Այս գործարանի շինութիւնը կ'աւարտի* 1845 *Հոկտ.* 25*ին եւ այդ առթիւ կը տողէ*

Պէրպէրեան (*Պատմութիւն*, *էջ* 537) · «*Աւարտեցաւ շինութիւն* երկաթի գործարանին ի Զէյթին Պուրնի *մերձ* յԱյի Ստեփանայ, *ուր ձուլեցաւ* 26 *կանգուն լայնութեամբ միակամար երկաթի կամուրջ ինն վասն միաւորելոյ զՋրաղանի պալատն ընդ մեծ պարտիզին եւ ի տես այսր գնաց արքայ ընդ երեւելի նախարարաց եւ հաճեցեալ յոյժ, շնորհեաց* գաղամանդեայ մեծագին տուփս վառօդապետ Յովհաննէս եւ Պօղոս Ամիրայից Տատեան··· *եւ որդւոց նոցին*» :

ԵՐՐՈՐԴ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆԸ ԵՒՐՈՊԱ

1847*ին սկիզբը Յովհաննէս Տատեան Թուրք պետութեան* արքունի վառօդապետը եւ արքունի բոլոր գործատանց վերատեսուչն է (Արշ· Արարատեան, 1847 *Թ*· 280) :

1847 *Փետրուարին* երրորդ անգամ *ըլլալով դէպի Եւրոպա ճամբորդութիւն մը կ'ընէ : Պոլսէն մեկնելէ առաջ իր* Առաքել–Սիսակ *եւ* Ներսէս–խոսրով *որդիներուն հետ պատիւ կ'ունենայ ներկայանալու Սուլթան Ապտիւլ Մէճիտի*, «*որ երկար ժամանակ կը խօսակցի Յովհաննէս Ամիրային հետ իւր պաշտօնին վերաբերեալ գործոց վրայ*» (Արշ· Արարատեան, *անդ*) :

*Այս ճամբորդութեան* նպատակի *մասին կը գրէ Թերթը* · «···*ի հաշիւ Օսմ· կառավարութեանը* զանազան գործիքներ եւ մեքենաներ ծախու առնելու *եւ ուրիշ* նորանոր կար–

զաղրութիւններ ի գործ դնելու արհուեստական գործատանց հարկաւորութեանը համար» (*Անդ*) ։

Պէրպէրեան (*Պատմ*․, *էջ* 551) *եւս չունի մանրամասնութիւն, այլ լոկ սա՝ որ «Տատեան Յովհաննէս Ամիրայն արքունի հրամանաւ ճանապարհորդեաց, յԵւրոպա գնաց առնուլ* գործիս եւ զմեքենայս արքունի գործատանց» ։

*Կարեւոր ծանօթութիւն կու տայ սակայն* Եւրոպա, *որ կը հաղորդէ*․ «*Օսմ*․ *տէրութիւն ու մեծափառ Սուլդանը՝* Տատեան քարձրապատիւ Յովհաննէս Ամիրային *երկայն ժամանակէ ի վեր բարձր պաշտօնին մէջ ցուցած հաւատարմութենէն, ճարտարութենէն ու իմաստութենէն վրան մեծ համարում տացած ըլլալով՝ տէրութեան զանազան գործատուններն իր հօգաբարձութեան յանձնած է, ինչպէս արդէն ամէնուն ծանօթ է ։ Նոյնպէս ամէնուն յայտնի է որ այս* հոյակապ անձը ․․․ սա գործատուններուն յառաջադիմութեան *եւ ուրիշ* նորէն հաստատուելիքներուն հարկաւոր եղած մեքենաները հոգալու ու զանազան արուեստաւորներ գտնելու համար *տէրութեան կողմանէ Եւրոպա խաւրուած է* ․․․ *սոնցմէ զատ իրեն յանձնուած է որ զանազան* աստղաբաշխական ու բնաքանական գործիքներ հոգայ» (Եւրոպա, *Վիեննա* 1848 *Թ*․ 1, *Յունուար* [23 *Դեկտ*․ 1847]) ։

*Յովհաննէս Պէյ Պոլսէն ճամբայ կ՚ելլէ*

*Ֆրանսական շոգենաւով* 1847 *Փետրուար* 23*ին։ Իրեն ընկերակից են երկու զաւակները* — Յարութիւն-Գաբրիէլն *եւ* Գրիգոր-Միհրանն։ *Կը հասնի* Ֆրանսա, *ուր վարժարանի մը մէջ կը տեղաւորէ* Գրիգոր-Միհրանը, *յետոյ կ՚անցնի* Անգլիա, Աւստրիա, Բելգիա «*եւ* ուրիշ երեւելի տէրութեանց մէջ *իրեն յանձնուած պաշտօնը կատարելու*» *համար* (Եւրոպա, *անդ*)։ Եւրոպա (*անդ*) *կը շեշտէ որ «սա ճամբորդութեան մէջ, Յովհաննէս Տատեան*, երկու անգամ ալ Վիեննա մայրաքաղաքն եկաւ. *վերջին անգամ անցած ամսուան* (1847 *Նոյեմբերին*) *մէջերը հոս հասաւ ու նոյն ամսոյն* 23*ին նորէն* Փարիզ *գնաց, ուր որ քիչ մը ժամանակ կենալէն ետեւ՝ Կոստանդնուպոլիս պիտի դառնայ։ Աս վերջին անգամուան սա տեղս ուրիշ արուեստական մեքենաներէն զատ՝ զանազան* աստղաբաշխական գործիքներ *ալ որոշեց, որոնց մէջ շատ երեւելի է* մեծ դիտակ մը, *այն որ բոլոր Եւրոպայի մէջ մեծ անուն ունեցող ու տեսաբանական գործիք շինելու մէջ գրեթէ հաւասարը չունեցող* Փլեսլ *անուն ճարտարը կը շինէ։ Աս դիտակին առարկայական ապակւոյն* (verre objectif) *տրամագծին մեծութիւնը* 10½ *մատնաչափ է. ուստի եւ կրնանք ըսել որ այսպիսի մեծութեամբ դիտակ մը Եւրոպայի դիտարաններուն մէջն ալ քիչ տեղ կը գտնուի։ Միանգամայն այնպիսի ճարտար կերպով շինուած է որ աստղ մը*

*դիտելու տեղն՝* անոր հետ մէկտեղ կը քալէ ու երբեք չկորսնցըներ։ *Արդէն ըստ ինքեան յայտնի է որ այսպիսի հոյակապ անձի մը Եւրոպայի մէջ ճամբորդութիւն ընելը՝ ազգին ո՛րչափ օգտակար բան է, գլխաւորաբար անո՛վ որ* բոլոր հետը տեսնուող մեծամեծ մարդիկներուն առջեւը՝ իր քաղցր, ազնուական ու իմաստուն վարմունքովը ազգին համարումը պէտք է որ մեծցուցած ըլլայ...» (Եւրոպա, անդ)։

*Յովհաննէս Պէյի այս ճամբորդութիւնը կը տեւէ մէկ տարի. կը վերադառնայ Գարեգին–Յարութիւն դուկին հետ* 1848 *Յունուար* 29*ին* (Պէրպէրեան, *Պատմ.*, *էջ* 557)։

*Յովհաննէս Տատեան իր այս կրկնակի ճամբորդութիւններու ընթացքին շատ կը գնահատուի եւ ամէն տեղ բարեկամներ ու համակիրներ կը գտնէ եւրոպական շրջանակներու մէջ։ Շատ յօդուածներ եւ գրուածքներ կը գրուին իր մասին մանաւորապէս* Պարիսի *թերթերու մէջ։ Պարիսի* Քաջալերութեան Ընկերութիւնը (Société d'Encouragement) *զինքը պատուոյ անդամ կ'ընտրէ. Լոնդոնի եւ Էդինբուրգի* Ճարտարութեանց Բարգաւաճման Ընկերութիւնները *եւ Պարիսի* Արեւելեան Ընկերութիւնը *իրենց պատիւ կը համարին զինքը անդամ գրելու* (Ընդարձակ Տարեցոյց, *Կ. Պ.* 1900, *էջ* 146)։

1847*ին Անգլիոյ* Մոռնինգ Կրոնիկլ *թերթը խօսելով Օսմանեան տէրութեան մէջ* գոր–

ծառուններու *օրէ օր բազմանալն ու յառաջ-դիմելը՝ կը գրէ տեսակ մը* նախանձով եւ դժկամակութեամբ *Ազգիս Հանդէպ· «թէ որ աս գործատունները* Հայոց Հոգաբարձու-թեան տակն են, ան ատեն պէտք է որ վախ-նանք» (Եւրոպա, *Վիեննա* 1847, 23 *Դեկ-տեմբեր*) :

ՊԵՏԱԿԱՆ ԱՆՁԸ

*Թուրք կայսերական կառավարութիւնը գնահատելով Յովհաննէս Տատեանի երկար-ժամանակեայ հաւատարիմ ծառայութիւնը եւ անգնահատելի արդիւնքը Թուրք պետական զարգացումին մէջ, բայց մանաւանդ անոր անժխտելի բարձր կարողութիւններն ու փորձառութիւնները՝ զինքը կը բարձրացնէ* պետական գերագոյն Վարչական Մարմին-ներու անդամակցութեան, *դարձնելով զինքը* թուրք պետական անձ :

1· 1856 *Մայիսին Յովհաննէս Տատեան անդամ կ'ընտրուի* Արդարութեան Բարձրա-գոյն Ատեանին (Ահքեամը Ադլիէ) (Մասիս, *Կ· Պ·* 1856 *Թ·* 224, *Մայիս* 10) :

2· Արեւելեան պատերազմի (1853—56) *Արեւմտեան ճակատի ընդհանուր սպարա-պետը՝* Պելիսիէ Մարաջախտը *Պոլիս կը գտնուի* 1856*ին : Թուրք պետութիւնը ամէն պատիւ ու հիւրասիրութիւն կը շռայլէ : Մա-րաջախտը Ֆրանսայէն* ծանօթ եւ բարեկամ է

Տատեան Յովհաննէսի : Կիրակի մը այցելութիւն կու տայ Յովհաննէս Տատեանի տան ու ճաշով կը հիւրասիրուի : Օրուան հայ թերթը կը տեղեկագրէ . «Կիրակի օր Մարաջախտը՝ Մարթէնրոէ զօրապետին եւ ուրիշ չորս գլխաւոր զինուորական պաշտօնականներու հետ Պէշիկթաշ գնաց Արքունի վառօդապետ Մեծապատիւ Տատեան Յօհաննէս Ամիրային տունը եւ ցորեկեան ճաշը հոն կերաւ : Մարաջախտին հայրը ժամանակաւ Գաղղիոյ գլխաւոր Վառօդարաններու մէկուն Տնօրէնն ըլլալով, Մեծ. Յօհաննէս Ամիրան Գաղղիա ճամբորդութիւն ըրած ատեն, առիթ ունեցեր է հետը բարեկամանալու եւ իր աղնուաշուք որդիքը անոր քով վարժութեան դնելով՝ սերտ բարեկամութիւն մը հաստատուեր է մէջերնին : Մեծ. Յօհաննէս Ամիրան արժանաւոր ընդունելութեամբ մեծարեց իւր բարձրաստիճան բարեկամը» (Մասիս, 1856 թիւ 232·), իսկ Պէրպէրեան (Պատմ., էջ 600–601) կը գրէ · «Բէլիսիէ Մարաջախտ Սպարապետն դաշնակից զօրաց եկն ի Կ. Պոլիս եւ պատիւ մեծ հանդերձ ադամանդեայ ոսկի չքանչանաւ ընկալեալ յԱրքայէ եւ յերեւելի պաշտօնականաց, բարեհաճեցաւ ի յաջորդ աւուրն ի տան Տատեան Յովհաննէս Պէյի գնալ ի հացկերոյթ՝ վաղածանօթ բարեկամ գոլով նմին· այս մեծ պատիւ էր, զոր արար Գաղղիացի Մարէշալն Հայազգի Պարոնին» : — Յովհաննէս Տատեան, բացի բարեկամական կապէն՝

*հոս* իբրեւ պետական բարձրաստիճան անձ *կը ներկայանայ իր հիւրասիրութեան մէջ պատուելով* Թուրք Պետութեան Բարձրաստիճան հիւրը :

3· 1856*ը վարձատրութեան տարեշրջանն* է Տատեան Տան, *որուն երկու Ազգատոհմերու Գլուխները* –Յովհաննէս եւ Պօղոս– *Սուլթան Մէճիտ կայսեր կողմէ* Պէյութեան պատուաստիճանին *կը բարձրացուին* իրենց ամբողջ սերունդին ժառանգական տիտղոսն ըլլալով այդ : *Օրուան թերթը կը տողէ հրճուագին*·

«Կայսերական հրամանաւ Ազատոլբի կայսերական վառօդարանի Տնօրէն Մեծ· Տատեան Յօհաննէս Ամիրան Առաջին աստիճանի երկրորդ կարգի պաշտօնատար անուանուեցաւ Պէյութեան պատուանունով» (Մասիս, Կ· Պ· 1856 Թ· 254, *Դեկտ*· 5) : *Միեւնոյնը կը տրուի նաեւ Պօղոսի, որուն վրայ յետոյ* :

Յովհաննէս Պէյ Տատեան *այդ առթիւ կը ստանայ* Ուլայ Նսըֆը (սընըֆը) *սանի պատուաստիճանը* (Բանասէր, *անդ*՝ *էջ* 122) :

4· *Կայսրը*՝ Սուլթան Ապտիւլ Մէճիտ *իր կայսերական հաճութեան նոր ապացոյց մը տալով* 1857 *Ապրիլին Յովհաննէս Պէյ Տատեանը անդամ կ'անուանէ Թուրք* Հանրային Կրթութեան Ժողովին (Մէճլիսը Մէարիֆ), *որ* Կրթական Նախարարութեան *պաշտօնը վարող ժողովն էր* : Մասիս (1857 *Թ*· 272, *Ապրիլ* 11) *կը գրէ*·

«Արքունի Վառօդապետ Տատեան Վսեմաշուք Յօհաննէս Պէյը Հասարակաց Կրթութեան ժողովին անդամ անուանեցաւ» : ( Տէ'ս ամբողջ կազմը՝ Արշ․ Արարատեան, 1857 Թ․ 540, Ապրիլ 19) :

## ԱԶԳԱՅԻՆ ԳՈՐԾԻՉԸ

1․ 1847 Մայիսին սկիզբը Սուլթան Մէճիտի հրովարտակով Ազգին մէջ երկու կարեւոր ժողով կը կազմուի․ մին աշխարհական, միւսը կրօնական : Աշխարհական ժողովը, որ 20 անդամներէ կը բաղկանար՝ կը կազմուէր սարաֆներէն եւ էսնաֆներէն․ այսինքն՝ ազգին մէջ աչքի զարնող ամէնէն երեւելի ու ականաւոր անձերէն : Աշխարհական ժողովը Ազգին Գերագոյն ժողովն էր՝ իրեն Նախագահ ունենալով օրուան Պատրիարքը :

Արդ, առաջին Ազգային այս երկու ժողովները ընտրելու համար 1847 Մայիս 9ին Ընդհ․ Ազգային ժողովք կը գումարուի Պատրիարքական Մայր Եկեղեցիին մէջ : Այս ժողովքի մէջ ընտրուած Ազգային Գերագ–ն ժողովի 20 անդամներու մէջ առաջին ընտրելին եղած է Յովհաննէս Պէյ Տատեան եւ առաջին գծի վրայ կը գտնուին Տատեան Գերդաստանի երկու Տոհմապետները՝ Յովհաննէս եւ Պօղոս : Ահա՛ ամբողջական ցանկը այդ պատմական ժողովքի կազմին․

Արքունի վառօդապետ Գէր. Յովհաննէս Ամիրայ

Արքունի վառօդապետ Գէր. Պօղոս Ամիրայ

*Արքունի ճարտարապետ Գէր. Կարապետ Ամիրայ*

*Արքունի ճարտարապետ Գէր. Յովհաննէս Ամիրայ*

*Միքայէլ Ամիրայ Փիշմիշեան*

*Մաքսուտ Ամիրայ Սարիմեան*

*Միսաք Ամիրայ Միսաքեան*

*Մկրտիչ Ամիրայ Ճեզայիրլեան*

*Գէորգ Ամիրայ Երամեան*

*Յովհաննէս Աղա Եղիաչէլէպեան*

*Աստուածատուր Աղա Սարաֆեան*

*Յովհաննէս Աղա Զօպանեան*

*Թումաճան Աղա Մարտիրոսեան*

*Յովհաննէս Աղա Սուրէնեան*

*Քերովբէ Աղա Պաչպազիրկեանեան*

*Քըլըճճի Սարգիս Աղա*

*Գրիգոր Աղա Թիւյսիւզեան*

*Կարապետ Աղա Տէր Գրիգորեան*

*Սահակ Աղա Քիւչիւկ Յակոբեան*

*Լօղօֆէթ Յակոբ Աղա Կըռճիկեան* (Հայաստան, *Կ. Պ.* 1847 *Թ.* 47 *եւ* 50)։

*Յովհաննէս Պէյ Տատեան այս ընտրութենէն վերջ «իր ընկերներուն հետ լաւագոյն կերպով վարած է Ազգին գործերը լուսամիտ ու հեռատես աչալրջութեամբ, ինչ որ* իր ազգային գործունէութեան փառքը կը կազմէն» (Պետրոս Կարապետեան, 90*ամեայ Յոբելե–*

նական Ցիշատակարան Պագըրքէօյի Ս. Աստուածածին եկեղեցւոյ եւ Տատեան Վարժարանի. Կ. Պ. 1934, էջ 31):

2. Ազգը գիտցած է օգտուիլ իր բացառիկ կարողութիւններէն՝ 1855 Յունիսին ալ ընտրելով զինքը անդամ Ազգային Գերագոյն Ժողովին (Տե՛ս Մասիս, 1855 Թ. 180):

3. «Երեքշաբթի (24 Մայիս 1860) օրը հայկ. տարեգրութեանց մէջ ոսկեղէն տառերով նշանակելու արժանի օր մըն էր: Ազգին բարեկարգութեան, անդորրութեան եւ յառաջադիմութեան միակ միջոց ճանչցըւած Ազգային Սահմանադրութիւնն ընդունւեցաւ ու ստորագրեցաւ», կը գրէ Պոլսոյ Մասիս թերթը (Կ. Պ. 1860 Թ. 433):

1860ի Ազգային Սահմանադրութեան հիմնադիրներէն մին է Յովհաննէս Պէյ Տատեան, որ Ընդհ. Ժողովէն ընտրուած անդրանիկ Քաղաքական Ժողովին 12 անդամներէն մին է ինքը (Տե՛ս Մասիս Կ. Պ. 1860 Թ. 433):

4. Յովհաննէս Պէյ Տատեանի ազգասիրական ոգին եւ աշխոյժ գործունէութիւնը բարձր գնահատելով՝ Ներսէս Աշտարակեցի Կաթողիկոս (1770—1857) յաճախակի թղթակցած է հետը եւ զինքը կը կոչէ «Արժանադրուատ Յովհաննէս Ամիրայ Տատեան» (Թ. Ազատեան, «Մշակոյթ» ազգագրական Տարեգիրք, Կ. Պ. 1948, էջ 32):

Մինչեւ իր մահը — 1869 — Ազգին



Յովհաննէս Ամիրայ
(1860ին)

*ծառայած է Յովհաննէս Պէյ ճշմարիտ անձնուէր ազգասիրութեամբ մը:*

ԱԶԳԱՅԻՆ ԱՆԶՈՒԳԱԿԱՆ ԲԱՐԵՐԱՐԸ

*Քիչերուն ծանօթ եղած է եւ այն ոչ կատարեալ ծանօթութեամբ* Յովհաննէս Պէյ Տատեանի *ազգասիրական ոգին եւ այդ չնաշխարհիկ ոգիին թելադրութեամբը անոր* Ազգին բաշխած անթիւ բարիքներն ու բարերարութիւնները: *Մենք պիտի թուենք այդ բարիքները միայն, որքան կրցանք հաւաքել ու երեւան բերել: Ասկէ ինքնին պիտի համոզուի ամէն ընթերցող թէ իսկապէս* Ազգային անզուգական բարերար *մ'եղած է* Յովհաննէս Պէյ Տատեան՝ *գրեթէ իրեն հաւասար մը չունենալով այս մարզին մէջ: Յովհաննէս Պէյի բարերարական գործերը գլխաւորաբար երեք գլխաւոր ուղղութեամբ կամ մարզերու մէջ եղած են. Ա.* Եկեղեցաշինութեան մէջ, *Բ.* Կրթական Գործի մէջ *եւ* Գ. Հայ Մշակոյթի գետնի վրայ: *Տալու համար սակայն ամբողջական պատկերը* Յովհաննէս Պէյ Ազգային Բարերարին՝ *մենք նպատակայարմար կը համարինք* ժամանակագրական *իրողութիւններու թուումը:*

1. *Յովհաննէս Պէյի առաջին ազգային հրապարակային բարեգործութիւնը կրնանք նկատել հետեւեալը, զոր յիշատակած է* Պետրոս Կարապետեան՝ *անշուշտ հին աղբիւրներէ օգտուելով, զորոնք չէ յիշած դժբախտաբար:*

Զէյթին Պուռնուի հին երկաթի գործարանին եւ վառօդարանի մէջ աշխատող հայ գործաւորները, մեծ մասամբ բնակիչ Մաֆրիֆէօյի (Պագրքէօյ), դիմում կ'ընեն Յովհաննէս Տատեանի որ եկեղեցիի մը պէտք ունին իրենց կրօնական պարտականութիւնները կատարելու համար: Յովհաննէս Տատեան սիրով ընդառաջ կ'ելլէ այդ խնդրանքին եւ դիմելով Սուլթան Մահմուտ Բ.ի՝ թոյլտուութիւն կը ստանայ եկեղեցիի մը շինութեան Մաքրիգիւղի մէջ: Տեղւոյն Յոյները լսելով Յովհաննէս Տատեանի ձեռնարկի մասին՝ սիրայօժար կերպով անոր տրամադրութեան տակ կը դնեն իրենց մէկ վանքը՝ իբրեւ շինութեան հող: Ասիկա տեղի կ'ունենայ 1831ին: Յովհաննէս Տատեան շնորհակալութեամբ կ'ընդունի Յոյներու այդ ազնիւ շարժումը եւ իր ջանքերով այդ յոյն վանքը կը վերածուի Հայ եկեղեցիի մը, որ կը կոչուի Ս. Սարգիս: Շինութիւնը տեղի ունեցած կ'երեւայ 1832ին: — Յովհաննէս Տատեան զգածուած Յոյներու այդ բացառիկ ազնուութենէն՝ կը խորհի փոխարինութեան մը վրայ: Ճիշդ նոյն միջոցին Յոյները իրենք ալ եկեղեցիի մը շինութեան պէտքը կը զգան ուրիշ վայրի մը մէջ: Յովհաննէս Տատեան ոչ միայն անոնց կառուցանելի եկեղեցիին գետինը կը նուիրէ՝ այլ եւ շինութեան ծախքին մեծ մասն ալ իր վրայ կ'առնէ: Յոյները՝ ի նշան երախտագիտութեան՝ այդ իրենց եկեղեցիին ճակատը կը դրոշմեն Յովհաննէս

Տատեանի անունը (Պետրոս Կարապետեան, *90ամեայ Յոբելենական Յիշատակարան Պագըրքէօյի Ս․ Աստուածածին եկեղեցւոյ եւ Տատեան Վարժարանի․ Կ․ Պ․* 1934, *էջ* 27—29)։

1833*ին Յովհաննէս Ամիրայ* 500 *ոչխար ունէր։ Կը վարձէ ագարակ մը* Այեօրկի (Ազատլը) *ի մէջ․ կ'ունենայ արտեր․ կը ցանէ զանազան արմտիք*։ «Եկեղեցիի ճշխարհի *համար յատուկ արտ մը որոշեց, մաքուր ցորեն ցանեց․․․ յատուկ կալ ընել տուաւ, մաքրեց ու այնպէս* ցորենը ընծայեց եկեղեցւոյ․․․» (*Օրագրութիւն*, *էջ* 54—55)։

2․ 1844 *Ապրիլ 7ին Յովհաննէս Պէյ Մաքրիգիւղի մէջ կը կառուցանէ իր ծախքով սիրուն եկեղեցի մը* յանուն Ծննդեան Ս․ Աստուածածնայ, *որ կ'ունենայ ստ արձանագրութիւնը*․

«Կառուցաւ յանուն Ծննդեան Ս․ Աստուածածնայ եկեղեցիս արդեամբ Տատեան Ազնուազարմ Յովհաննէս Պէյի յամի Տեառն 1844 Ապրիլ 7» (*Ընդարձակ Օրացոյց*, 1900, *էջ* 174։

*Կրթասէր Բարերարը ամբողջացնելով իր ազգային բարեգործութիւնը՝* 1844*ին եկեղեցւոյ շրջապատին մէջ կը բարձրացնէ փայտաշէն* դպրոց *մ'ալ, զոր կը կոչէ իր նախահայրերու անունով* «Արծրունեան դպրոց»։ *Թէ՛ եկեղեցիին եւ թէ դպրոցին տեւականութիւնը ապահովելու համար Յովհաննէս Պէյ նիւթական զոհողութիւններ կ'ընէ եւ իր յանձա–*

խակի այցելութիւններով կը քաջալերէ քահանան ու վարժապետը : Իբրեւ մշտնջենաւոր եկամուտ՝ կը կտակէ երկու տուն եւ մէկ խանութ : Մինչեւ իր մահը (1869) կը յանձանձէ ու կը գուրգուրայ իր այդ իւրակերտ հաստատութիւններուն վրայ : Իր մահէն վերջ՝ որդին Առաքել Պէյ կը շարունակէ հոգալ ու հսկել եկեղեցւոյն ու դպրոցին վրայ՝ ընելով նաեւ կրթական կտակ մը : Առաքել Պէյի մահէն վերջ՝ իր եղբայրը՝ Յարութիւն Փաշա Տատեան ստանձնած է վերին հսկողութիւնը՝ մատակարարութիւնը յանձնելով իր քեռորդւոյն՝ Էլիաս Պէյ Ձայեանի :

1887ին Առաքել Պէյ Տատեանի կրթական կտակով եկեղեցւոյ յարակից գետնին վրայ քարաշէն վարժարան մը կը կառուցուի օժանդակութեամբ Մաքրիգիւղի ժողովուրդին եւ վարժարանը կը յորջորջուի «Տատեան Երկսեռ Վարժարան» : Պետրոս Կարապետեանի յիշեալ երկին (էջ 28) մէջ ներկայացուած է Մաքրիգիւղի (ներկայիս՝ Պագըրգիւղ) Ծնունդ Ս. Աստուածածին եկեղեցին եւ Տատեան Վարժարանը :

Հիմնադիր-Բարերար Յովհաննէս Պէյ Տատեանի այս երկու կոթողները — եկեղեցի եւ վարժարան — կանգուն են ներկայիս ալ պատմելու համար սերունդէ սերունդ Հայ Մեծագործ Ազգային Բարերարին՝ Յովհաննէս Պէյ Տատեանի անմոռաց յիշատակը :

Այս տարի — 1963 Փետրուար — Մաքրիգիւղ — Պագըրգիւղի Տատեան վարժա-

րանը Միջնակարգ վարժարան մըն է, ունի 449 երկսեռ աշակերտ, Տնօրէնն է Տօքթ. Գաբրիէլ Պասմաճեան, իր օգնականը եւ երկար ժամանակեայ Տնօրէնուհի Նախակրթա-



Մաքրիգիւղի Եկեղեցին եւ Տատեան Վարժարանը
Հիմնադիր՝ Յովհաննէս Ամիրայ Տատեան

րանին՝ Օր. Էլիզ Մանաս, բոլոր ուսուցիչներու թիւն է՝ 25. շէնքը անբաւարար է ներ-

կայ աշակերտութեան եւ դասարաններու բազմացման պատճառաւ (Տե՛ս մանրամասն՝ Նոր Դար, Կ. Պ. 1963 Թ. 15 Փետր. 4) :

3. Վերը տեսանք թէ Ազատլըի (Այեօրկի) վարժարանը ո՛րքան հին է, ուր Տատ Առաքելի ժամանակէն սկսած շատ մը Հայեր իրենց մնայուն աշխատանք գտած ըլլալով՝ հետզհետէ եկած հաստատուած էին ընտանիքով ու աճած բազմացած : Յովհաննէս Պէյ Տատեան, ի յիշատակ իր հօր Տատ Առաքել Ամիրայի՝ Ազատլըի աշխատաւոր հայ ժողովուրդին համար 1835 Յուլիս 28ին Ս. Աստուածածին անունով գեղեցիկ եկեղեցի մը կը կառուցանէ, որ երկար տարիներ կանգուն կը մնայ շնորհիւ Բարերարին խնամոտ հոգածութեան : 1913ին կը գրէ Թորգոմեան. «Այս եկեղեցին սեպհական ըլլալով Տատեան Յովհաննէս Պէյի Գերդաստանին՝ կը մատակարարուի անոր թոռան Տրդատ Պէյ Տատեանի մասնաւոր հոգածութեամբն ու ծախքով : Ազատլըի եկեղեցին ունի նաեւ իր քով դպրոց մը Տատեան անուն, ուր կը յաճախեն գիւղին մէջ գտնուած հայ բնակիչներու տղաքը» (Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն, Ա. Վիեննա 1913, էջ 409) :

Աւելցնենք նաեւ որ Ազատլըի (Այեօրկի) Յոյներուն համար ալ եկեղեցի մը շինած է Յովհաննէս Պէյ Տատեան, «ուր ցայսօր Հիմնադրին անուան տարեդարձին յատուկ պատարագ ու հոգեհանգիստ կը մատուցուի,

*որուն ի պաշտօնէ ներկայ կը գտնուի տեղւոյն մեր եկեղեցիին աւագերէց քահանան»*, *կը գրէ* Պետրոս Կարապետեան (*Անդ*, *էջ* 27)։

4. Զմիւռնիոյ *մէջ հիմնուած ամենահին Մշակութային Ընկերութիւնն է* «Միւնեաց Ընկերութիւն»*ը* (*հիմնուած* 1841*ին*), *որուն նպատակն էր* հայ կրթական գործին նպաստել *սկսելով տեղւոյն* Ս. Մեսրոպեան *վարժարանէն, ապահովելով լաւ ուսուցիչներ, հոգալով աշխարհագրական քարտէսներ, նուիրելով Ֆիզիքական գործիքներ, եւ այլն։ Ընկերութեան տարեկան բաժանորդագինն էր* 50 *ղուրուշ*։

*Արդ, Պոլսոյ* Տատեան Տունը 15 *բաժանորդագին վճարելով՝ կ՚անդամակցի Ընկերութեան՝ քաջալերելու համար զայն։ Իսկ* Յովհաննէս Տատեան 15,000 *ղուրուշի գործիքներ կը նուիրէ Ընկերութեան՝ անոր կըրթական ծրագրին օժանդակելու համար։ Այս առթիւ կը տողէ օրուան հայ թերթը.*

*«Յօժարամիտ սրտիւ կ՚արտորանք ծանուցանել ուսումնասէր հասարակութեանը թէ* Արքունի Վառօդապետ Մեծապատիւ Տատեանց Յովհաննէս Աղան *տասնեւհինգ հազար ղուրուշի չափ արժողութեամբ զանազան մաթեմաթիգական ազնիւ գործիքներ աւանդեց* ի նուէր Միւնեաց Ընկերութեանը... *Յիշեալ բարերար Աղային ազգասիրական երախտիքը ու մարդասիրութիւնները չունին կարօտութիւն մեր տկար գովութեանը*, որովհետեւ ամմէնուն ալ յայտնի է.

*ուստի կը մնայ միայն մեզի աղաչել հրապարակաւ նորին բարեխնամ Ազնուութիւնը որ հաճի ընդունել մեր սրտի խորին երախտագիտութիւնը, որնոր կը պարտաւորինք մատուցանել անոր* Իզմիրու բոլոր Հայոց ազգին կողմանէ» (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1842 *թ*. 93. *տե՛ս նաեւ* 1841 *թ*. 38 *եւ* 59) :

5. 1841*ին ձեռնարկուած* խաղախորդարանի գործարանին *յաջող ելքը տեսանք վերը, որուն մէջ* Յովհաննէս Պէյի *զետեղած գործիքներով ու մեքենաներով գործարանը կը բանեցուի* 1842*ին եւ գոհացուցիչ արդիւնք ձեռք կը բերուի*: 1842 *Յուլիս* 24*ին* Սուլթան Ապտիւլ Մէճիտ Կայսրը *անձամբ կ՚երթայ քննել նորաշէն գործարանը, որմէ շատ գոհ կը մնայ: Յովհաննէս Պէյ տեսնելով Սուլթանին գոհունակութիւնը իր աշխատանքէն՝ Ալի Նէճիպ Փաշայի միջնորդութեամբ* Մեծ Եպարքոս Րիզա Փաշայի *կը դիմէ՝ խնդրելով որ* Ս. Փրկչի Հիւանդանոցին օրական 15 օխա միսի պետական պարէն մը կապուի: *Րիզա Փաշա այս խնդրանքը կը ներկայացնէ Սուլթան Մէճիտին, որ կը հաւանի եւ կը հրամայէ որ* նոյն օրէն սկսած այդ պարէնը յատկացուի Ազգ. Հիւանդանոցին: «*Կայսերական այս շնորհը մեծ ուրախութիւն պատճառեց ազգին*», *կը գրէ* Հրանտ Ասատուր (*Ընդարձակ Օրացոյց*, 1900, *էջ* 146–7. *Նոյն*՝ 1901, *էջ* 216) :

6․ 1844 *Նոյեմբերին կազմուած ազգային ժողով մը Նախագահութեամբ* Մատթէոս Զուխաճեան Պատրիարքի (1844–1848) *եւ բոլոր Ազգապետ Ամիրաներու կը խորհի «զգուշաւոր պաշտպանութեամբ բարեկարգ պայծառութեան մէջ ծաղկեցնել* Ս․ Փրկիչ Ազգ․ Հիւանդանոցը» *եւ բոլորին խնդրանքով այդ պաշտպանութիւնը կը յանձնեն* «Ազնուազարմ եւ Ողորմածասիրտ Տատեանց Յովհաննէս եւ Պօղոս Ամիրայից, *որպէս զի աղքատաց վրայ ունեցած առատ բարեգթութիւննին արեգակի պէս պայծառափայլի*» (Արշ․ Արարատեան, 1844 *թ․* 220)։

*Յովհաննէս եւ Պօղոս Տատեաններ սիրայօժար յանձն կ՚առնեն, այդ օրէն սկսած,* վերատեսչութիւնը Ազգ․ Հիւանդանոցին (*Տե՛ս անդ մանրամասնօրէն*)։

7․ *Յովհաննէս Պէյ Եւրոպա ըրած երկրորդ ճամբորդութենէն վերջ, որուն միջոցին պատիւ ունեցած էր ներկայանալու Ֆրանսայի Թագաւոր* Լուի Ֆիլիփի, 1844*ին սկիզբները Կ․ Պոլիս վերադարձած էր։ Այդ միջոցին Իզմիրի* չուխայի գործարանն *է մասնաւոր ուշադրութեան առարկան։ Յովհաննէս Պէյ հարկ եղած մեքենաները բերած էր Եւրոպայէն։ Շէնքը՝ որուն ճարտարապետն էր Կարապետ Ամիրա Պալեան՝ աւարտելով՝ Յովհաննէս Պէյ իսկոյն փութացած էր մեքենաները զետեղել տալ հոն եւ չուխայի արտադրութիւնն սկսած էր։ Սուլթան Մէճիտ* 1845 *Ապրիլ 8ին այցելե–*

*լով Իզմիրի գործարանը՝ շատ գոհ մնացած էր տեսած արդիւնքէն եւ իր բարձր գոհունակութիւնը անձամբ յայտնած էր Յովհաննէս Պէյին: Նոյն իրիկունը Իզմիրի մէջ Յովհաննէս Պէյ, Կարապետ Ամիրայ Պալեան եւ Պօղոս Պէյ Տատեան Մեծ Եպարքոս Րիզա Փաշային միջոցաւ դիմում կ՚ընեն Սուլթան Մէճիտին խնդրելով որ* պետական հացի պարէն մը յատկացնէ Ազգ· Հիւանդանոցին: *Հետեւեալ օրը, Ապրիլ 9ին Սուլթան Մէճիտ կայսրը կը բարեհաճի հրամայել որ* օրական 37½ օխա հացի պետական պարէն յատկացուի Ազգ· Հիւանդանոցին: *Ազգին կողմէ Աստուածատուր Պատրիարք շնորհակալութիւն կը մատուցանէ բարեացապարտ ինքնակալին* (*Ընդ· Օրացոյց·* 1900, *էջ* 147):

Պէրպէրեան *կը գրէ* 1845 *Ապրիլ* 14*ին*·

«*Սուլթան Մէճիտ գնաց ի Նիկոմիդա յայցելութիւն գործարանացն չուխայի եւ մետաքսի եւ հաւանեալ յոյժ, կոչեաց զՎե*-րատեսուչ *Նորին* Յովհաննէս Տատեան *եւ ասէ ցնա*· խնդրեա՛ յինէն եւ տաց քեզ: *Եւ նա խնդրեաց* զհացագին Հիւանդանոցին Հայոց *եւ հրամանաւ արքային* կապեցաւ Հացագին յաւուրն 100 դահեկան *ի գանձէ արքային*» (*Աւետիս Պէրպէրեան, Պատմութիւն Հայոց, էջ* 526–7):

8· 1845 *Յուլիս* 14*ին կը գրէ Իզմիրի հայաթերթը*· «Վսեմաշուք վառօդապետ եւ արքունի գործարանաց հոգաբարձու Պերճապատիւ Յօհաննէս Ամիրայն Տատեան՝ *իր*

*ազգասիրական խնամքը ամէն տեղ կը ցուցընէ, մանաւանդ* ուսմանց *վրայօք*: Ատաբազար գիւղաքաղաքին *կցորդ* Սապանճա, Ֆիրիզլի, Դամլըխ *եւ* Նոր գեղ *ըսուած հայաբնակ գիւղերը դպրատուններ (դպրոց) չըլլալով կամ անխնամ մնացած ըլլալով՝* յիշեալ պերճապատիւ Ամիրայն հրամանն կ'ընէ որ դպրատունն չեղած տեղը (Նոր գեղ) մէկ դպրատուն մը շինուի եւ թէ հոն թէ միւս գիւղերը տղայոց գոնէ պարզ կարդալ գրել սորվեցունելու բաւականութիւն ունեցող վարժապետ դրվի: Շինութեան ծախքը եւ Նոր գեղի եւ Դամլըխի եւ Սապանճայի վարժապետներուն վարձքը եւ Ֆէրիզլիի դպրատանն ալ տարուէ տարի բաւական ստակ տալ խոստանալով, *ասոնց վրայ ալ վերակացու դրաւ Ատաբազարու Հոգաբարձուներէն յարգի Յակոբ աղայն Բարսեղեան եւ մահտեսի Սարգիս աղայն Գալիկեան*» (Արշ· Արարատեան, 1845 *թ*· 237):

*Նոյն խնամքը ունեցած է Յովհաննէս Պէյ նաեւ* Նիկոմիդիայի (*Իզմիտ*) *եւ* Պարտիզակի *դպրոցներու համար: Իսկ* Արմաշի *մասին կը յիշատակէ* Հայաստան (*Կ*· *Պ*· 1848 *թ*· 109), *գրելով թէ Յովհաննէս Ամիրայ* Արմաշ գիւղի մէջ դպրոց մը հաստատած է, «որ հոն յատուկ իւր ծախիւքը վարժապետ ալ դրած է վանցի տիրացու Յօհաննէս Աւագ Սարկաւագը»:

9· *Պոլսոյ* Նաոլը Գափու *թաղին մէջ կայ* խորէնեան—վառվառեան *երկսեռ վար*–

*ժարանը*: 1847ին Յովհաննէս Պէյ Տատեան *հիմնած է կ՚ըսուի այդ վարժարանը* (Ընդարձակ Օրացոյց, *Կ. Պ.* 1901, *էջ* 232: — Տօքթ. Վ. Յ. Թորգոմեան, *Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն, Բ.*, *էջ* 764):

*Կը ճշդենք.— Ո՛չ թէ 1847ին, այլ* 1846ին հիմնած է Յովհաննէս Պէյ Տատեան *Նաւըր Գափուի մէջ* երկու զատ զատ վարժարան, մանչերու եւ աղջիկներու *եւ* «խորէնեան» *ու* «Վառվառեան» *յորջորջումները* սկզբնական չեն: *Ահա՛ ժամանակակից վկայութիւնը այս մասին*: Արշ. Արարատեան *կը գրէ* 1847 Յունուար 24ին. «*Մայրաքաղաքիս* Նարլու Քաբու *ըսուած թաղը բազմաթիւ հայազգի բնակիչներ կան... ասոնց զաւակները բոլորովին անխնամ եւ անօգնական մնալով, գրեթէ բոլոր օրը փողոցները կ՚անցունեն: Այս ցաւալի խեղճութիւնը* Արքունի վառօդապետ Վսեմափայլ Տատեան Յօհաննէս Ամիրբրային *ականջը հասնելով... իւր սովորական չնաշխարհիկ Հայրենասիրութեամբը անմիջապէս բարեհաճեցաւ* իւր յատուկ արդեամբը երկու ընդարձակ դպրատուն հաստատելու այն թաղին մէջ, որոնցմէ մէկը տղոց եւ միւսը աղջկանց համար... *Այս երկու բարեկարգ դպրատանց համար*, որ քանի մը ամիսէ ի վեր հաստատուած են, *զատ զատ խոհեմ* վարժապետներ եւ վարժուհիներ... *սահմանած են* Մեծաշուք Տատեան Յօհաննէս Ամիրային առատաձեռն ծախի–

քը: *Ասոնցմէ ի զատ* 150 *տղոց եւ* 150 *աղջըկանց համար* կատարեալ եւ վայելուչ հագուստ շինել տուաւ ամէն պարագայիւքը...» (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1847 *Թ*. 277):

*Ըստ* Թորգոմեանի (*Տօքթ. Վ. Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի, անդ՝ Ա. էջ* 203) 1849*էն ի վեր կոչուած է երկսեռ այս վարժարանը* «Խորէնեան — Վառվառեան»: *Ինչո՞ւ: — Չի՛ հաղորդեր Թորգոմեան: Չենք գտած հին ճշգրիտ լուսաբանութիւն մը:*

10. 1847*ին դէպի Եւրոպա ըրած իր ճամբորդութեան առթիւ՝* Յովհաննէս Պէյ Տատեան *եկած է Աւստրիոյ մայրաքաղաքը՝* Վիեննա *եւ* այցելած Մխիթարեան Միաբանութեանս Մայր — Վանքը երկու անգամ. *Նախ* 1847 Ապրիլին վերջերը *եւ երկրորդ՝* 1847 Նոյեմբերին:

*Յովհաննէս Պէյի Վիեննա Մայր-Վանքս այցելելէ վերջ՝* 1847 *Մայիս* 12 *թուական կրող նամակ մը* Վիեննայէն *կը տողէ* Պոլսոյ *մեր Հայրերուն.* «Յոյժ ուրախ եղաք ընդ գալ Տատեան Յովհաննէս Աղայի ի Վանս եւ ընդ արարս եւ ընդ բանս նորա... Ըստ հրամանի նորա առաքեցի 14 օրինակս (*Եւրոպա թերթի*) ի Թաշճի խանն... որդի նորա Ներսէս Աղա ապաքէն յառաջագոյն առեալ էր զմի օրինակ» (*Դիւ. Վիենն. Մխիթ. Մատեն.* 1847 *Մայիս* 12):

*Յովհաննէս Պէյ Տատեանի այս այցելութեան* նպատակն *եղած է նախ՝* Ինքը Մեկե-

նաս հանդիպանալով՝ *ուղած է մեր քով*
*հրատարակել տալ* արտաքին ու ազգային
Պատմութեան գիրք մը՝ աշխարհիս սկիզ–
բէն մինչեւ մեր օրերը: *Այս մասին կը գրէ*
*ժամանակակից Վիեննայի Մխիթ. Միաբա–*
*նութեանս թերթը՝* «Եւրոպա» *Շաբաթա–*
*թերթը* 1847 *Դեկտ.* 23*ին:*

*«Թէպէտ ազգերնիս թէ՛ ազգային եւ*
*թէ՛ արտաքին Պատմութեան վրայ շատ*
*պատմական գրքեր ունի, բայց մինչեւ հի–*
*մա ամբողջ, հիմնական, կատարեալ եւ*
*միանգամայն իր վիճակին ու օգտին համե–*
*մատ խիստ ու անաչառ քննութեամբ շի–*
*նուած* Ընդհանուր Պատմութիւն *մը չունէր:*
*Այսպիսի գրքի մը պակասութիւնը՝ ստուգիւ*
*մեր բոլոր գրագիտութեան մեծ թերութիւն*
*մըն էր. մանաւանդ որ նոր անուանի մատե–*
*նագրի մը բածին համեմատ՝ սա մեր դա–*
*րուն ուսման նկարագիրը՝ Պատմական ըլ–*
*լալն է:* Բարձրապատիւ Տատեան Ամիրային
(*Յովհաննէս Պէյ*) *մեծ ու ընդարձակ մտա–*
*ցը եւ իր ուսումնասէր ու հայրենասէր ջա–*
*նիցը պահուած է եղեր որ գրագիտութիւն–*
*ներնուս սա պակաս կողմն ալ երեւելի գըր–*
*քով մը ամբողջացընէ:* Ուստի եւ յանձնեց
մեզի որ վերը ըսած ամէն պայմանները ու–
նեցող, մէկ կողմանէ մէջը ամէն բան պա–
րունակելու չափ ընդարձակ, մէկալ կողմա–
նէ ալ գոնէ մեծ դպրոցներու մէջ սորվուե–
լու չափ համառօտ, աշխարհիս սկիզբէն
մինչեւ մեր ժամանակները հասնող, արտա–

քին ու ազգային Պատմութեան գիրք մը հրատարակենք: *Այս Պատմութեան* առաջին հատորը՝ *որն որ մեծ ութածալ* 40 *թերթի չափ պիտ'որ ըլլայ, կը յուսանք որ* տարւոյս ընթացքին մէջ կը հանենք. *իսկ* մէկալ հատորները ետեւէ ետեւ կը շարունակենք» (Եւրոպա, *Վիեննա* 1848 *Թ.* 1, *Յունուար* [23 *Դեկտ.* 1847]):

*Այստեղ յիշուած Պատմագիրքն է Հ.* Յովսէփ Վ. Գաթըրճեանի «Տիեզերական Պատմութիւն»*ը, որուն* Ա. Հատորը (820 *էջ) լոյս տեսած է* 1849*ին: Յաջորդ էջին մէջ կու տանք ճակատը:*

*Գրքիս* Բ. Հատորը *լոյս կը տեսնէ* 1852*ին եւ ունի միեւնոյն ճակատը, միայն սա տարբերութեամբ որ ասիկա* «Միջին Պատմութիւն» *է, այսինքն՝* Միջին Դար *եւ ունի* 608 *էջ: Ինչպէս կը տեսնուի՝ պիտի յաջորդէր* Գ. Հատորը, *որ պիտի պարունակէր* Նոր Պատմութիւն (*կամ Շրջան*), *սակայն* լոյս չէ տեսած: *Հ. Յ. Գաթըրճեան առաքելութեան ղրկուած է արեւելք եւ* կա՛մ ժամանակ չէ ունեցած *եւ կա՛մ* բաղձանք չէ մնացած *շարունակելու Տիեզերական Պատմութիւնը:* 1856*ին* Պոլիս *կը գտնուի Հ. Գաթըրճեան եւ* 1856 *Յուլիսին* Պէպէքի *մէջ իրար կը հանդիպին* Մեկենաս՝ Յովհաննէս Ամիրայ Տատեան *եւ* մեր Հ. Յովսէփ Գաթըրճեան: *Եւ ահա թէ ի՛նչ կը գրէ թղթակիցը* — Հ. Ղեւոնդ Վ. Յովնանեան. «Բա-

*Ահա անոր ճակատը.—*

ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Ի սկզբանէ աշխարհի մինչեւ մեր ժամանակս
Աշխատասիրութեամբ

Հ. ՅՈՎՍԵՓԱՅ Վ. ԳԱԹԸՐՃԵԱՆՑ
Ի Մխիթ. Ուխտէ

Ի խնդրոյ

ՔԱՋԱԶՈՒՆ ԵՒ ՀՈՅԱԿԱՊ ԻՇԽԱՆԻ
ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՄԻՐԱՅԻ ՏԱՏԵԱՆՑ
եւ նորին ծախիւք դրոշմեալ

Հատոր Ա.

Հին Պատմութիւն
Ի Վիեննա 1849

*Գեղակերտ երկրորդ ճակատին վրայ կայ ձօնս Մեկենասին.*

ՅՕԳՈՒՏ ԵՒ Ի ԲԱՐԳԱՒԱՃԱՆՍ

Համօրէն

ՀԱՅ ԱԶԳԻՆ

Նուիրէ
զՊատմութիւն Ազգաց

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԱՏԵԱՆ
ԱՐՔՈՒՆԻ ՎԱՌՕԴԱՊԵՏ ՕՍՄ. ՊԵՏՈՒԹԵԱՆ

Լինել ի նմա մշտնջենաւոր յիշատակ

ՏԱՆ ԵՒ ԱԶԳԱՏՈՀՄԻ ԻՒՐՈՅ

զում բանիւք թախանձեալ է զնա (*դՀ. Յովսէփ*) այրն՝ յառաջ վարել եւ դրօշմել զՏիեզերական Պատմութիւն՝ խոստացեալ հատուցանել զգինսն»: «*Ինձ այնպէս թուի, կ'աւելցնէ թղթակիցը, թէ եթէ չպակասէին կամքն առ այն, մարթ էր գտանել ժամանակ*» (*Դիւ. Վիեննի. Մխիթ. Մատեն.* 1856 *Յուլիս* 30, *նամակ Հ. Ղ. Յովնանեանի՝ առ Գեր. Աբրահայրն*):

*Յովհաննէս Պէյ Տատեանի Վիեննայի Մայր-Վանքս այցելելու* երկրորդ *նպատակն եղած է՝* 2. Ինքը Մեկենաս ըլլալով՝ *մեր քով հրատարակել տալ հայերէն* Երկրագունտ (*Ատլաս*) *եւ* երկնագունտ: Եւրոպա՝ *չարունակելով իր վերի տեղեկատուութիւնը՝ կը գրէ այս մասին.*

*«Աս առաջին որոշման չափ օգտակար եւ նոյնպիսի ուսումնասիրութեան եւ հայրենասիրութեան գործք է* երկրորդ յանձնարութիւնն *ալ, որով* յանձնեց մեզի որ ազգային դպրոցներուն յառաջադիմութեան *համար* երկրի *ու* երկնից *արուեստական* գնդերը *նորէն մինչեւ հիմա ունեցածներնէս*[1] շատ աւելի մեծ շինենք: *Աս* նոր գնդերուն տրամագծին մեծութիւնը երկու ոտնաչափ *պիտ'որ ըլլայ. այնպէս որ այսպիսի մեծութեամբ գնդեր դեռ Եւրոպայի մէջ ալ քիչ*

[1] 1839*ին շինուած են փոքր* երկրագունդ *մը եւ* երկնագունդ *մը մեր քով: Հեղինակն է մեր Հ.* Աղեքսանդր Պալճեան (*Տե՛ս* Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1845 *թ.* 241):

*կը գտնուի. ուստի եւ ատոնք՝ ազգին մեծ ուսումնական օգուտ ընելէն զատ՝ Եւրոպացւոց առջեւն ալ թէ՛ ազգին եւ թէ՛ ազնուական Բարերարին պարծանքին առաւելութիւն պիտոր ըլլան: Ստուգիւ ազգերնիս ինքը զինքը բախտաւոր պիտի համարի այսպիսի առատաձեռն Բարերարներ ունենալուն համար եւ մէկ կողմանէ այսպիսի բարերարութեանց երախտագէտ գտնուելու եւ մէկալ կողմանէ իրենց բարերարութիւններէն պտուղ քաղելու համար ատոնցմով իրեն ուսումնասիրութեան մէջ աւելի եւս պիտի յորդորուի: — Ասոնցմով եւ ասոնց նման ազգիս լուսաւորութեան եւ ուսումնական յառաջադիմութեան համար ըրած մեծամեծ գործքերով* արժանի է որ ազգային բարերարաց ու դիւցազանց անուններուն կարգը ոսկի գրով արձանագրուի, *մանաւանդ թէ* ամէն հայազգի ու հայասէր սրտերուն մէջ անջինջ քանդակուի Տատեան Բարձրապատիւ Յովհաննէս Ամիրային հոյակապ անունը» (Եւրոպա, *Վիեննա* 1847 *Դեկտեմբեր* 23):

*Այս երկրորդ ապսպրանքէն չինուած է* Մեծ երկրագունտ – Ատլաս *մը՝ արտակարգ կատարելութեամբ եւ գեղարուեստական հանճարով: Ասիկա գործն է* Հ. Արսէն Վ. Այտընեանի, *որ իբրեւ* գեղագիր՝ *ջանացած է ամէն մէկ նիւթ — քաղաք, լեռ, ծով —* տարբեր գրով *ներկայացնել: Տեսնողին մի-*

*այն հիացում կ'առթէ։ Ասոր մէկ օրինակը արժած է* 500 ոսկի փրանկ։

11․ *Յովհաննէս Պէյ Տատեան* Մեկենաս *եղած է նաեւ* Վենետիկի Մխիթ․ Միաբանութեան, *որոնց* Ատլասը *իր ծախքով տպել կու տայ* 1847*ին*, *ինչպէս դիւանական նամակ մը կը ծանուցանէ* (*Դիւ․ Վիենն․ Մխիթ․ Մատենադ․* 1847 *Օգոստ․* 11)։ *Նոյնպէս տպագրել տուած է հոն* Աշխարհացոյց տախտակներ (Հայաստան, 1849 *թ․* 179), Հ․ Ղեւոնդ Վ․ Ալիշանեան*ի պատկերազարդ երկհատոր հոյակապ գործը* — Քաղաքական Աշխարհագրութիւն — *հրատարակուած* 1853*ին*, *որ ունի ճակատին վրայ․*

## ՏՊԱԳՐԵԱԼ ԾԱԽԻՒՔ ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՄԻՐԱՅԻ ՏԱՏԵԱՆ[1]

12․ *Յովհաննէս Պէյ* 1852*ին* Մաքրիգիւղի *Յունաց եկեղեցիի շինութեան մեծ օժանդակութիւն ընելէ վերջ՝* Էյուպ *բնակող եւ* Գըրգ — Չեշմէի *ջրամբարներու շինութեան աշխատող հայ գործաւորներու ընտանեաց կրօնական մատակարարութեան համար* Ս․ Աստուածածին *անունով եկեղեցի մը կը կառուցանէ, որ յետագային ուխտատեղի մը կ'ըլլայ։ Յովհաննէս Պէյի որդի՝* Յարու–

[1] *Յովհաննէս Պէյ Տատեան Վենետիկի Մխիթարեան վանքը այցելած է* 1847*ին* (*Տե՛ս* Բազմավէպ, 1869, *էջ* 160)։ *Անոնց* Աշխարհագրութիւնը *եւ* Սենեկան *տպել տուած է* (Մասիս, 1852 *թ․* 9)։

թիւն Փաշա Տատեան՝ *իր հօրը յիշատակին այդ եկեղեցւոյ կը նուիրէ* ճանանչաւոր ոսկիէ խաչ մը (Պ. Կարապետեան, 90*ամեայ Յոբելենական Յիշատակարան*, *անդ*՝ *էջ* 30)։

13. Արմաշի Միաբանութեան *ամսաթերթը*՝ Յոյս՝ *երախտագիտութեամբ ընդգծելէ յետոյ թէ* Յովհաննէս Պէյ Տատեան «Միաբանութեան գլխաւոր Բարերարներէն մին» *եղած է*՝ *կը գրէ*. «Թէ՛ Միաբանութեանս եւ թէ՛ ժառանգաւորաց Ուսումնարանիս Մատենադարաններուն մէջ շատ մը պիտանի գրքեր այս փառաւոր իշխանին յիշատակը կը կրեն» (Յոյս, *Արմաշ* 1869, *էջ* 157)։ *Թերթը կ'աւելցնէ թէ* «*Ամէն անեն որ յՆւրոպա ուղեւորիլ հարկադրուէր՝ չէր մոռնար նախ* Ուխտ եւ յերկրպագութիւն գալ Օրհնաբանեալ Անեղամօր ի Ս. վանս եւ ինքզինքը նորա ջերմագութ գորովոյն գիրկը յանձնել» (*Յոյս*, *անդ*)։

14. 1856*ի տեններըր Ս. Փրկիչ Ազգ. Հիւանդանոցի Որբանոցը իր նախկին փայլը կորսնցուցած եւ պարզ Նախակրթարանի մը վերածուած էր*։ Տատեան Յովհաննէս Պէյ եւ Պօղոս Պէյ Տատեան, *ինչպէս նաեւ Կարապետ Ամիրայ Գալեան մեծաքանակ նպաստներով կը վերականգնեն Որբանոցը՝ եւ զայն* Ուսումնարանի *աստիճանին կը բարձրացնեն*։ *Այդ թուականէն սկսած Թուրք լեզուի ուսուցչին*, *որ միշտ հայ եղած է*՝ *ամսաթոշակները* Յովհաննէս եւ

Փօղոս Պէյերը վճարած են երկար տարիներ, իսկ իրենց մահէն վերջ՝ իրենց որդիները (Պ. Կարապետեան, Հնգադարեան Ցիշատակարան. Կ. Պ. 1935, էջ 118—9):

## ՄԱՐԴԸ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐԸ

Մինչեւ ցարդ զանազան կողմերէ եւ տեսակէտներէ նկատեցինք Յովհաննէս Պէյ Տատեանը: Այժմ կ'ուզենք տալ իր մէջ Մարդը՝ իր նկարագրովը:

1842ին դէպի Եւրոպա ըրած իր ճամբորդութեան առթիւ Յովհաննէս Պէյ զանազան գիտնականներու, արհեստագէտներու եւ մտաւորականներու հետ տեսակցած ու գործակցած ըլլալով՝ զինքը մօտէն ճանչցող եւ հիացողներ ունեցած է, որոնք թերթերու մէջ իր մասին յօդուածներ գրած են Ֆրանսա եւ Անգլիա: Այդ գրութիւններէն մին թարգմանաբար տուած է Իզմիրլի Արշ. Արարատեան 1844ին, ուրմէ կը քաղենք հետեւեալը, որ սքանչելի պատկեր մ'է Յովհաննէս Պէյի գեղեցիկ ու առինքնող նկարագրին. «Անիկա զուարթուն ու մարդասէր հոգւոյ տէր է, թէեւ աղջի բերանը արեւելեան ծանրաբարոյութիւն մը կը տեսնուի քիչ մը անոր վրայ: Իր ազնուական ու քաղեկիրթ վարմունքովը այնքան բարեկամներ ստացաւ Եւրոպայի մէջ, որքան որ մարդ տեսաւ ու անունը կրելու արժանաւոր ու բարեկամութեան զինը ճանչցող: Յօհաննէս Աղային սիրտը իր շրթանց վրայ է ու անոր

աչվրններէն ճշմարտութեան լոյսը կը ցայտէ: *Իր* հայեցուածը սուր է, աշխոյժ, բարեսէր ու ազդու: *Մեր մէջը ներկայ գտնուիլը չկրցան կորսնցնել տալ անոր* արեւելեան իր ազնիւ վարմունքը, *որոնք* վեհանձնական սրտին *ապացոյներն են*: Այս մարդասէր վարմունքը, չեմ գիտեր ինչ ակնածական յարգութիւն մը կը սփռեն իր անձին վրայ որ յինքը կը յանկուցանէ զքեզ ու իր բարութեամբը կը տիրէ քու սրտիդ վրայ: *Եթէ անոր ունեցած* ճշմարիտ ու բարեպաշտ համեստութեան *քողը կրցար վերցնել, կը տեսնես անմիջապէս ճառագայթիլ իր գիտնական հանճարամտութեանը քով ան ամէն* վեհանձնական ազնուութիւնները, *որոնք ալ աւելի կը բարձրացնեն ու կը զարդարեն մարդուս արժանաւորութիւնը...*» (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1844 *թ.* 174, *Յունուար* 21):

*Յովհաննէս Պէյլի նկարագրին ազնուական փայլը կը ցայտեցնէ Արմաշի* «Յոյս»*ը, տալով: «Նա լաւ ճանչցած էր որ երկրաւոր ազնուականութեան ազօտանշոյլ փայլը աւելի վաղանցուն ու մարդկեղէն յարգանաց արժանի կ'ըլլայ, եթէ երկնաւոր ազնուականութեան գեղեցիկ սեթեւեթներն իր դըլխոյն զարդ ունենայ եւ թէ անհնար է մարդոյ* բարի, ազնուական ու կատարեալ ըլլալ, առանց ճշմարիտ Քրիստոնեայ ըլլալու...» (Յոյս, *Արմաշ* 1869, *էջ* 156–7):

## ԳՐԱԳԷՏ — ՄՏԱԻՈՐԱԿԱՆԸ

Յովհաննէս Պէյ Տատեան սիրած է գրականութիւնը եւ քաջալերած զայն, ինչպէս տեսանք։ Ինքը, իբրեւ բարձր ուսման եւ գիտութեան տէր անձ՝ ազատ ժամերուն մըշակած է գրական քանի մը ճիւղեր եւ արտադրած անտիպ գրականութիւն մը։ Հրանտ Ասատուր, որ հնարաւորութիւն ունեցած էր առաջինն ըլլալով տեղեակ ըլլալու Յովհաննէս Պէյի գրական արդիւնքին եւ ստանալու իսկ զանոնք՝ կը գրէ. «Իբր գիտուն եւ արհեստագէտ, Յովհաննէս Պէյ ունի գրաւոր անտիպ ուսումնասիրութիւն մը իբր պատմագէտ՝ իր ժամանակին մէջ ամէնէն հմուտներէն եղած է եւ ընդհանուր պատմութեան մասին իր թողած ժամանակագրական աշխատութիւնը, որ կը մնայ ձեռագիր՝ ապացոյց է թէ այդ ճիւղին աշխատած է մեծ եռանդով։ Ունի կարգ մը ուրիշ գրուածներ ալ, ձեռագիր, որոնք հայլիներն են խոհական մտքին, կրօնասէր հոգիին եւ ազնիւ զգացումներուն» (Ընդարձակ Օրացոյց 1900, էջ 148)։

Թորոս Ազատեան՝ Հրանտ Ասատուրի վերջին օրերուն անկէ ստանալով Յովհաննէս Պէյի ձեռագիրները՝ անոր «Ժամանակագրութիւն»էն քանի մը դրուագներ հրատարակած է իր Աստղաբերդին (Աստղաբերդ, Կ. Պ. 1951 Թ. 8–9, էջ 165–70) մէջ։ Նոյնպէս Յովհաննէս Պէյի մէկ նամակը, գրուած 1861 Մայիս 21ին Պէշիկթաշ եւ

ուղղուած Յակոբ Կոռնիկեանին՝ տուած է Ազատեան (Տե՛ս Աստղաբերդ, անդ՝ էջ 170–2)։ Իսկ Յովհաննէս Պէյի «Ուղեգրութիւն»ը, որ 70 մանրատառ էջերէ կը բաղկանայ՝ նկարագրութիւնն է իր 1835 Հոկտ. 22ին սկսած ուղեւորութեան դէպի Եւրոպա։ Ազատեան առկէ ալ մաս մը հրատարակած է (Աստղաբերդ, անդ՝ էջ 172–4)։ Վերջապէս ունի Յովհաննէս Պէյ «Իմաստասիրական Բանք ի վէպս Ազգիս Հայոց կամ Իմաստասիրական Պատմութիւն Հայկազանց» խորագրով ձեռագիր գրութիւն մը, զոր սկսած է գրել 1862ին եւ աւարտած 1866ին։ Թ. Ազատեան այս վերջին գրութեան միայն «Կանխաբանութիւն»ը տուած է իր թերթին մէջ (Աստղաբերդ, անդ՝ էջ 175–180)։

Արմաշի «Յոյս» ամսաթերթը կը գրէ որ Յովհաննէս Պէյ՝ իր մահէն ամիս մը առաջ Արմաշի տպարանի մէջ ուզած է տպագրել տալ «պիտանի աշխատութիւն մը աւարտած»։ «Բայց արդէն երկինք քաղցր հրաւէրով մը իր աշխատութիւնները բաւական համարած էր» (Յոյս, Արմաշ 1869, էջ 158)։

Յովհաննէս Ամիրայ գրի առած է Քաղաքական անցից «Օրագրութիւն» մը՝ խառն իր եղբօր՝ Սիմոն Ամիրայի կեանքի «Օրագրութեան» հետ, զոր հասցուցած է մինչեւ 1832, Սիմոնի մահուան տարին (Օրագրութիւն, էջ 42)։

## ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐԸ ԵՒ ՄԱՀԸ

Իր կեանքի վերջին տարիներուն գործէ քաշուած՝ Յովհաննէս Պէյ ինքզինքը մտաւորական աշխատութիւններու տուած էր: Իր բնակարանը Պէշիկթաշ էր, ուր սեպհական ապարանք մ'ունէր (Արշ· Արարատեան, 1869 Թ· 857): Ինչպէս յիշած ենք՝ արդէն ԺԹ· դարու առաջին քառորդին իր եղբայրը՝ Սիմոն Ամիրայ՝ Պէշիկթաշի մէջ բնակարան ունէր: Հաւանական է որ Յովհաննէս Պէյ այդ ընտանեկան հողին վրայ կառուցած ըլլայ յետոյ իր սեպհական տունը, ուր կը բնակէր ամբողջ իր ընտանիքով:

1828 Յուլիս 6ի Ազատլըի վառօդարանի դժբախտ պատահարէն վերջ՝ Յովհաննէս Պէյ ընտանիքով Այ Ստեփանօ փոխադրուած է, ուր «Վարձու առաւ, կը գրէ ինքը, Զիթլի Պաշի Սելիմ Աղային տունը, մինչեւ որ 1829ին իրեն համար ընդարձակ տուն մը շինեց հետզհետէ ընդարձակելով» (Օրագրութիւն, էջ 40):

Յովհաննէս Ամիրայ իր «Օրագրութեան» մէջ 1832ին կը յիշէ Այեօրկի (Ազատլը) ունեցած սեպհական «փոքրիկ տունը», որ ուրիշին պատճառաւ կ'այրի 1832 Օգոստոսին: Պետական ծախքով նոյն տեղ Նոր տուն մը կը շինուի Յովհաննէս Ամիրայի համար (Օրագրութիւն, էջ 46): Այս տունը իր մօրմէն ժառանգած էր Յովհաննէս Պէյ (Օրագրութիւն, էջ 50):

Հետեւաբար թէ՛ Պէշիկթաշ, թէ՛ Ազատլը

*եւ թէ* Այ Ստեփանօ *սեպհական տուն ունէր Յովհաննէս Պէյ Տատեան:*

1867–8*ին կ'ունենայ հիւանդագին վիճակ մը, զոր դարմանելու համար* 1868*ին*[1] *կու գայ* Վիեննա, *ուր բժշկական խնամքներով ա՛յնքան կը բարելաւուի իր վիճակը որ գոհունակութեամբ կը վերադառնայ իր ընտանեկան քաղցր բոյնը: Դժբախտաբար սակայն ունեցած հիւանդութիւնը դարձեալ մէջտեղ կ'ելլէ եւ զինքը կը տառապեցնէ: Օրէ օր վիճակը ծանրանալով՝ քրիստոնէական Ս. Խորհուրդներով զօրացած՝* 1869 *Ապրիլ* 18*ին կը կնքէ իր մահկանացուն ճշմարիտ քրիստոնեայի մը բարի մահուամբ: Պոլսոյ* Մասիս *կը գուժէ. «Զատկի հողեգուարճ տօնն այս տարի տխրախառն երեւոյթ մ'առաւ* Պէշիկթաշի մէջ՝ *մեծանուն անձի մը մահուամբ*, որ դարուս մէջ եկած գացած նշանաւոր ազգային առաջիններէն մէկ եղած է իր համբաւով, անձնական արժանեօքն եւ տէրութեան ու ազգին մատուցած բարերար ծառայութիւններովը: *Այս անձն* Արքունի վառօդապետ Տատեան վսեմ. Յօհաննէս Պէյն էր, *որ իր բազմարդիւն եւ վերջին ժամանակներս ալ* վշտագին հիւանդութեամբ չարչարեալ *կեանքը քրիստոնէական բարի մահուամբ կնքեց Աւագ Ուրբաթ օրը ի հա–*

[1] Մասիս (1868 *թ.* 204. *Յուլ.* 23*ին*) *կը գրէ. «Անձնական տկարութեան դարման գտնելու համար Երեքշաբթի օրը Մայրաքաղաքէս Վիէննայ գնաց* Տատեան վսեմ. Յովհաննէս Պէյ»:

*սակի 71 ամաց։ Յուղարկաւորութիւնը Երկուշաբթի օրը կատարուեցաւ* Պէշիկթաշի եկեղեցին իր աստիճանին եւ համբաւոյն արժանի փառաւորութեամբ, *որուն ներկայ էին ազգիս բոլոր բարձրաստիճան եկեղեցականներն ու աշխարհականները, տէրութեան մեծամեծ պաշտօնեաներ եւ բազմաթիւ երեւելի օտարազգիներ։ Կայսերական կառավարութիւնն ալ իր բազմավաստակ հաւատարիմ պաշտօնատարին յիշատակը մեծարելով՝ 200ի չափ Խասսայի զօրք ղրկած էր. Նոյնպէս Բ. Դռնէն, Թօփհանէէն եւ Ոստիկանութեան դռնէն բազմաթիւ զինուորներ ու պաշտօնակալներ, որք յուղարկաւորութեան հանդէսին շուքն աւելցուցին ի պատիւ մեծանուն Հանգուցելոյն եւ Ազգիս։ Դամբանականը Գեր. Խորէն Եպ. խօսեցաւ, մանրամասնաբար յիշելով Հանգուցելոյն առանձնական եւ հասարակային կենաց բոլոր առաքինութիւնները... Հանգուցելոյն մարմինը Պէշիկթաշի նաւամատոյցէն շոգենաւ դրուելով՝* Մաքրիգիւղ *տարուեցաւ, ուր դարձեալ վաշտ մը կայսերական զօրաց ուղեկցութեամբ նոյն հանդիսիւ* իւրաշէն եկեղեցին *տարուելով, հոն պատրաստուած շիրմին մէջ ամփոփուեցաւ։ Այսպէս ահա ազգերնիս մեծ մարդ մ'ալ կորսնցնելու դժբախտութիւնը կ'ունենայ. մարդ մը՝ որ կէս դարէ ի վեր ազգիս մէջ փայլող ականաւոր անձանց մէջ* ազգասիրութեան, ուսումնասիրութեան եւ առանձնական բարե–

մասնութեանց մասին իրեն հաւաստող խիստ քիչ ունեցած է *եւ որուն արդիւնաւէտ կեանքն* ազգային պատմութեան մէջ կարեւոր էջ մը բռնելու է» (Մասիս *Օրաթերթ*, Կ. Պ. 1869 *Թ.* 345, *Ապրիլ* 23: — *Տե՛ս նաեւ* Մասիս *Շաբաթաթերթ*, 1869 *Թ.* 916: — Յոյս, *Արմաշ* 1869, *էջ* 156–8: — Մանզումէի էֆքեար, Կ. Պ. 1869 *Թ.* 906:– Մէնմուայը Հավատիս, Կ. Պ. 1869 *Թ.* 712, *եւ այլն*):

*Յովհաննէս Պէյ կը թաղուի* Մաքրիգիւղի *մէջ* 1844 *Ապրիլ 7ին իր իսկ կառուցած* յանուն Ծնունդ Ս. Աստուածածնայ *եկեղեցւոյն պարտէզին աջակողմը, ուր թաղուած են նաեւ իր ընտանիքի անդամները*:

*Յովհաննէս Պէյի որդին՝* Յարութիւն Փաշա 1871*ին փառաւոր շիրիմ մը կը կանգնէ իր հօրը եւ մօրը վրայ, հետեւեալ արձանագրութեամբ*.

## ԱՅՍ ՀԱՆԳՉԻՆ

## ՅՈՒՍՈՎ ԿԵՆԱՑՆ ՅԱՒԻՏԵՆԻՑ ԱՄՈՒՔ ՀԱՒԱՏԱՐԻՄՔ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ ԱՆԲԱԺԱՆՔ ՈՐՊԷՍ Ի ԿԵՆԴԱՆՈՒԹԵԱՆՆ ԵՒ Ի ՏԱՊԱՆԻՍ ԱՅՍ ՀԱՆԳՍՏԵԱՆ

Արքունի վառօդապետ Յովհաննէս Պէյ Հիմնադիր Սրբոյ Եկեղեցւոյս եւ դպրատան Ազգային Բարերար լի շնորհօք ի Քրիստոս որ փոխեցաւ յաստեաց ի 1869 ամի 19Ապրիլի վախճան ետ բարեկից եւ արգասաւոր կենաց :

Իսկ ամուսինն իւր Տիկին Նազուբ
Մայր շնորհազարդ եւ բարեզուբ-
առաքինի եւ անզուգական ի բարիս
որ ննջեաց ի Տէր ի 1870 ամի 15 յլս
այս շիրիմ տապանի է
Զօն
յերախտագէտ սրտէ
1871

(Տօքթ․ Վահրամ Յ․ Թորգոմեան, *Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն*, Ա․ *Վիեննա* 1913, *էջ* 403)։

*Մաքրիկիւղի «Ննջեցելոց Տօմար»ին մէջ յիշուած է «Տիկին Նազութ* Մինասեան», *որ թաղուած է իր ամուսնոյն ձախակողմը, Սուրբ եկեղեցւոյ աջ կողմը*։

5․ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԱՄԻՐԱՅԻ ՍԵՐՈՒՆԴԸ

*Յովհաննէս Ամիրայ եւ Տիկ․ Նազութ* (*Յակինթ*) *օրհնուած են* 8 *զաւակներով*, 4 *մանչ եւ* 4 *աղջիկ*։ *Ահա անոնց անունները՝ ծնունդի կարգով*։ Աննա, Առաքել – Սիսակ, Յուլիանէ – Ֆուլիկ, Ներսէս – Խոսրով, Ա– րուսեակ, Յարութիւն – Գարեգին, Գրիգոր– Միհրան եւ Հռիփսիմէ։

Հրանտ Ասատուրի *վկայութեամբ Յով– հաննէս Պէյ «Խնամեալ կրթութիւն մը տուած է իր զաւակներուն»* (*Ընդարձակ Օրացոյց*, *Կ*․ *Պ*․ 1900, *էջ* 148)։ *Հաւանօրէն*

դաստիարակ — ուսուցիչներ բռնելով՝ իր տանը մէջ եւ իր հսկողութեան տակ փոյթ տարած է Յովհաննէս Պէյ Տատեան ուսման լաւ հիմ մը դնել իր զաւակներուն համար: Այդ դաստիարակ — ուսուցիչներէն մին ծանօթ է մեզ — Սերոբէ Պետրոսեան — որ 1858ին կը գրէ. «Ի տան Արքունի Վառօդապետ Մեծապատիւ Յովհաննէս Պէյի Տատեան իմ ի քսան եւ ի մի ամաց հետէ կալով մանկավարժ որդւոց նորա եւ թոռանց ...» (Բանասէր, Փարիզ 1907, էջ 123):

Իր որդիները բարձրագոյն եւ մասնագիտական ուսումները կ'ընեն յետոյ Եւրոպայի մէջ, ինչպէս կը վկայէ Պետրոսեան՝ չեչտելով. «Ամենայն որդիք երկոցունց Արքունի վառօդապետաց գնացեալ են յԵւրոպեայ ի կրթութիւն եւ յուսումն այլ եւ այլ գիտութեանց, որպէս չափաբերութեան, բնագիտութեան, տարրալուծութեան եւ են անուանիք ի նոսին» (Բանասէր, անդ):

Խօսինք այժմ ամէն մէկուն վրայ առանձին, առանձին:

1. Աննա. — Յովհաննէս Պէյ Տատեան թողած է նոտրագիր-ձեռագիր մէկ թերթեան ինքնագիր գրութիւն մը, որուն վրայ մի առ մի, օրը օրին եւ ժամը ժամին նշանակած է իր ութը զաւակներու ծննդեան թուականը՝ տարիով, ամիսով եւ օրով: Մանչ զաւակներու անուններուն քով կարմիր թանաքով նշած է թէ 1839ին ամէն մէկուն երկրորդ անուն մ'ալ կցած է իրր մա—

կանուն. այսպէս. Առաքելին՝ Միսակ, Ներսէսին՝ Խոսրով, եւ այլն: Հետեւաբար Յովհաննէս Պէյի զաւակներու կրկնանուն-ները սկզբնական, այսինքն՝ ծնունդ - մկըր-տութեան շրջանէն չեն: Յովհաննէս Պէյի այս գրութիւնը ունեցած է — ուրիշ գրիչէ եւ սովորական գրութեամբ — շարունակող մը, որ գրած է Պապայեան ընտանիքի եւ ուրիշ Տատեան Գերդաստանի հետ կապ եւ խնամութիւն ունեցող անձերու ծննդեան, մկրտութեան, պսակի եւ մահուան թուա-կաններ: Այս ձեռագիր գրութիւնը ընդունե-ցայ Բուկարեստ բնակող Պր. Յ. Ճ. Սիրու-նիէն, որ բարեհաճեցաւ զայն մեր Վիեննայի Մատենադարանին նուիրել: Կը յայտնեմ շնորհակալութիւնս:

Յովհաննէս Ամիրայ Տատեանի առջի-նեկ զաւակը՝ Աննա ծնած է Պէշիկթաշ 1819 Յուլիս 17ին: Ինչպէս տեսանք վերը՝ Յով-հաննէս Ամիրայի մայրը՝ Աննա խաթուն՝ ինքը իր անունով կը յորջորջէ իր այս նո-րածին թոռնուհին (Տե՛ս Ընդարձակ Տարե-ցոյց, Կ. Պ. 1932, էջ 91—7, Տատեան «Ժա-մանակագրութիւն»ը):

Օր. Աննա 14 տարեկանը նոր լրացու-ցած էր տակաւին, երբ 1833 Դեկտ. 17ին գինքը կը պսակեն Հայրապետ Պապայեանի հետ, որուն ծագումը անծանօթ է մեզ: Իրենց զաւակներն են. Յովհաննէս — Վահ-րամ, Յուլիանէ, Կարապետ — Սմբատ, Մարիամ, Վերոնիկա եւ Միհրդատ Պէյ: —

1. Յովհաննէս — Վահրամ *ծնած է* 1835 *Մայիս 3ին. իր մասին ուրիշ ծանօթութիւն չունինք*։ — 2. Յուլիանէ, *որ աւելի* «Ֆուլիկ» *անունով ծանօթ է՝ ծնած է* 1836 *Դեկտ.* 17*ին եւ մեռած* 1902*ին Գասըմփաշա։ Տիկ. Յուլիանէ ամուսնացած է* Թէոդորոս Պէյ Գիսակի (*ծն.* 1825) *հետ* 1858 *Յունուար* 19*ին։ Ասոնց զաւակներու եւ սերունդի մասին կարեւոր ծանօթութիւն զրկած են* Տիկ. Զարուհի Ֆէրուհխան (*Պոլիս*) *եւ* Տիկ. Սոֆի Թիւրապեան (*Պոլիս*) Պր. Գէորգ Բամպուքճեանի (*Պոլիս*) *միջոցաւ, որոնց կը յայտնեմ շնորհակալիք*։

Թէոդորոս — Գիսակ Պէյ *եղած է* Արքունի Նաւարանի *Ա. Թարգման անգլիերէնի. ունեցած է* գնդապետի[1] (*միրալայ*) *աստիճան.* 1873*ին Նախանձի պատճառաւ թունաւորուելով կը մեռնի. մահէն առաջ փափաք կը յայտնէ որ իր երկու դուստրները* Notre Dame de Sion *վարժարանը դրուին*։

*Թէոդորոս-Գիսակ Պէյ մեռած է* 1873 *Յուլիս* 3*ին։ Այս առթիւ կը սգայ Իզմիրի թերթը՝* 1873 *Յուլիս* 14*ին.* «*Ցաւալի ու ու անդարմանելի կորուստ մի տեղի ունեցաւ ի Կ. Պոլիս յերրորդումն ամսոյս։ Ծո—*

[1] Արշալոյս Արարատեան (*Զմիւռնիա* 1865 *թ.* 756) կը գրէ. «Մեծաշուք Թորոս Պէյ Գիսակ Տեղակալ Գնդապետը, *որ ծովային պաշտօնատան* (*Նախարարութեան*) *մէջ Խորհրդոյ քարտուղար եւ առաջին թարգման է* Ս. Սդանիսլաւի կարգին երկրորդ աստիճանի շքանշան ընկալաւ Ռուսաց Օգոստ. կայսրէն»։

վակալութեան պաշտօնատան առաջին թարգման եւ խորհրդոյ քարտուղար Վսեմ. Գիսակ-Թորոս Պէյն՝ կաթուածի յանկարծահաս անհաղին հարուածով մի առ Աստուած փոխեցաւ ի հասակի 45 ամաց:

Հայր զորովագութ, ամուսին խանդակաթ, ուսումնական եւ լեզուագէտ, հանգուցեալն լի էր իմացական եւ բարոյական ազնիւ ձրիւք. բայց աւա՜ղ որ անագորոյն մահն յափշտակեց զնա անդթութեամբ յանմխիթար ցաւ եւ ի կսկիծ սրտի իւր ազնուական երիտասարդ լծակցին, իւր դեռաբողբոջ զաւակացն եւ իւր բազմաթիւ ազգականաց ու բարեկամացն» (Արշալոյս Արարատեան, 1873 Թ. 966, Յուլ. 14):

Ինչպէս կը տեսնուի՝ ո՛չ թէ թունաւորուած, այլ կաթուածով մեռած է: Ծնած էր 1825ին, կը մեռնի 1873ին, ուրեմն՝ 48 տարեկան:

Յուլիանէ-Թէոդորոս Պէյ Գիսակի զաւակներն են. Եւգինէ, Վերգին, Զապէլ, Լեւոն-Գիսակ: Եւգինէ եւ Վերգին երկուորեակ են, ծնած 1859 Մարտ 13ին Պէշիկթաշ եւ մկրտուած 1859 Մարտ 17ին՝ կնքահայրութեամբ Վառօդապետ Սիմոն Պէյ Տատեանի: ա) Եւգինէ ամուսնացած է Ղազարոս Ղազարոսեանի հետ. ապրած են Պանտրմա եւ Ա. Համաշխարհային պատերազմէն առաջ հոն մեռած են. ունեցած են հինգ զաւակ, որոնք տեղահանութեան ժամանակ աքսորուած են. առաջին զաւակն

է Էօժէնի, որ Պանտրմայի մէջ ամուսնացած է Յարութիւն անունով անձի մը հետ. Տիկ. Էօժէնի առաջին ծննդաբերութեան ընթացքին մեռած է. երկրորդ զաւակն է Յակոբ, որ Ամերիկա գաղթած, ճաշարանապետ եղած եւ հոն ամուսնացած, զաւակներ ունեցած ու մեռած է. երրորդն է՝ Թեւնակ, որ Բարսեղ Խուպեսերեանի հետ ամուսնանալով, Պանտրմա, ունեցած է 2 զաւակ– Թեւնակ եւ Բարսեղ, որոնք Ա. Ընդհ. պատերազմէն առաջ մեռած են. վերջին երկու զաւակներն անծանօթ են: բ) Վերգին՝ 1875ին ամուսնացած է գրագէտ եւ ազգային գործիչ Խաչիկ Խան Սարանեանի (1848–1927) հետ (Տե՛ս իր կենսագրականը՝ Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը. 1926, էջ 671–2): Խաչիկ Խան Հայ Մամուլին մէջ ծանօթ է «Խաչիխար» ծածկանունով. մեռած է Դաւրէժ 1927 Հոկտ. 27ին. Տիկ. Վերգին եւս Պարսկաստան մեռած է: Ասոնց զաւակներէն առաջինն է Յովհաննէս Սարանեան (ծն. 1878ին Պոլիս), որ Nancyի երկրագործական վարժարանը ուսած՝ յետոյ մեկնած է Պարսկաստան, ուր Շահին ագարակներուն Տնօրէն կարգուած է. ամուսնացած է Զապէլ անունով օրիորդի մը հետ, որմէ ամուսնալուծուած է՝ Վերժին անունով աղջիկ մը ունենալէ վերջ. երկրորդն է՝ Գիսակ Սարանեան (ծն. 1881ին Պոլիս), որ յաճախած է Կարնոյ Սանասարեան վարժարանը, յետոյ անցած Պարսկաստան եւ գորգի վաճառականութեամբ զբաղած. ամուս–

նացած է Պէաթրիս Թիւրապեանի հետ եւ ունեցած 4 զաւակ.— Ցուլիանէ, Զարեհ, Տիգրան եւ Տրդատ, որոնք բոլորն ալ Պարսկաստան կը գտնուին եւ ամուսնացած են. Գիսակ Սարաճեան մեռած է իբր 1948ին, իսկ Տիկ. Պէաթրիս դեռ ողջ է. երրորդն է՝ Տիկ. Սոֆի Թիւրապեան (ծն. 1887ին, Պոլիս), որ նախ Սկիւտար Արապզատէ թաղը բնակած՝ յետոյ փոխադրուած է Գատըգիւղ. Նախակրթարանի ուսումը Էտիլեան վարժարանը առնելէ վերջ՝ շարունակած է Սպանդարեան Միջնակարգ վարժարանը, յետոյ 3–4 տարի ալ յաճախած է Notre Dame de Sion Ֆրանսական վարժարանը. 1906ին ամուսնացած է գորգի վաճառական կեսարացի Հայկ Թիւրապեանի (1875–1929) հետ, որ Գարակէօզեաններու գործակատարն եղած է. Տիկ. Թիւրապեան վարած է Սկիւտարի Որբանոցին Խնամակալութեան պատուակալ Տնօրէնուհիի պաշտօնը: Այս ազնիւ Տիկինն է որ մեզ հաճած է ղրկել — Պր. Գ. Բամպուքճեանի միջոցաւ — այս մանրամասնութիւնները: Տիկ. Սոֆի եւ Հայկ Թիւրապեան ունեցած են 2 զաւակ. Սարգիս (1907—1935), որ Մարսիլիա ամուրի մեռած է եւ Մառի, որ Ֆրանսադէտ ուսեալ անձ մըն է՝ ամուսնացած է Ցարութիւն Սինեմեանի հետ. վերջինս եազմայի վաճառական եւ Սկիւտարի Ս. Խաչ եկեղեցւոյ Թաղականութեան անդամ է. Մառի եւ Ցարութիւն Սինեմեան ունին Սեփոն անունով 11 տարեկան մանչ մը. չորրորդն

է Ներսէս Սարաճեան (ծն. 1889), գորգի վաճառական, որ ամուսնացած Զարուհի Մորճիկեանի հետ՝ մեկնած են Ամերիկա, ուր Ներսէս եւ Զարուհի ունեցած են 2 զաւակ.— Խաչիկ—Ճոն եւ Մարթա. վերջինս ամուսնացած է Ֆրանսահայ դրագէտի մը ազգականին հետ. հինգերորդն է՝ Տիկ. Անճիկ (ծն. 1881), ամուսնացած Նարիման Արզումանեանի հետ եւ ունեցած 2 վաղամեռիկ զաւակներ, որոնցմէ մին է Վահրամ. Նարիման մեռած է Պարսկաստան՝ 1959ին, իսկ Տիկ. Աննիկ մեռած է Պարիս՝ 1962ին: Խաչիկ Խան Սարաճեան եւ Տիկին Վերգին վեցերորդ զաւակ մ'ալ ունեցած են — Սոֆի, որ վաղամեռիկ եղած է:

Թէոդորոս — Գիսակ Պէյի եւ Յուլիանէ — Ֆուլիկի երրորդ զաւակը Զապէլ՝ կրկնանուն է. Զապէլ-Մաքրուհի (ծն. 1861 Փետր. 25), որ ամուսնացած է Աստուր Էմիրզէեանի հետ՝ ունեցած են 2 աղջիկ.— Թագուհի եւ Ֆուլիկ. վերջինս ամուսնացած է Իսպիրեան անուն անձի մը հետ՝ եւ ողջ է, կը գտնուի Պարիս. Տիկ. Զապէլ — Մաքրուհի եւ Աստուր մեռած են Ֆրանսա: Լեւոն-Գիսակ՝ Թէոդորոս-Գիսակի եւ Տիկին Յուլիանէի չորրորդ զաւակը ծնած է 1863 Ապրիլ 13ին. Իզմիրի փարոսներուն վրայ վերակացու եղած է. ամուսնացած է Ֆրանսուհիի մը հետ եւ ունեցած 5 զաւակ, որոնք Ամերիկա գաղթած են. Լեւոն Պէյ Գիսակ՝ Ա. Համաշխարհային պատերազմէն քիչ առաջ Իզմիրի մէջ մեռած է: Տիկ.

*Յուլիանէ* — *Ֆուլիկ* հինգերորդ *զաւակ մ՚ալ ունեցած է* 1864 *Փետր.* 21*ին, որ եղած է* մանչ *մը եւ ծնանելուն պէս մեռած է, ինչպէս կը գրէ վերոյիշեալ ձեռագիր Թերթիկը*: — 3. Կարապետ–Սմբատ Պապայեան (*ծն.* 1840 *Փետր.* 21), *Աննա Տատեանի եւ Հայրապետ Պապայեանի երրորդ զաւակը՝ եղած է ազնիւ եւ ուսեալ անձ մը.* Իզմիր *բնակելով վարած է Օսմ. Կայսրութեան* Փարոսներու Գործակալութեան Ընդհ. Տնօրէնութեան *պաշտօնը՝ սիրուելով ու յարգուելով բոլորէն. մեռած է* 1878 *Մայիս* 8*ին եւ թաղուած Իզմիրի* Ս. Ստեփանոս *եկեղեցւոյ շրջափակին մէջ* (*Տե՛ս* Հայրենիք, *Կ. Պ.* 1878 *Թ.* 431, *Մայիս* 20: — *Հմմտ. Արշ. Արարատեան*, 1878 *Թ.* 1092): *Կարապետ — Սմբատ մնացած է ամուրի*: — 4. Մարիամ (*ծն.* 1846 *Օգոստ.* 10) *ամուսնացած է* Գարեգին Գոլաննեան*ի* (*ծն.* 1849) *հետ, որ* 1928*ին Պոլիս մեռած է, իսկ Մարիամ մեռած է* 1921*ին՝ անզաւակ. ըստ Տիկ. Զ. Ֆէրուհխանի՝ եղած է պարզ, բարի եւ ազնիւ կին մը. բնակած են Մաքրիգիւղ*: — 5. Վերոնիկա (*ծն.* 1848 *Յուլ.* 20) *մեռած է ծաղիկ հասակի մէջ* 1865 *Յուլիսին*: — 6. Միհրդատ Պէյ՝ *Աննա Տատեանի եւ Հայրապետ Պապայեանի վեցերորդ եւ վերջին զաւակը ծնած է* 1850 *Յունուար* 31*ին եւ մեռած* 1915*ին.* 1877–8*ի ատենները եղած է* Արտաքին Գործոց Արձանագրութեան գրասենեակի առաջին արձանագրիչ, *իսկ* 1899*ին կը յիշուի* Արտաքին Գործոց Նախարարութեան

Օտար թղթակցութեանց Դիւանի Արձանագրութեանց Օգնական Տնօրէն (*Ընդարձակ Տարեցոյց*, 1899, *էջ* 178)։ *Միհրդատ Պէյ Պապայեան ամուսնացած է* Նուրիկ (*կը յիշուի նաեւ* «Նունիկ» *ձեւով*) Յ. Մարգարեանի *հետ* 1888 *Յունուար* 18*ին եւ ունեցած երկու զաւակ.* Ներսէս – Հայրապետ (*ծն.* 1888 *Նոյ.* 12 †1948) *որ Ֆրանսուհիի մը հետ ամուսնանալով՝ ունեցած է երկու զաւակ՝ եւ* Յովհաննէս – Խոսրով (*ծնած* 1889 *Դեկտեմբեր* 12), *որ Օսմ. Դրամատան պաշտօնեայ եղած է*, 1917*ին մեռած է Պոլիս*։ Տիկ. Նուրիկ *մեռած է Պարիս*։

Մաքրիգիւղի *Ծնունդ Ս. Աստուածածին եկեղեցւոյ* «Մկրտութեան Տոմար»*ի մէջ հետեւեալ արձանագրութիւնները կան* Միհրդատ Պապայեանի *որդւոց*՝ Ներսէս – Հայրապետի *եւ* Յովհաննէս – Խոսրովի մասին.— Ներսէս Հայրապետ, *ծն.* 12 *Նոյ.* 1888*ին*՝ *կը մկրտուի* 1888 *Դեկտ.* 11*ին ձեռամբ Տէր Պետրոսի եւ կնքահայրութեամբ Մինաս Մարգարեանի. կնոջ անունն է*՝ Նունիկ. *բնակավայր*՝ *Թաշէվլէր*, *Միհրդատ Պապայեանի ծննդավայրը*՝ *Մաքրիգիւղ*»։

.— «Յովհաննէս — Խոսրով *ծնած* 12 *Դեկտ.* 1889*ին մկրտուած է* 1890 *Փետր.* 23*ին ձեռամբ Տէր Պետրոսի եւ կնքահայրութեամբ Մինաս Մարգարեանի*»։

*Նոյն եկեղեցւոյ* «Ննջեցելոց Տոմար»*ի արձանագրութիւնը* Յովհաննէս – Խոսրովի *մասին կ՚ըսէ*.— «*Մեռած* 1920 *Դեկտ.* 12*ին*՝ 31 *տարեկան. յանկարծամահ մէկ վայր–*

*կեանի մէջ. Ս. Եկեղեցւոյ աջ կողմը թաղուած է»։*

*Ասոնց հայրը* — Միհրդատ Պէյ Պապայեան — *Ծնունդ Ս. Աստուածածին եկեղեցւոյ* «Ննջեցելոց Տոմար»*ին մէջ ունի սա՛ արձանագրութիւնը.— «Մեռած* 1919 *Սեպտեմբեր* 25, 70 *տարեկան. բնակավայր Ստասիոն ճատտէսի. մէկ վայրկեանի մէջ յանկարծամահ. Ս. եկեղեցւոյ մէջ* Յովհաննէս Պէյի *թաղը թաղուած է»։*



Միհրդատ Պէյ Պապայեան

*Յովհաննէս Ամիրայի աղջիկը՝* Աննա Պապայեան *մեռած է* 1889 *Հոկտ.* 31*ին եւ թաղուած* Յովհ. Ամիրայի քաղը: *Սա ունի իր* տապանագիրը, *որ հետեւեալն է.*

Աստ հանգչի
ՏիկԻն ԱՆՆԱ ՊԱՊԱՅԵԱՆ
ծնեալ Տատեան

ի 17 Յուլիսի 1819 թուականին Քրիստոսի
եւ վախճանեալ ի 31 Հոկտեմբերի 1889

*Տիկ. Աննայի ամուսինը՝* Հայրապետ Պապայեան *անձնապաշտ եղած է: Անծանօթ է մահուան թուականը եւ թաղուած վայրը:*

2. Առաքել – Սիսակ.— *Ծնած է* 1820 *Սեպտ.* 15*ին Պէշիքթաշ՝ Սիմոն Ամիրայի տունը եւ մկրտուած Տ. Գրիգորէն*[1]. *Նախնական կրթութիւնը ստացած է հօրենական տան մէջ՝ առանձին դաստիարակ–ուսուցիչներէ:* 1835*ին* 15 *տարեկան էր, երբ հօրը կ'ընկերանայ դէպի Եւրոպա՝ բարձրագոյն ուսման ընթացք մ'ընելու համար (Թ. Ազատեան, Տատեան Գերդաստանը, անդ՝ էջ* 22)*: Այս մասին մանրամասնութիւն կը պակսի: Վերադարձին կը կոչուի պետական պաշտօններու եւ կ'ըլլայ* առաջին թարգման

[1] *Այս* Տէր Գրիգորը *տոաջին* տանձրէցն *եղած է Տատեան Տան (Տե'ս* Օրագրութիւն *Յովհաննէս Ամիրայի, Թ.* 27*, էջ* 17)*: Ըստ Պէշիկթաշի ննջեցելոց Տոմարին՝ Առաքել ծնած է* Ֆիլիպէ *(Պլովդիւ, Բուլգարիա), սակայն* «Օրագրութիւն», *(Թ.* 27*, էջ* 17) *որուն կը յիշէ* Պէշիկթաշը *ծննդավայր:*

Պարիսի Օսմ. դեսպանատան (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1840 *թ.* 1), *ուր* կ'իւրացնէ վառօդաշինութեան բոլոր գիտելիքները, *որով կը դառնայ գլխաւոր օգնականը թէ՛ իր հօր Յովհաննէս Ամիրայի եւ թէ հօրեղբօրորդւոյն՝ Պօղոս Ամիրայի* (*Արշ. Արարատեան*, 1844 *թ.* 174)։

1842–3*ին զինքը կը գտնենք* Այ–Ստեփանոյի *վառօդարանի մէջ՝ Պօղոս Պէյ Տատեանի վառօդապետութեան տակ, ուր* 1843 *Հոկտ.ին* Սուլթան Աբտիւլ Մէճիտ Կայսեր *ներկայութեան վառօդարանին եւ մեքենաներու քննութեան առթիւ լուսաբանութիւններ կու տայ եւ Սուլթանը «Խիստ գոհ կ'ըլլայ»* (*Արշ. Արարատեան*, 1843 *թ.* 163)։

1847*ին Սուլթանը իրեն կը վստահի* Զէյթին Պուռնուի *մէջ երկրագործութեան փորձի համար հաստատուած* արքունական ագարակին կառավարութիւնը (*Արշ. Արարատեան*, 1847 *թ.* 280)։

1857*ին* Բատոսի (*Հոռդո՞ս*) *վառօդարանի Տնօրէնն է* (Մէճմուայր Հավատիս, *Կ. Պ.* 1857 *թ.* 173)։ 1857 *Մայիսին կը գրէ Պոլսոյ* Մասիս. «*Տատեան Առաքել էֆ.* երկրորդ վառօդապետ Օսմանեան Տէրութեան» (*Մասիս*, 1857 *թ.* 276)։ 1863*էն առաջ ստացած էր* «Միւթէմայիզ»*ի բարձր աստիճանը* (Ժամանակ, *Կ. Պ.* 1863, *էջ* 118)։

1857 *տարիին համար մութ է «Մասիսի» գրածը թէ «Առաքել Տատեան* երկրորդ

վառօդապետ է *Օսմանեան Տէրութեան*», *երբ յայտնի է թէ* 1857*ին* Ազատլըի վառօդապետ է *Յովհաննէս Ամիրայ եւ* Այ Ստեֆանոյի վառօդապետ *Պօղոս Ամիրայ Տատեան*:

*Ձենք գիտեր թէ ե՞րբ սկսեր եւ մինչեւ ե՞րբ շարունակուեր է Առաքել-Միսակ Պէյի վառօդապետութիւնը* Բատոսի վառօդարանի:

1869 *Ապրիլին, երբ կը վախճանի իր հայրը՝ Յովհաննէս Ամիրայ*, Մաքրիգիւղի վառօդապետ է *իւր կրտսեր եղբայրը՝* Գրիգոր-Միհրան, *մինչ ինքը՝ Առաքել Պէյ* «Թնդանօթարանի առաջին պաշտօնեաներէն մէկն է» (*Արշ. Արարատեան*, 1869 *թ.* 857):

*Հօրը մահէն քիչ վերջ Առաքել-Միսակ կը կարգուի* Վառօդապետ Ազատլըի Վառօդարանի *եւ այդ առթիւ իրեն կը շնորհուի* երկրորդ կարգի Իւլայի աստիճան: *Օրուան հայաթերթը հրճուանքով կ՚աւետէ այս ուրախ լուրը՝ գրելով. «Հանգուցեալ Վառօդապետ Տատեան Յովհաննէս Պէյի որդի* Առաքել-Միսակ Պէյ արքունի վառօդապետ *եւ միանգամայն* ծծումբի եւ աղբորակի գործարանաց Տնօրէն անուանեցաւ *եւ այս առթիւ* Իւլայի երկրորդ աստիճան շնորհեցաւ իրեն» (*Մասիս*, *կ. գ.* 1869 *թ.* 361, *Մայիս* 21): *Իսկ Ձմիւռնիոյ թերթը կը տեղեկագրէ. «Վառօդաշինութեան արքունի գործարանաց* Տեսչութիւնը Տատեան Վսեմաշուք Առաքել-Միսակ էֆ.ին յանձնուեցաւ *եւ այս առթիւ* Սըներֆի Սանի Ուլայի աստի-

նան շնորհուեցաւ անոր» (*Արշ. Արարատեան*, 1869 *Թ.* 858, *Մայիս* 24)։

*Այս պաշտօնը քանի՞ տարի կը վարէ Առաքել–Սիսակ Պէյ.— Լուսաբանութիւն տուող հին յիշատակութիւն մը չենք գտներ։ Թ. Ազատեան* (*Տատեան Գերդաստանը, էջ* 12), *առանց որեւէ փաստի կամ աղբիւրի՝*



Առաքել – Սիսակ Պէյ

*կը գրէ.* «Իրմով կը վերջանայ Ազատլըի վառօդարանի Տեսչութիւնը Տատեան Գերդաստանի»։ *Մինչեւ ե՞րբ տեւեց յետոյ։ Առաքել–Սիսակ մինչեւ իր մահը վառօդարանի Տեսո՞ւչ մնացած է։ — Ոչ երբեք։ Ոչ մէկ ապացոյց կայ առ այդ։ Ուրեմն մինչեւ ե՞րբ տեւած է Առաքել Պէյի Տեսչութիւնը։*

Ակնբախ իրողութեան մը ականատես կ'ըլլանք.— Ժամանակակից Հայ թերթերը, որոնք մինչեւ 1863 եւ 1869 լի էին յիշատակութիւններով՝ Տատեանց վառօդապետութեան մասին՝ յանկարծ կը լռեն այդ թուականներէն վերջ եւ հազիւ ցանցառաղէպ յիշատակութիւն մը կ'ընեն:

Առաքել-Սիսակ Պէյի վառօդապետութիւնը գոնէ մինչեւ 1877 տեւած է: Ստոյգ գիտենք որ 1877էն վերջ բնաւ չէ եղած Տեսուչ: Զի 1877 Յունիս 11ին կ'իմացնէ Իզմիրի թերթը թէ· «Տատեան Առաքել-Սիսակ էֆէնտին Կ· Պոլսոյ Առեւտրական խորհրդոյն անդամ կարգեցաւ» (Արշ· Արարատեան, 1877 Թ· 1068): Առեւտրական խորհրդոյն անդամ կարգելը՝ զինքը հեռացնել էր վառօդապետութենէն: Սուլթան Համիտ Բ·, որ տարի մը առաջ խլած էր Օսմ· Պետութեան ղեկը Սուլթան Մուրատի ձեռքէն՝ անիրաւ կերպով կը խլէր նաեւ Տատեանց դարաւոր ժառանգութիւնը եղող Օսմ· Արքունի վառօդապետութիւնը՝ Տատեան Գերդաստանի ձեռքէն: Իրաւունք ունէր Թորգոմեան գրելու սա տողերը· «Այ Ստէֆանոյի եւ Մաքրիգիւղի մէջտեղն է որ կառուցուած է Արքունի վառօդարանը, որուն վառօդապետները չա՛տ հին ժամանակներէ սկսուած Սուլթանական բարձր հրովարտակներով եղած են իրենց բարերարութիւններովն համբաւաւոր Տատեան Ամիրաները, յորդւոց յորդի մեծ հեղինակութեամբ եւ տիեզերահռչակ ճարտարու-

*թեամբ չարունակելով, մինչեւ որ....* Սուլթան Համիտ վրայ հասաւ ու Տատեաններու ձեռքէն չարաչար խլեց վառօդապետութեան պաշտօնը, անոնց արուեստագիտական հանճարին արդար արդիւնքն եղող մէկ պաշտօնը, անոնց դարաւոր մէկ իրաւունքը» (*Տոքթոր Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան Ստամպօլոյ Պատմութիւն. Վիեննա* 1913, *էջ* 406)։

*Առաքել Պէյ Տատեան ունեցած է նաեւ* ազգային գործունէութիւն, *եղած է առատաձեռն նուիրատու եւ* ազգային բարերար մը։ *Իր ջանքերով կարելի կ'ըլլայ հանել օրինական* «հէօնէք»*ը Մաքրիգիւղի եկեղեցւոյն* (*Թ. Ազատեան, անդ՝ էջ* 12)։ — *Պարտիզակի դպրոցին նպաստելու համար հիմնուած* Թորգոմեան Ընկերութեան *կը նուիրէ* 1000 *ղուրուշ* (Հայաստան, *կ. Պ.* 1847 *թ.* 66), *որ այդ ատեն խոշոր գումար էր*։

1853 *Հոկտ.* 21*ին* Ազգային Գերագոյն ժողովը 13 *անձերէ բաղկացած* «Ուսումնական ժողով» *մը կ'ընտրէ, որուն մէջ երեք Տատեաններ անդամ են գլխաւորութեամբ Առաքել Պէյ Տատեանի։ Կու տամ ամբողջական ցանկը.*

*Սարիմ Աղա Մաքսուտեան*
*Նիկողոս Աղա Պալեան*
Առաքել Աղա Տատեան
Յարութիւն–Գարեգին Աղա Տատեան
Սիմոն Աղա Տատեան

Աբրահամ Աղա Գ. Երամեան
Սերովբէ Աղա Վիչէնեան
Խաչատուր Աղա Պարտիզպանեան
Նահապետ Աղա Ռուսինեան
Յ. Վահան Աղա Արզուման
Գրիգոր Աղա Օտեան
Յարութիւն Աղա Հովուեան
Կ. Մ. Աղա Իւթիւճեան
(Մասիս, Կ. Պ. 1853 Թ. 72, Հոկտ. 28):

1865ին ընտրուած է Քաղաքական ժողովի անդամ (Արշ. Արարատեան, 1865 Թ. 766):

1868ի վերջը եւ 1869ի սկիզբը կ՚ընտրուի անդամ Ազգային խառն ժողովի (Անդ՝ 1869 Թ. 849, Յունուար 18):

1872 Փետր. 13ին կ՚ընտրուի Ազգային երեսփոխան՝ Մայր — Եկեղեցւոյ, Կէտիկ — Փաշայի եւ Գում — Գափուի Դրսի միացեալ թաղէն: Ազգ. Ընդհանուր ժողովը 1872 Մարտ 17ին կը վաւերացնէ այդ ընտրութիւնը:

1873ին ընտրուած է անդամ Տեղեկագրութեան Յանձնաժողովին, որ Ազգային Գերագոյն ժողովին ենթաժողով մըն էր (Փունջ, Կ. Պ. 1873 Թ. 811):

1873 Նոյ. 16ին կ՚ընտրուի — բացարձակ առաւելութեամբ քուէից — Քաղաքական ժողովի անդամ (Անդ՝ 1873 Թ. 976) եւ նոյն ժողովի Դիւանին Ատենապետ (Անդ՝ Թ. 977):

Առաքել Պէյ Տատեան հիմնադիր եւ կա–

ուսցող եղած է Պոլսոյ Էյուպ թաղի Ս. Աստուածածին եկեղեցւոյ եւ նոյն թաղին Հայ դպրոցին: Դժբախտաբար ծանօթութիւն մը չենք գտած թէ Առաքել Պէյ ե՞րբ ըրած է ազգային բարեգործութեան այդ գործը: Մանզումէի Էփքեարին կը պարտինք յիշատակութիւնը լոկ: Ահա թէ ի՛նչ կը պատմէ թերթը 1870 Յուլ. 7ին:

«Յուլիս 5 Կիրակի օրը Թաղիս (Էյուպ) Ս. եկեղեցւոյ տօնախմբութեան առթիւ Գեր. Խորէն Ս. Արքեպ.ը բարեհաճեցաւ գալ եւ Ս. Պատարագ մատուցանելով հոգեւորապէս մխիթարել գթաղեցիս, ուր ներկայ էին նաեւ Տատեան Վսեմ. Առաքել Պէյի համեստափայլ Տիկինը, Վսեմ. Ներսէս Պէյ եւ Արթին Պէյի ազնիւ որդին եւ ուրիշ պատուաւոր ազգայինք... եկեղեցւոյ աւարտումէն ետեւ Վսեմ. հանդիսականաց հետ բարեհաճեցաւ այցելել Թաղիս երկսեռ վարժարանները եւ քաջալերել զմանկտիս... Այս առթիւ կը մատուցանեմք մեր շնորհակալութիւնները առ Տատեան բարեխնամ Գերդաստանն եւ մասնաւորապէս Վսեմ. Առաքել Պէյն, որուն շնորհիւ ունիմք եկեղեցի մեր աղօթքները առ Աստուած մատուցանելու եւ դպրոց մը մեր աղքատիկ մանկտին կրթելու եւ լուսաւորելու համար, որոց կը պարտաւորիմք նաեւ Թաղիս յառաջադիմութիւնը եւ Թաղեցւոց ազգասիրական եւ ուսումնասիրական եռանդեանց խրախուսանքը» (Մանզումէի Էփքեար, Կ. Պ. 1870 Թ. 1289):

*Առաքել — Սխալ Պէյ Տատեան կարեւոր դեր ունեցած է նաեւ* Մաքրիգիւղի թաղին կրթական գործին մէջ: 1887*ի վարժարանի հիմնարկութիւնը իր նուիրատուութեամբ կրցած է տեղի ունենալ: Ժամանակակից* Մասիս *կը տեղեկագրէ* 1887 *Օգոստ.* 15*ին. «Կիւրակէ օրը* Մաքրիգիւղի *մէջ տեղի ունեցաւ* Տատեան վարժարանի Հիմնարկութիւնը, *ձեռամբ Գեր. Խորէն Նարպէյ Ս.ի*: Այս վարժարանը նուիրուած է անուան հանգուցեալ Տատեան Առաքել Պէյի, որ ի կենդանութեան իւրում 470 ոսկւոյ գումար մը եւ 90 ոսկւոյ արժողութեամբ գետին մը յատկացուցած էր այս նպատակաւ» (*Մասիս*, *Կ. Պ.* 1887, *էջ* 251):

*Սխալ է, հետեւաբար*, Պետրոս Կարապետեանի (90*ամեայ Յոբելենական Յիշատակարան Պաղըրքէօյի Ս. Աստուածածին եկեղեցւոյ եւ Տատեան վարժարանի*, *Կ. Պ.* 1934, *էջ* 62—3) *կարծիքը թէ* Տատեան վարժարանի հիմնումը 1892*ին տեղի ունեցած է*:

*Առաքել — Սխալ Պէյ Տատեան* հիմնադիր եւ բարերար *կը ճանչցուի* Պէշիկթաշի վարժարանին: *Թաղին* Թաղական խորհուրդը *կը գրէ* 1888*ին*. *«Երախտագիտութիւն ունինք վարժարանիս* հիմնադիր եւ բարերար *Հանգ*. Տատեան Առաքել Պէյի, *որ իւր հոգածութեան նիւթ ըրած էր վարժարանիս եւ որ* եկեղեցական մեքենայ մը, զանգակ մը, ինչպէս նաեւ թանգարան մը Հայկազեան բառարաններ նուիրած է վարժարանիս»

*(Տեղեկագիր Թաղ. Խորհրդոյ Պէշիկթաշի. Կ. Պոլիս* 1888, *էջ* 23) ։

*Պէշիկթաշի խորհրդարանի սենեակը դտնուող* Հայկազեան Բառագրքի Ա. Հատոր-ին *մէջ կայ Յիշատակարանս.*

*Վսեմապատիւ*
*Առաքել Պէյ Տատեան*
*Վառօդապետն*
*Նուիրէ յաւէրժական յիշատակ*
*Բառգիրքս Հայկազեան*
*Թանգարանին*
*Մաքրուհեան Ե. Վարժարանին*
*Պէշիկթաշ*
1885 *Սեպ.* 9

*Իր կեանքին մէջ ազգասիրական եւ բարեգործական ազնիւ ոգին վեր հանող ուրիշ բազմաթիւ մեծ ու պզտիկ դէպքեր ու պարագաներ կան, որոնցմէ կ'ուզենք յիշել հետեւեալը.*

1829*ին* Նիկոմիդիա *ծնած ուշիմ տղայ մը* — Ազարիկ Գէորգեան — *իր պաշտպանութեան տակ առնելով՝ Առաքել-Սիմակ Տատեան զայն Իզմիր տանելով* Մեսրոպեան վարժարանը *կը դնէ՝ բոլոր ծախքերը իր վրայ առնելով ։ Տղան ուսումը աւարտելով՝* 1850*ին շրջանաւարտ կ'ըլլայ եւ կը վերադառնայ Նիկոմիդիա ։ Հոս* 7 – 8 *տարի ուսուցչութիւն կ'ընէ եւ կը հասցնէ շատ մը ուսումնաւարտներ, որոնցմէ մին է նաեւ յետագային նոյն քաղաքի Առաջնորդ՝* Ստե–

փանոս Արքեպ. Յովակիմեան: Գէորգեան 1859ին կը մտնէ պետական ծառայութեան մէջ եւ կը վարէ իր ծննդավայրի հեռագրատան եւրոպական լեզուաց ճիւղին Տնօրէնութեան կարեւոր պաշտօնը, միեւնոյն ատեն աշխատակցելով Պոլսոյ Հայ թերթերուն: Գէորգեան շատ սիրուած անձ մը եղած է Նիկոմիդիոյ մէջ: Կը վախճանի 1907 Մայիս 4ին (Տե՛ս մանրամասնօրէն Արեւելք, Կ. Պ. 1907 Թ. 6486):

Առաքել Պէյի Նկարագրին քանի մը ցայտուն գծերը երեւան կը բերեն հետեւեալ տողերը: 1875ին կը վախճանի իր եղբօր՝ Գրիգոր-Միհրանի Թարմատի կինը՝ Նեւրիկ Տիկին: Ամբողջ ընտանիքը եւ Գերդաստանը սուգի մէջ ընկղմած է: Առաքել Պէյ Գերդաստանի երէցն է եւ իբրեւ այսպիսի՝ տեսէք թէ ինչ կը գրէ իր մասին վերյիշեալ պատահանդէսը նկարագրող տան մտերիմ անձը. «...Այս երկու երիտասարդ (Գրիգոր-Միհրան Պէյի՝ իր եղբօր եւ Ստեփան Միսաքեանի՝ Նեւրիկի եղբօր) Նեցուկ եւ մխիթարիչ էր Վսեմ. Առաքել Պէյ, Տատեան եղբարց առաւել հայրն քան թէ եղբայրը, որոյ թէեւ սիրտը վշտաչարչար, բայց իւր ընտանեաց ցաւոց սփոփիչն է միշտ եւ ձեռընտու եւ օրինակ անդրդուելի յուսոյ ի խնամս Արարչին» (Մասիս, Կ. Պ. 1875 Թ. 1687):

Առաքել Պէյ Տատեան ամուսնացած է 1841ին Օր. Սրբուհի Յ. Մոսիկեանի հետ:

*Օրիորդին կեանքի եւ իր ընտանիքի մասին ծանօթութիւն մը գտած չենք։ Եղած է բարեզգած անձ մը եւ իր կենդանութեան ազգին ըրած նուիրատուութիւններով արժանի եղած է* ազգային բարերարներու *շարքին մէջ դասուելու*։ 1888 *Յուլ. 23ին կը տողէ Պոլսոյ* Սուրհանդակ. «*Պէշիկթաշի Թաղ. Խորհրդոյ կողմանէ տպագրեալ քառամեայ տեղեկագրէն ուրախութեամբ կը տեղեկանանք ի մէջ այլոց* Ազն. Տիկին Սրբուհի Առաքել Պէյ Տատեանի *Պէշիկթաշի եկեղեցւոյն հարուստին կողմը դանուած* իւր պարտէզէն 42 կանգուն գետին նուիրելը, որ եկեղեցւոյն շրջափակին մէջ առնուած է։ *Յիշեալ բարեպաշտուհի Տիկինն* Նոյն պարտէզէն մաս մ'ալ եկեղեցւոյ նուիրելու փափաք յայտնած լինելով, *Թաղ. Խորհուրդն այս մասին բանակցութեան մէջ է*» (*Սուրհանդակ, Կ. Պ.* 1888 *Թ.* 5)։

*Տիկին Սրբուհի իր ունեցած* երկու տուներն *ալ Ազգին նուիրած է*։

*Տիկ. Սրբուհի կը վախճանի* 1893 *Սեպտ.* 16*ին*։ *Այդ առթիւ կը գրէ* Արեւելք. «Տիկին Սրբուհի Ա. Տատեան (*ծնեալ* Մոսիկեան) *կողակից Վսեմափայլ Հանգուցեալ Առաքել Պէյի Տատեան*, յետ երկարատեւ եւ տաժանելի հիւանդութեան *հանգեաւ ի Տէր ի խոր սուգ համակելով Տատեան, Սարգիս Պալեան, Մոսիկեան, Քարաքէհեայ, Պապայեան, Զայեան, Թօփհանելեան, Բաշալեան եւ Տէվլէթեան ընտանիքներն*» (*Արեւելք*,

Կ․ Պ․ 1893 Թ․ 2886, Սեպտ․ 17)։ Յուղարկաւորութիւնը տեղի ունեցած է Սեպտ․ 18ին՝ Պէշիկթաշի Ս․ Աստուածածին եկեղեցին, ուր պատարագած է Բարթուղումէոս Ծ․ Վ․ Պաղնեանն եւ մարմինը փոխադրուած է Մաքրիգիւղ եւ ամփոփուած Տատեանց Դամբարանին մէջ (Արեւելք, անդ․ տե՛ս նաեւ Հայրենիք, Կ․ Պ․ 1893 Թ․ 579)։

Մագրիգիւղի Ծնունդ Ս․ Աստուածածին եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ի արձանագրութիւնը, զոր ձեռքիս տակ ունիմ՝ մեծ տարբերութիւն կը ներկայացնէ Տիկ․ Սրբուհիի ծննդեան թուականի մասին։ Ահա այդ արձանագրութիւնը։

«1893 Սեպտ․ 18 — Սրբուհի, կողակից Տատեան Առաքել Պէյի, 63 տարեկան, բնակավայր Պէշիկթաշ, եկեղեցիի փողոց․ հիւանդութիւն՝ երկարատեւ սրտի․ տանեցէց Տ․ Յովհ․ Մկրեան․ Մագրիգիւղի Ծնունդ Ս․ Աստուածածին եկեղեցւոյ պահարանի կողմը թաղեցաւ»։

Իսկ Առաքել Պէյ կը կնքէ իր արդիւնալից կեանքը 1886 Նոյ․ 18ին (ո՛չ թէ 21ին, ինչպէս գրած է Թորգոմեան, անդ՝ Ա․, էջ 402) 66 տարեկան[1]։ Արեւելք կը ազդէ 1886 Նոյ․ 19ին գրելով․ «Ցաւօք կը ծանուցանենք թէ Արքունի վառօդապետ վսեմ․ Առաքել Պէյ իւր մահկանացուն կնքեց երէկ։ Հանգուցեալն իր երախտաարդութեան ժամանակ

[1] Սխալ է նաեւ Պէշիկթաշի եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ի արձանագրութիւնը, որ Առաքել Պէյի մահուան թուական յիշած է 1884 Դեկտ․ 24։

*աշխոյժ մասնակցութիւն մ'ունեցած էր* ազգային գործոց մէջ *եւ վարած* երեսփոխանութեան, Ուսումնական եւ այլ խորհրդոց անդամակցութեան պաշտօններ *եւ* 1863*ին անդամ եղած էր* Սահմանադրութեան Գործադիր Յանձնաժողովին... *վարած է գանազան պաշտօններ մասնաւորապէս Արքունի վառօդարանի եւ* Հանրօգուտ Շինութեանց Նախարարութեան մէջ: *Եղած է նաեւ* Տնօրէն Առեւտրական Նախարարութեան արուեստական բաժնի» (Արեւելք, 1886 *Թ.* 864, *Նոյ.* 19 *եւ Թ.* 865):

*Յուղարկաւորութիւնը մեծահանդէս կատարուած է Պէշիկթաշի Ս. Աստուածածին եկեղեցին՝* 3000 *սգաւորներու ներկայութեամբ, որոնց մէջ կը գտնուէին բազմաթիւ Փաշաներ, դեսպաններ, հայ եւ օտար բարձրաստիճան անձեր: Կը նախագահէ Ս. Պատրիարքը, կը պատարագէ Խրիմեան Հայրիկ, կը դամբանախօսէ Նարպէյ: Մարմինը կը հանգչեցուի Տատեանց ընտանեկան դամբարանին մէջ՝* Մաքրիգիւղ (*Արեւելք, անդ, Թ.* 867):

Հայրենիք (*Կ. Պ.* 1886 *Թ.* 2165) *գուժելով Ազգ. մեծ սուգը՝ կ'աւելցնէ որ* «Բ. Դրան Արտաքին Գործոց Նախարարութեան խաւազները դրկուած էին ի պատիւ հանգուցելոյն»:

*Առաքել Պէյ Տատեան եւ Տիկ. Սրբուհի՝ իրենց ամուսնութենէն ունեցած են միակ դուստր մը* — Մաքրուհի — *ծնած* 1842*ին՝ ստացած է շատ խնամեալ կրթութիւն մը:*

Երաժշտական տաղանդ ունենալով՝ հետեւած է դաշնակահարութեան։ Թէոդիկ տանց մանրամասնութիւն ունենալու՝ կը հաստատէ որ Մաքրուհի եղած է քաջ դաշնակահարուհի մը եւ իր ամուսնոյն՝ Սարգիս Պալեանի հետ յօրինած է հանրածանօթ «Մայր Արաքսի» երգին եղանակը. Թաղուած է ձայնագրութեան իր սիրական տետրներուն հետ (Թէոդիկ, Ամէնուն Տարեցոյցը. 1921, էջ 258)։

Մաքրուհի ամուսնացած է Պոլսահայ հռչակաւոր Արքունի ճարտարապետ Պալեան Գերդաստանի անուանի մէկ զաւկին՝ Սարգիս Պէյ Պալեանի հետ։ Պսակը տեղի կ'ունենայ 1859ին։

Արքունի ճարտարապետ Սարգիս Պալեան՝ որդին է Արքունի ճարտարապետ Կարապետ Պէյ Պալեանի († 1866 Նոյ. 15), ծնած 1835 Փետր. 17ին։ Իր նախնական ուսումը ընտանեկան շրջանակին մէջ ստանալէ յետոյ՝ 1843ին վերջերը Պարիս կը ղրկուի, ուր կրկու տարուան շրջան մը բոլորելէ վերջ կը վերադառնայ Պոլիս։ Հոս քանի մը տարի կ'աշխատակցի իր հօր՝ պետական ճարտարապետութեան մէջ։ 1847ին երկրորդ անգամ Պարիս մեկնելով՝ կը մտնէ Sainte — Barbe վարժարանը, որուն ընթացքը լրացնելէ վերջ՝ կ'անցնի Ecole Centrale, յետոյ Ecole — Beaux Arts, իր ճարտարապետական արհեստը կատարելագործելու եւ մեքենագիտական ու ուսողական գիտութիւններն ամբողջացնելու համար։ 1855ին կը

վերադառնալ ծննդավայրը՝ Պոլիս եւ կը ձեռնարկէ ճարտարապետական գործառնութեանց։ 1866ին երբ հայրը՝ Կարապետ Պէյ Պալեան կը մեռնի՝ ինքը կը յաջորդէ հօրը գործին մէջ՝ գնահատուած ըլլալով իր տաղանդովն ու արժանիքովը։

Սարգիս Պէյ՝ գրեթէ միշտ աջակից ունենալով իր մեծատաղանդ եղբայրը՝ Յակոբ Պէյ Պալեան՝ ճարտարապետած է Պէյլէրպէյի եւ Չրաղանի հոյակապ պալատները, Պէյքոզի Թոքաթլի — Քէօշկը, Ալէմտաղի, Հէքիմտաղի Չիֆթլիկները, Գալէնտէրի, Պէշիկթաշի Քէօշկերը, Պէյքոզի Հիւնքեար իսքէլէսիի դաշտավայրին մէջ ի պատիւ Ֆրանսայի Էօժէնի Կայսրուհիին եւ Աւստրիոյ Ֆրանց Եոզէֆ Կայսեր շինել տրուած չարժական Քէօշկը, Քեաղըտհանէի եւ Գանտիլլիի փառաւոր պալատները, Ազ — Սերայի մզկիթը, որ Արաբական ճարտարապետութեան հրաշակերտ մըն է, Կիւմիւշ — Սույի զօրանոցը, Ղալաթա — Սէրայի դպրոցը, Իւսկիւտար Գուշու — Եօլին Վալիտէ — պաղը, Քէօշկը, Այազ — Աղայի Քէօշկը, Պալ— Մումինի չիֆթլիկը, Չատըր — Քէօշկը, Չրաղանի պահականոցը, Թոփ — Գափուի եւ Քիւչիւք — Չէքմէճէի Քէօշկերը, Նիկոմիդիա Սուլթան — Չիֆթլիկին մէջ շինուած գեղջկական շէնքը, Քեաղըտհանէի մզկիթը, Մաչքայի Զինանոցը, Զօրանոցը եւ Պահականոցը, Պէշիկթաշի դպրոցը, Զինճիրլի — Քույուսիի Քէօշկը, եւայլն։ Ասոնք իրենց տեսակին մէջ մէկմէկ ճարտարապետական

*ու արուեստագիտական հրաշակերտներ են։ Ո՛չ միայն Թուրք Սուլթաններէ, այլ եւ օտար կայսրներէ բարձր գնահատանքներ, պատիւներ, պատուատիճաններ ու շքանշաններ ստացած է Սարգիս Պալեան։*

*Պոլսէն դուրս ալ գործած է Սարգիս Պալեան, օրինակ՝* Սելանիկ, *ուր* Սուլթան Մէճիտի *ընկերանալով՝ մէկ գիշերուան մէջ շինած է մարմարինէ աւազան մը՝* Պէշ — Չինար, *ուր կ՚ընդունուին տեղւոյն երեւելիները։*

*Սարգիս Պէյ հռչակուած է նաեւ արտասահմանեան Մամուլի մէջ։* Le Monde Illustré *Սարգիս Պէյի լուսանկարը հրատարակելով՝ մեծ գրուատիքներով խօսած է իր վրայ, որուն արքայական նուէր մ՚ըրած է Սարգիս Պալեան 500 լիրայի հսկայ գումար մը գրկելով։ Նոյնպէս* Revue de Constantinople *հանդէսը վեր հանած է Սարգիս Պալեանի ճարտարապետական անվիճելի արժանիքները։*

*Սարգիս Պէյի եւ Տիկ. Մաքրուհիի ամուսնական երջանկութիւնը միայն չորս տարիի չափ կը տեւէ.— 1863 Մարտ 3ին դժբախտութիւնը կ՚ունենայ Սարգիս Պէյ Պալեան իր մանկամարդ ամուսինը կորսընցընելու բոլորովին կանխահաս մահով մը։ Ժամանակակից* Մասիս *կը գուժէ 1863 Մարտ 9ին։*

ՀԱՆԳԻՍՏ

Ազնուափայլ Մաքրուհի Տիկնոջ, կողակցի Մեծ. Սարգիս Աղայի Պալեանի, Ար–

քունի ճարտարապետի : *Տատեան Վսեմա-շուք Յովհաննէս Պէյի Թոռն եւ* Մեծ․ Առաքել էֆ․ի միակ դուստր, *որ իր* քսանամեայ մատաղ հասակին մէջ *ամէն բնական եւ բարոյական ձիրքերով եւ երջանկաւէտ բաղդի մը գեղածիծաղ ժպիտներովը փայլեալ, իր գորովագութ ծնողացը միակ մխիթարութիւնը եւ սիրելի ամուսնոյն երջանկութիւնն էր,* ամսոյս 3ին *Կիրակի օրը կարճօրեայ հիւանդութեամբ մը իւր ծաղկափթիթ կեանքը կնքեց, անմխիթար սուգի մէջ թողլով Պալեան եւ Տատեան Մեծատոհմ Գերդաստանները :*

*Երկուշաբթի օրը հանգուցելոյն յուղարկաւորութիւնը կատարուեցաւ մեծ հանդիսիւ եւ մարմինը Պէշիկթաշէն* «Օրթագիւղ *տարուելով՝ իր* Տոհմին դամբարանին *ամփոփուեցաւ :*

*Այնուհետեւ հանգուցեալը* տղայ հասակէն մեծահոգ խնամքով դաստիարակուած, բարի լծակից եւ բարի մայր ըլլալու համար ամէն պէտք եղած հանգամանքները լիովին իր վրայ բովանդակած՝ *ամուսնական սիրոյն պտուղը վայելելէ առաջ՝ իր գեղածիծաղ կենաց պայծառ արեւը մէկէն ի մէկ՝ նուաղեցաւ : Ա՛յսպէս տնօրիներ է Նախախնամութեան անյեղլի վճիռը՝ որուն առջեւ խոնարհիլ միայն կը մնայ տկար մահկանացուացս»* (Մասիս, Կ․ Պ․ 1863 *Թ*․ 578, *Մարտ* 9 :— *Հմմտ*․ *Նաեւ* Մեղու, Կ․ Պ․ 1864 *Թ*․ 228, *Յունուար* 25) :

Այս տարաժամ մահուան վրայ Սարգիս Պէյ Պալեան ա՛յնքան կը զգացուի որ ամիսներով կու լայ ու կը սգայ իր Տիկնոջ մահը եւ ոչ մէկ բան կրնայ զինքն սփոփել։ Յաւերժացնելու համար իր Տիկնոջ յիշատակը՝ անոր թողած գոհարեղէններով շինել կու տայ Պէշիկթաշի մէջ երկսեռ վարժարան մը, զոր կը յորջորջէ իր Տիկնոջ անունով — Մաքրուհեան Վարժարան։

Այս մասին կը գրէ Մեղու (Կ. Պ. 1864 Թ. 228). «Տատեան Մեծ. Առաքել Էֆ. իր սիրելի եւ արժանայիշատակ աղջկան անունը անմահացնելու համար՝ իր փեսային հետ խորհրդակցելով՝ որոշեց որ հանգուցեալին գոյքը ամէնքը մէկէն վաճառուելով անոր արդիւնքովը Պէշիկթաշի մէջ աղջկանց եւ մանչերու կրկին դպրոցներ շինվին Մաքրուհեան վարժարան անունով»։

Շէնքը կը կառուցուի 1866ին եւ կանգուն է մինչեւ օրս։ Այս Վարժարանը Ազգին տուած է ուսեալ անձեր, ինչպէս՝ Տիկ. Եփիմէ Աւետիսեան (Անայիս), Դոկտ. Միհրան Քէմհաճեան, Արշակ Չօպանեան, եւ այլն (Տօքթ. Վահրամ Յ. Թորգոմեան, Երեմիա Չէլէպիի, անդ՝ Բ., էջ 658—9)։

Տիկ. Մաքրուհիի կիսանդրին կը պահուի Մաքրուհեան վարժարանի սրահին մէջ, զոր 1960ին առիթ ունեցանք տեսնելու։ Այս կիսանդրին Պարիսի մէջ շինուած է եւ նիւթը պղինձ է (Մասիս, Կ. Պ. 1866 Թ. 755)։

Պոլսոյ «Կիլիկիա» կիսամսեան 1863

*Մարտ 3 թուականով ողերգ մը նուիրած է* Տիկ. Մաքրուհիի՝ *մահուան առթիւ, 9 տու-նով ոտանաւոր մը, որմէ ահա նմոյշ մը.*

*Է՞ր, Աստուած, ոչ քեցեր*
*Ըզքոյդ մըկրատ մահարեր.*
*Տա՞տ խակ արդեօք դու վարկար*
*ԸզՀայուհին բարեփառ:*

*Քանի՛ աղէտ, տե՛ս, եհաս*
*Ընդ քոյդ հարուած վաղահաս.*
*Ձեռն ի ծնոտ լային, լան*
*Ե՛ւ Տուն Տատեան ե՛ւ Պալեան:*

*Վա՛հ, տարաժամ կորուսին*
*Զանզոյգ զխուրեանց Սիրելին.*
*Չէ՛, չէ՛ այլ եւս* Մաքրուհի,
*Որ էր անուանն արժանի:*

*...Ցանեցին ցանդ փունջք ծաղկանց*
*Ըզսուրբ շիրմաւն վեհապանծ.*
*Եւ Հայ Տիկնանց մեծափառ*
*Ա՛յս միշտ լիցի ի տիպար*

(Կիլիկիա, *Կ. Պ.* 1863 *թ.* 7, *էջ* 158–9):

*Սարգիս Պէյ Պալեան եւ Տիկ. Մաքրու-հի զաւակ չեն ունեցած:*

*Ինքը Սարգիս Պէյ իր մահկանացուն կը կնքէ* 1899 *Նոյ. 7ին* Քուրու — Չէշմէի *իր քարակարկառ կզզեակին մէջ* (*Տե՛ս ընդար-ձակ* Ծաղիկ, *Կ. Պ.* 1899 *թ.* 56 – 58 :— Թէոդիկ, *Ամէն. Տարեց.* 1921, *էջ* 263—6):

*Կը թաղուի* Սկիւտար — Պաղլարպաշիի

*Հայ գերեզմանատունը, ուր իր Գերդաստանի չիրիմներէն ութը հատ տեսած էի* 1960 *Հոկտ.* 16*ին, երբ ինքնաշարժով այցելութիւն մը կու տայի ընկերովի մեր Հայրերուն հետ: Ահա Սարգիս Պէյ Պալեանի* տապանագիրը՝ *ա՛յնքան անշուք, ինչպէս առհասարակ Պալեան Արքունի ճարտարապետներու չիրիմները.*

«Վսեմաշուք Սարգիս Պէյ Պալեան Արքունի Ճարտարապետ, վախճանեալ Գուրուչէշմէի մօտ. իր կառուցած կզգիակին մէջ»:

3. Յուլիանէ.— *Յովհաննէս Ամիրայ Տատեանի երրորդ դուստրը՝* Յուլիանէ *ծնած է* 1823 *Ապրիլ* 10*ին: Հայրը, որ օրը օրին, ժամը ժամին նշանակած է իր զաւակներու* ծննդեան թուականը՝ *Յուլիանէի համար կը գրէ.* «*Ծնունդ* Յուլիանէ Տուտուին, *ի* 1823 *Ապր.* 10, *ի գիշերի, յորում լուսանայր Զորեքշաբթին՝ ի ժամ հինգերորդի, յաւուր երեքշաբաթու: Աստուած պարկեշտութեամբ եւ երկար ամօք պահեսցէ*»:

*Յուլիանէ, կոչուած նաեւ* «Ֆուլիկ» *կամ* «Յուլիանէ — Ֆուլիկ»՝ *ազնիւ դաստիարակութիւն մը ստացած է հօրենական տան շրջանակին մէջ եւ եղած առաքինազարդ օրիորդ մը, որուն ձեռքը խնդրած է պատուաւոր դիրքի տէր, Տատեան Տան մօտիկ եւ գործակից անձ մը —* Ստեփան Զաջեան: *Վերջինս Թուրք կայսերական պետութեան մէջ կանուխէն պետական պաշտօններ*

*վարած ըլլալով՝* Տնօրէն *կը կարգուի* Հէրէքէի կայսերական գործարանին *եւ մնայուն Տնօրէն* Իզմիտի ասուեղինաց գործարանին: *Պոլսոյ* Հայաստան *կը գրէ* 1847*ին*.

«Ձուխայի թագաւորական գործարանը, *որ* Իզնէմիտու եւ Պաղչէճիկու *մէջտեղը շինուեցաւ... այս գործարանիս վերակացութիւնը գերապատիւ վառօդապետ Տատեան Ամիրայից յանձնուած է...* Ասոնց կողմէն նոյն գործարանը մնայուն վերակացու (*Տնօրէն*) դրուած է արժանայարգ Ստեփան Աղային Յովհաննէսեան Ջայեանց» (Հայաստան, *Կ. Պ.* 1847 *Թ.* 66: — *Տե՛ս նաեւ* Բիւզանդիոն, *Կ. Պ.* 1902 *Թ.* 1696):

*Ստեփան Ջայեանի ազգային գործունէութիւնը* 1840*ական թուականներէն կը սկսի*: 1847*ին* Պարտիզակ *երթալով՝ ամբողջ գիւղը մշակութային կեանքի կը մղէ խաղաղեցնելով ներքին երկպառակութիւնները*: *Ժամանակակից հայ թերթը կը տողէ*. «Մեծապատիւ Արքունի Գործակալ Ստեփան Աղայի Ջայեան... *ճշմարիտ ազգասիրութեան ոգւով... սկսաւ նախ բորբոքել զեռանդն ազգասիրութեան ի հոգիս յարգոյ երեւելեաց գիւղիս, սերմանելով ի նոսա զարդիւնս սիրոյ եւ խաղաղութեան եւ յետ այնորիկ յորդորեալ ի փոյթ պայծառութեան ազգին՝ հաստատեաց ի մէտս նոցունց զտենչ ուսումնասիրութեան մանկտւոյն*» (*Հայաստան, անդ*):

*Պարտիզակի վարժարանին պաշտպան նորահաստատ* «Թորգոմեան Ընկերութեան»

500 *ոսկի կը նուիրէ* (*Հայաստան, անդ*), *մեծապէս ստարելով Ընկերութեան կրթական նպատակին* : — 1849*ին* Արմաշի Ուսումնարանին *գլխաւոր պաշտպանն է Ստեփան Չայեան* (*Տե՛ս* Արշալոյս Արարատեան, Չմիւռնիա 1849 *թ*. 353) :

*Ստեփան Չայեան ունէր* Պէյութեան *պատուատիճան եւ շատ մը շքանշաններ* : *Իր լուսանկարը չենք գտած* :

*Յուլիանէ եւ Ստեփան ամուսնական երջանիկ բոյն մը կազմած են եւ օրհնուած* հինգ զաւակներով·— Իլիաս Պէյ, Օհաննէս Պէյ (*եղած է անուանի* բժիշկ *մը, 1863ին յիշուած* Մասիսէն [1863 *թ*. 618]), Երուանդ Պէյ, Տիգրան Պէյ եւ Օր· Մարիամ, *որոնցմէ ամէնէն նշանաւորն է* Իլիաս Պէյ (1840–1902) *Ապր*· 21), *որ եղած է* Անդամ Պետական խորհրդոյ *եւ ունէր* Իւլայի առաջին աստիճան *եւ* Առաջին կարգի Օսմանիէ եւ Մէճիտիէ պատուանշանները (Արեւելք, Կ. Պ. 1902 *թ*. 4926 : — Բիւզանդիոն, Կ· Պ. 1902 *թ*. 1696) :

1872 *Ապրիլ 22ին կը գրէ Իզմիրի Հայաթերթը*· «Մեծաշուք Իլիաս էֆ· Չայեան, *որ Բարձր. դրան Արտաքին Գործոց Պաշտօնատան* (*Նախարարութեան*) *արձանագրութեանց Դիւանին Տեսուչ* (*Էմլաք Միւտիրի*) *է*՝ Բորթուկալի թագաւորութեան Յիսուսի Քրիստոսի զինուորական կարգին Հրամանատար (Commandeur) *անուանեցաւ*» (*Արշ· Արարատեան*, 1872 *թ*. 934) :

Իլիաս Պէյի ընտանեկան կեանքի մասին հաճած է հետեւեալ մանրամասնութիւնը ընձեռել Տիկին Զարուհի Ֆէրուհխան (Կ. Պոլիս), մեծապէս երախտապարտ կացուցանելով զմեզ. «Իլիաս Պէյ Զայեան ամուսնացած էր Իզմիրցի Աննիկ Պալթազարեանի (աղջիկը Արշ. Արարատեանի խմբագիր Ղուկաս Գ. Պալթազարեանի [Արշ. Արարատ. 1875 Թ. 1073] հետ մտացի ու զարգացած անձ մը — որ քոյրն էր Օր. Թագուհի Պալթազարեանի՝ հիմնադիր Դպրոցասիրացին[1]: Այս ամուսնութենէն ունեցած են 3 մանչ եւ մէկ աղջիկ: Անդրանիկ որդին է Յովհաննէս († 1913) մեռած տակաւին շատ երիտասարդ՝ Պոլսոյ մէջ: Երկրորդ որդին՝ Sofpէon Երուանդ Զայեան (ծն. 1875 † 1941), Բարիզէն վկայեալ՝ արուեստագէտ էր նաեւ կը շինէր գեղեցիկ ջութակներ, կը նուագէր ալ: Երրորդ որդին՝ Տիգրան Պէյ Զայեան (ծն. 1880), մեռած է 1952ին Բարիզի մէջ. Պոլիս եղած ատեն Արտաքին Գործոց Նախարարութեան մէջ պաշտօն վարած է, յետոյ մեկնած Եւրոպա՝ Զաւէն Պատրիարքի հետ իբր ներկայացուցիչ Հայ Համայնքին: Իսկ Հայաստանի առաջին Հանրապետութեան մի—

[1] Ինչպէս ծանօթ է՝ հիմնուած է 1879 Մայիս 1ին եւ իր սկզբնական տիտղոսն էր՝ «Դպրոցասէր Հայուհեաց Ընկերութիւն» (Տե՛ս իր մասին Պատմութիւն Հայ Մշակութային Ընկերութիւններու. Ա. Հոր. Վիեննա 1957, էջ 247): Ներկայիս դեռ գոյութիւնն ունի «Դպրոցասիրաց» անունով եւ իր վարժարանով՝ Rems, Ֆրանսա:

ջոցին՝ Յունաստանի մէջ Հայաստանի ներկայացուցիչ կարգուած է։ Յետոյ Բարիզ մեկնած եւ հոն Ecole Normaleի Տնօրէնութիւնը վարած է։ Հիանալի Ֆրանսերէնով կը գրէր թերթերու մէջ իբր երաժշտութեան քննադատ։ Պոլիս եղած ատեն Renaissance օրաթերթին խմբագրութիւնը վարած է։ — Իլիաս Պէյի աղջիկը՝ Մարիամ — Անահիտ (ծն. 1882) ողջ է, Բարիզ կ'ապրի, շատ զարգացած, լեզուագէտ Օրիորդ մըն է, գեղարուեստագէտ եւ դաշնակահարուհի»։

Դիմած ըլլալով վերոյիշեալ Օրիորդ Մարիամ — Անահիտ Ջայեանի՝ ստացայ 1964 Փետր. 5ին քանի մը անդրադարձ ծանօթութիւններ իր եւ իր ընտանեաց մասին։ Ագնիւ Օրիորդը կը գրէ իր մասին. «Ինչպէս բոլոր ինձ ժամանակակից ընտանիքի աղջիկները, տան մէջ օտար վարժուհիով եւ այցելու դասատուներով ուսումս առած եմ, գալով երաժշտութեան՝ այն ատենուան Պոլսոյ մէջ լաւագոյնը համարուած Իտալացի դասատու մը ինձ առաջնորդած է եւ լրջօրէն աշխատած. amateurէ մը աւելի բան մը չեմ համարուիր»։

Օրիորդը կ'աւելցնէ թէ. «Ընտանեկան յիշատակները, լուսանկար, գրութիւն, եւ այլն, հրդեհի մը մէջ կորսուած են»։

Պագրրգիւղի (Մագրիգիւղ) Ծնունդ Ս. Աստուածածին եկեղեցւոյ «Մկրտութեանց Տոմար»ի մէջ կայ հետեւեալ արձանագրութիւնը Իլիաս Պէյ Ջայեանի (իր անունը

«Եղիազար» գրուած է) դուստր «Մարիամ — Անահիտ»ի մասին.

«1882 Յունիս 27 — Եղիազար Ստեփան Չայեանի (Դրան պաշտօնեայ) դուստրը՝ Մարիամ — Անահիտ (ծնեալ 31 Մարտ 1882ին) կը մկրտուի ձեռամբ Տ. Յովհ. քհնյ. Մկրեանի եւ կնքահայրութեամբ Գրիգոր Սիմոն Պէյ Տատեանի: Կինը՝ «Աննա Պաղտասար (Պալթազարեան) Չայեան». բնակավայր՝ Պարութհանէ ճատտէսի»:

Իլիաս Պէյ Չայեանի սկզբնական ամբողջական անունն է՝ Իլիաս — Եղիազար Չայեան: Իր մահուան առթիւ Մաքրիգիւղի ծնունդ Ս. Աստուածածին եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ին մէջ արձանագրուած է.— «1902 Ապրիլ 23 — Իլիաս Եղիազար Ստեփան Չայեան, պաշտօնեայ, 62 տարեկան: Բնակավայր՝ Մաքրիգիւղ, Ստատիոն ճատտէսի. հիւանդութիւն՝ միզարգելութիւն. սուրբ եկեղեցւոյ մէջ ամփոփուած է, ձախ կողմը»:

Իլիաս Պէյ Չայեանի անձանօթ մէկ եղբայրն եւս գտնուեցաւ.— Յովսէփ, որ ծնած 1844ին՝ մեռած է 1902 Մայիս 28ին: Մաքրիգիւղի եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ը կ'արձանագրէ իր մահուան առթիւ.— «1902 Մայիս 28 — Յովսէփ Ստեփան Չայեան, վաճառական, 58 տարեկան. բնակավայր՝ Ստատիոն ճատտէսի. հիւանդութիւն՝ սաթլըճան (թոքատապ), գիւղին գերեզմանատունը ամփոփուած»:



Իլիաս Զայեան

*Վերոյիշեալ «Տոմար»ի համեմատ՝ Իլիաս Պէյ Զայեանի եղբայրը՝* Յովհաննէս *ծնած 1839ին՝ մեռած է* 1904 *Նոյ. 8ին կուրծ–*

քի հիւանդութենէ եւ թաղուած է Մաքրի-գիւղի գերեզմանատունը :

Իլիաս Պէյ Զայեանի լուսանկարը հաճեցաւ ինձ ղրկել իր աղջիկը՝ Օրիորդ Մարիամ — Անահիտ (Պարիս) եւ կլիշէն շինեց Օրիորդ Մարգրիտ Նազգաշեան (Աթէնք) : Շնորհակալութիւն երկուքին ալ :

Տիգրան Զայեանի մահուան առթիւ գրութիւն մը նուիրած է Պարիսի Այսօր — Ապագայ թերթը, որմէ կը քաղենք·

«Այսօր հողին պիտի յանձնենք Տիգրան Զայեանն ալ : Պոլսահայ մեծանուն Գերդաստանի մը վերջին շառաւիղն, որ կը մարի իրմով... մտաւորականներէն էր Տիգրան Զայեան, լայն զարգացումով, նուրբ եւ ազնուական կերպարանքով... որ երբեմն փայլած էր իբրեւ Արտաքին Գործերու Նախարարութեան պաշտօնեայ, երբեմն իբրեւ դեսպանական քարտուղար... Տիգրան Զայեան պիտի մնէր ազգային գործունէութեան շրջանակին մէջ իբրեւ խմբագիր «Լա Ռընէսանս» ֆրանսերէն թերթին, որ հրատարակուիլ սկսած էր 1918ի զինադադարէն յետոյ, հայ դատի բրոբականտին համար, դաշնակից պետութեանց կ. Պոլսոյ շրջանակներուն մէջ : Իրեն կը գործակցէր Տօքթ. Յակոբ Թօփճեան : «Լա Ռընէսանս»ի խմբագրատունը, Բերայի «չիտակ»ին վրայ, տեսակ մը հայկական կեդրոն դարձած էր : Տիգրան Զայեան յայտնուած էր իբրեւ կարող հրապարակագիր մը եւ միանգամայն նուրբ դիւանագէտ մը : Այս հանգամանքով է որ պահ

մը Հայաստանի Հանրապետութեան Աթէնքի ներկայացուցիչ նշանակուած էր եւ այդ առիթով ալ իր ընտանիքը հոն փոխադրեց, երբ Կ. Պոլսոյ Հայութենէն շատեր կը հեռանային... Աթէնքի մէջ աւելի մօտէն պիտի ծանօթանայինք այս պատուական ընտանիքին,



Տիգրան Չայեան

1924 թուին, երբ Տիգրան Զայեան արդէն հեռացած էր եւ հաստատուած Բարիզ...» (Այսօր — Ապագայ, Փարիզ 1952) :

Իլիաս Պէյ Զայեան, իբրեւ ազգական Տատեանց (ո՛չ թէ Յովհաննէս Ամիրայի [† 1869] քեռորդին — ինչպէս գրած է Դոկտ. Թորգոմեան [Երեմիա Չէլէպիի Քէօմիւրճեան, Ստամպօլոյ Պատմ. Ա. էջ 403], այլ աղջկան որդին) թաղուած է Մաքրիգիւղի եկեղեցւոյն պարտէզին ձախ կողմը՝ Տատեանց ընտանեկան գերեզմանատան մէջ (Թորգոմեան, անդ) :

Ստեփան Զայեանի մասին շատ կարեւոր ծանօթութիւն մը հասցուց մեզ Պր. Գ. Բամպուքճեան : Մեզ անծանօթ էին ծննդեան եւ մահուան թուականները Ստեփան Զայեանի : Մագրիգիւղի ծնունդ Ս. Աստուածածին եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ը կը բովանդակէ այդ երկուքն ալ : Հոն արձանագրուած է. —

«1884 Յունիս 28 — Ստեփան Զայեան, սեղանաւոր 68 տարեկան, բնակավայր Մագրիգիւղ Ճատտէսի, հիւանդութիւն՝ եօթը օր տեւած իջված (կաթուած), ծնեալ Սկիւտար, եկեղեցիին բակը պահարանին կողմը թաղուած» :

Ուրեմն՝ Ստեփան Զայեան ծնած է իբր 1816ին եւ մեռած՝ 1884 Յունիս 28ին :

Սխալ է Թ. Ազատեանի (Տէ՛ր Ակն եւ Ակնցիք, 1943, էջ 57) կարծիքը թէ Իլիաս Պէյի հայրը՝ «Յակոբջան Զայեան» կը կոչուի : Անոր անծանօթ եղած է Ստեփան Զայեանը :

*Իսկ* Յուլիանէ — Ֆուլիկ *մեռած է* 1890 *Յունիս 12ին*: Ծաղիկ եռօրեայ *կը սգայ* 1890 *Յունիս 20ին*. «*Խմբագրութիւնս կը փութայ իր խորին ցաւակցութիւնն յայտնել առ* Վսեմ. Իլիաս էֆ. Ձայեան *վասն այն վշտին, զոր ունեցաւ մահուամբ իւր առաքինազարդ մօր*՝ Տիկին Յուլիանէ Ձայեանի — դուստր Ազգային Բարերար Տատեան Յովհաննէս Պէյի եւ քոյր Վսեմ. Յարութիւն Փաշայի: *Հանգուցեալ Տիկինն Հայ իգական սեռի մէջ նշանաւոր տեղ մը կը բռնէր* իր օրինակելի վարքովը, առաքինութեամբ *եւ այն շնորհներով, որ արդիւնք էր* իւր ծնողացմէ ընդունած խնամեալ դաստիարակութեան, *ա՛յն դաստիարակութեան*, որ յատուկ է մանաւանդ Տատեան Մեծանուն Գերդաստանին: *Հանգուցեալն եղած էր* տիպար ամուսին եւ մայր, խնամող աղքատաց եւ կը փայլէր բարեպաշտութեամբ եւ առաքինութեամբ, ինչպէս նաեւ քրիստոնէավայել խոնարհութեամբ» (Ծաղիկ, *Կ. Պ.* 1890 *Թ.* 319, *էջ* 219, *Յունիս* 20):

## 4. ՆԵՐՍԷՍ — ԽՈՍՐՈՎ

### Ծնունդ եւ Ուսման շրջան

*Ծնած է* 1825 *Յուլիս 19ին* Այի Եօրկի (*Այգատըր*): *Նախնական կրթութիւնը եւ ուսումը հօրենական տան մէջ ստանալէ յետոյ*՝ 1842 *Հոկտեմբերի սկիզբը կ՚ընկերանայ հօրը*՝ *Յովհաննէս Ամիրայ Տատեանի եւ եղ-*

*բորը* Յարութիւն — Գարեգինի *դէպի* Եւրոպա *ըրած ճամբորդութեան*: 1842 *Հոկտ. 7ին կը հանդիպին* Իզմիր *եւ կ'այցելեն տեղւոյն* Ս. Մեսրոպեան վարժարանը, *ուր* այցելողներու տետրակին *մէջ կը ստորագրէ.* «1842 Հոկտ. 7 Ներսէս — Խօսրով Տատեանց, եկի հօրս հետ տեսանել զդպրոցն Ս. Մեսրոպայ» (Արեւելք, Կ. Պ. 1899 *Թ.* 4059: — Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1842 *Թ.* 107):

1842 *Նոյ.* 8/20*ին կը հասնին* Պարիս, *կ'անցնին* Անգլիա: *Այդ ատեն Ներսէս — Խօսրով* 18 *տարեկան պատանի մ'էր: Ժամանակակից Ֆրանսերէն թերթը կը գրէ իր մասին. «...Ասոր (Ներսէս — Խօսրովի) համար որոշուած էր որ* մեքենագիտութեան *արհեստին հետեւի: Ասիկա բաւական յառաջդիմութիւն ըրաւ այս արհեստին մէջ ու մեծ օգուտ քաղեց ան դասերէն, որ ընկալաւ* Մէնչըստէր *մաթեմաթիգայի վարժապետէ ու միանգամայն* անխոնջ ջանիւ հետեւեցաւ փորձերու համարներուն *գլխաւոր* մեքենագործի մը՝ Մօսիւ Ֆէրպէրն *անուն*» (Revue Sintétique de sciences. *Թարգմ.* Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1844 *Թ.* 174):

1843 *Սեպտ.* 22*ին Պարիսի* Journal des Débats *կը գրէ. «Տարիէ մը ի վեր Բարձր. Դրան* Վառօդապետ Տատեան Յովհաննէս Աղան *Եւրոպա կը գտնուի... հետը բերած է երկու որդիքը...* Առաջինը (*Ներսէս — Խօսրով*) Անգլիա է ու մեքենական արհեստներուն ուսմանը կը հետեւի, որոնց մէջ խիստ դիւրութեամբ յառաջդիմութիւններ կ'ընէ,

*ինչպէս ընդհանրապէս ամէն արեւելեան մարդիկ ու* մասնաւորապէս Հայերը» (Արշ. Արարատեան, 1843 *Թ*. 160):

1843 *Հոկտեմբերին վերջը* Լոնդոնէն՝ Պոլիս *կը վերադառնայ Ներսէս — Խոսրով, ինչպէս կը տեղեկագրէ Իզմիրի Թերթը՝* 1843 *Նոյ.* 5*ին*. «*Ամսուս* 1*ին Երկուշաբթի օր գաղղիական շոգենաւով հասաւ հոս* Լոնտրայէն, *ազնուազարմ* Ներսէս — Խոսրով Աղա Տատեան, *Փարիզէն ու Մարսիլիայէն անցնելով... Յայտնի է որ յիշեալ Աղա Ներսէսը իր Մեծ. Հօրը՝ Արքունի Վառօդապետ Յօհաննէս Աղային հետ՝ Բարձրագոյն դրան հրամանովը Լոնտրա գացած էր* մեքենական արհեստին վրայօք ունեցած տեղեկութիւնները կատարելագործելու համար» (*Արշ. Արարատեան*, 1843 *Թ*. 165):

## ՊԵՏԱԿԱՆ ԱՆՁԸ

*Պոլիս վերադարձին՝ կը մտնէ պետական ծառայութեան մէջ եւ* 1845*ին արդէն* Տնօրէն կարգուած է Իզմիտի (*Նիկոմիդիա*) գործարանն (*Տե՛ս* Արշ. Արարատեան, 1845 *Թ*. 246): *Այս մասին ունինք Թանկագին տեղեկութիւնը ժամանակակից միակ հայ թերթին, որ* 1845 *Նոյեմբեր* 16*ին կը տողէ*.

«*Անցեալ ամսու* 27*ին, Արքունի Վառօդապետ Մեծապատիւ Տատեան Պօղոս Ամիրային որդին Առաքել Աղան եւ Մեծաշուք Տատեան Յօհաննէս Ամիրային որդին* Ներսէս — Խոսրով Աղան *Թագաւորական պա–*

*լաթը հրաւիրուելով, պատիւ ունեցան տա–տաղութ օգոստափառ Սուլթանին ոտքը համբուրելու, որ մարդասիրական ոգւով ընդունելով զանոնք, քառորդի մը չափ բա–րեհաճեցաւ խօսելու անոնց հետ Իզմիրու գործատանը վրայօք բաներ հարցնելով, ուսկից օր մը առաջ դարձեր էին յիշեալ ազնուականները եւ շատ ուրախանալով անոնց օրինաւոր պատասխանատուութեանցը վրայ, հրաման ըրաւ որ* մէկ մէկ ադաման–դեայ Նիշանի Իֆթիխար շնորհուի անոնց իւր ներկայութեանը՝ *վերյիշեալ* գործա–տան հոգաբարձութիւնն (*Տնօրէնութիւնը*) ալ որդւոց յորդի յաջորդական ժառանգու–թեամբ հաստատելով, *յապացոյց իր արքա–յական գոհունակութեանը*» (Արշալոյս Արա–րատեան, 1845 *Թ*. 246):

1847*ին երբ Յովհաննէս Ամիրայ Տատեան* երրորդ *անգամ* Եւրոպա կը մեկնի՝ *նախա–պէս ունկնդրութեան կ՚ընդունուի* Սուլթան Ապտիւլ — Մէճիտ կայսրէն *իր երկու որդի–ներուն — Առաքել – Միսակ եւ* Ներսէս – Խոսրովի — *ընկերութեամբ: Այս մասին եւս յի–շատակութիւն մը աւանդած է Զմիւռնիոյ լուսատեղեակ հայ թերթը. «Կոստանդնու–պոլիսէն մեկնելէն յառաջ Մեծապատիւ Տա–տեան Յովհաննէս Ամիրան եւ իւր երկու որ–դիքը՝ յարգամեծար Առաքել — Միսակ Աղան եւ* Ներսէս — Խոսրով Աղան *պատիւ ունեցան* Նորին Վեհափառութեանը ներկայանալու, որ մարդասիրական ոգւով ընդունեցաւ զա–նոնք... *Օգոստափառ Կայսեր հրամանաւը*

Զէյթին Պուռնուն... երկաթի ձուլարանին կառավարութիւնն Ներսէս — խոսրով Աղային յանձնուեցաւ» (*Արշ. Արարատեան*, 1847 *Թ.* 280)։

Զէյթին Պուռնուի երկաթի ձուլարանի գործարանը, *ինչպէս գիտենք, կը գտնուէր* Այ — Ստեփանոյի (*Ներկայիս* Եէշիլքէօյ) *մօտերը*։

1848 *Ապրիլ* 1*ին* Զէյթին Պուռնուի *երկաթի ձուլարանի եւ* Մաքրիգիւղի *մօտ եղած* վառօդարանի *տեսութեան կ'երթայ Համայն Ս. Քահանայապետի* Պոլսոյ *Նուիրակ* Իննոչէնցօ Ֆէրրիէրի Արքեպիսկոպոսը։ *Ներսէս-Խօսրով հոն իր գործին վրայ ըլլալով՝ կ'ընդունի բարձրապատիւ Հիւրը եւ գեղեցիկ կերպով ու մասնագիտօրէն բացատրութիւն կու տայ մեքենաներու եւ գործիքներու մասին։ Օրուան հայ թերթը, որուն ուշադրութենէն վրիպած չէ այս դէպքը՝ կը գրէ. «Ապրիլ* 1*ին Հինգշաբթի առաւօտուն* Տ. Ֆէռռիէռի *գնաց յիշեալ գործարանները տեսնելու։ Տատեան Մեծ. Յովհաննէս Ամիրայի որդին*, ազնուական Ներսէս — խոսրով Աղայն *հոն գտնուելով՝ ամէն կողմերը պտտցուց եւ մեքենական գիտութեանց եւ ճարտարութեանց աղէկ վարժ ըլլալով՝ ամէն մէկ մեքենայները եւ գործիքները մի ըստ միոջէ պատմելէն ետքը՝ հետը ընկերանալով մինչեւ Այ Ստէֆանօ գնաց, ուր* Տատեան Մեծապատիւ Պօղոս Ամիրայն շքեղ եւ փառաւոր ընդունելութիւն ըրաւ...» (Հայաստան, *Կ. Պ.* 1848 *Թ.* 94, *Ապր.* 10)։

Մասնագէտ — Գիտարար

Ներսէս — Խոսրով Պէյ իբրեւ ճարտարագէտ — մեքենագէտ (Ingénieur - Mécanicien) Թուրքիոյ մէջ գործեր ըրած է, որոնք ոչ միայն առաջնութեան պատիւ ունին, այլ եւ իրենց տեսակին մէջ կրնան համարուիլ իբրեւ ինքնահնար գիւտեր եւ ստեղծագործութիւններ, ինչպէս ժամանակին իր հայրը՝ Յովհաննէս Ամիրայ շատ մը ինքնահնար գործիքներ ու մեքենաներ շինած էր։ Պատմենք.

1. 1847ին Թուրքիոյ մէջ առաջին անգամ ըլլալով Ներսէս — Խոսրով Պէյ Տատեան երկաթուղի կը շինէ։ Երկաթուղիի այդ գիծը կը շինէ Պոսփորի նեղուցին վրայ Պէօյիւքտէրէ գիւղին մօտ։ Նպատակն եղած է հոն եղած աղիւսի գործատան դիւրութիւն ընծայել փոխադրութիւններու համար։ Անստորագիր նամակագիր մը, որ Տատեան Գերդաստանի պայազատ մըն է՝ կու տայ մանրամասնութիւն այս մասին՝ իբրեւ ականատես գրելով 1848 Մարտ 2ին.

«Անժխտելի ճշմարտութիւն մըն է թէ եւ ոչ քայլ մը կրնայինք յառաջ երթալ ո՛րեւիցէ գործի մէջ, եթէ Օգոստափառ Կայսեր բարի կամեցողութիւնը եւ ուսումնասիրական ջանքը, նմանապէս իւր չնաշխարհիկ պաշտպանութիւնը հովանի չըլլային ամէն կերպ բարեկարգութեանց եւ օգտակար գործառնութեանց վրայ։ Եւ ահա այսօրինակ բարձր պաշտպանութեան մը շնորհիւն է որ

*Արքունի Վառօդապետ եւ Արքունի գործա–
տանց Տեսուչ Վսեմ. Տատեան Քրիստոսա–
ղօր Յովհաննէս Ամիրային* հանճարեղ որդին
Ներսէս — խոսրով Աղան, *իւր բնական ճար–
տարութեամբը եւ մեքենական արհեստից
տեղեկութեամբը* առաջինն եղաւ *որ* երկաթէ
ճանապարհ մը շինեց Տանկաստանի մէջ: *Այս
նորաշէն ճանապարհը Եւրոպայի երկաթէ
ճանապարհներէն ամենեւին տարբերութիւն
մը չունի եւ նոյն սկզբանց վրայ հիմնեալ է:
Բայց այս տեղս դիտողութեան արժանի բան
մը կայ որ մեծ պատիւ կ'ընէ յիշեալ* մեր
ճարտարամիտ պայազատին. *քանզի Եւրո–
պայի մէջ ատանկ ճանապարհ մը շինուելու
ատեն՝ ոմանք գործիքները եւ այլ հարկաւոր
եղած բաները կը պատրաստեն, ուրիշ ար–
հեստագէտք ալ, այսինքն՝ երկրաչափք եւ
երկրաբանք՝ երկրին դիրքը կը զննեն, ճամ–
բան կը չափեն, զանազան ձեւեր կը գծա–
գրեն, եւ այլն: Այլ ընդհակառակն այս* քաջ–
ուշիմ Աղան ինքը մինակ պարապեցաւ այս
գործին վրայ, *դիրքին բարձրութիւնը եւ խո–
րութիւնը եւ տեղերուն մէկզմէկէ հեռաւո–
րութիւնը ինքը անձամբ չափելով, ձեւերը
գծագրելով, եւ այլն. եւ վերջապէս անանկ
յաջող կերպիւ մը կարգադրեց որ այս եր–
կաթէ ճանապարհը տեսնող եւրոպայի հմուտ
ճարտարապետները զարմացան յիշեալ հան–
ճարեղ ազնուական Աղային ուշիմութեանը
եւ բարեյաջող փորձին վրայ: Ուստի իրա–
ւամբ երանութեան արժանի են այսպիսի
տաղանդաւոր շնորհալի զաւակները, որոնք*

իրենց բարեբաստիկ ծնողացը եւ հետեւաբար ընդհանուր ազգին փառք եւ պարծանք կ'ըլլան... Այս երկաթէ ճանապարհը Պոսփորի, այսինքն Կոստանդնուպոլսոյ նեղուցին վրայ Պէօյիւքտէրէ ըսուած գիւղին մօտ է, բարձրապատիւ Ահմէտ Ֆէթհի փաշային արդեամբը եւ քաջալերութեամբը շինուեցաւ՝ աղիւսի համար հաստատեալ իր գործարանին մէջ... Քանզի յառաջմանէ հարիւրաւոր անձինք կ'աշխատէին բեռնակրութեամբ, այսինքն՝ փայտը, ածուխը, կաւը եւ աղիւսը փոխադրելու համար... եւ հիմակ երկաթէ ճանապարհին միջոցաւ ինչպէս դիւրութեամբ եւ գրեթէ ոչինչ ծախքով յառաջ կ'երթայ գործը... Առ այժմ այս երկաթէ ճանապարհին վրայ չորս սայլ կը բանի, որոնցմէ ամէն մէկը հազարական աղիւս կը պարունակէ... մէկ ձի այնպէս դիւրութեամբ եւ արագութեամբ կը քաշէ սայլը որ երբեմն հարկ կ'ըլլայ անոր ընթացքը յամրացնել...

2. Տատեան քաջատոհմիկ Ներսէս — Խօսրով Աղային ուրիշ մէկ ճարտարամիտ գործողութիւնն ալ գովութեամբ յիշատակելու արժանի կը համարիմ: Յայտնի է որ Կ. Պոլսոյ մէջ մինչեւ հիմա խորունկ հորէ մը ջուր վեր հանելու համար՝ հին Պօստան տօլապը ըսուած գործիքէն զատ ուրիշ միջոց մը չկար եւ այն ալ շատ պակասութիւններ եւ անկատարելութիւններ ունի. ուստի յիշեալ պայազատը այս արուեստական պակասութիւնն ալ լցուց անցած տարի՝ իր ան-

*խոնջ աշխատութեամբ եւ հնարաւորութեամբ* — *քանզի* Նոր տեսակ պատուական ջրհան մը (Թուլումպա) շինեց որ քիչ ժամու մէջ բաւական առատութեամբ եւ դիւրին կերպիւ ջուր կը հանէ խիստ խորունկ հորերէ: *Աղնուազարմ Ներսէս — Խոսրով Աղան այս տեսակ առաջին ջրհանը Օղոստափառ Սուլթանին առաջին սենեկապետ Վսեմ. Համիտ Պէյին պարտէզին մէջ կարգադրեց, որտեղ հարիւր կանգունի չափ խորութեամբ հորէ մը ջուր վեր հանեց այնպիսի յաջողութեամբ մը որ յիշեալ Վսեմ. Պէյին մտերիմ գովութեանը արժանի եղաւ:* Վեհ. Կայսրը այս ջրհանը տեսնելով՝ շատ ուրախացաւ եւ իւր բարձր գոհունակութիւնը յայտնեց, հրաման ընելով որ Պէշիկթաշի արքունի պարտէզին մէջն ալ շինուի: *Ուստի Խոսրով-Ներսէս Աղան այս ջրհանէն ի զատ՝* ջրացայտ աւազանի (*Ֆըսգըյէ*) *գեղեցիկ գաղափար մը գծագրելով՝ Նորին Վեհափառութեանը ներկայացուց, որ նմանապէս հրաման ըրաւ չինել նոյն գաղափարին համեմատ: Այս ջրացայտը* Փարիզի Շանզելիզէ *ըսուած պարտէզին մէջ* եղածէն գեղեցիկ է, *բայց քիչ մը անկէց պզտիկ եւ բոլորն ալ ձուլեալ երկաթէ շինուեցաւ: Ասոր վարի կողմը սիւնաձեւ է եւ վրան երեք կողմէն մէյմէկ դլփին կը տեսնուի՝ պոչերնին դէպ ի վեր դարձած եւ բերաննէն երկճղի ջուր կը ցայտի դէպի յօդս, իսկ պոչերնուն վրայ մէկ գեղեցիկ աւազան մը կայ չինացի ձեւով եւ անոր բոլորտիքը հինգ կարապ կայնած*

են. այս թաչուններուն բերնին ջուրը կամարաձեւ մէկմէկու վրայէ անցնելով՝ վերստին յիշեալ աւազանին մէջ պիտի թափուի եւ անոր բոլորտիքէն ջրվէժներու նման բոլոր ջուրը պիտի երթայ մեծ աւազանին մէջ...

3. Ջեմ ուզեր լռութեամբ անցնիլ այստեղս ազնուաշուք Տատեան Ներսէս-խոսրով Աղային ուրիշ մէկ երեւելի ծառայութիւնը յօգուտ Օսմ. տէրութեանը: Կոստանդնուպոլսոյ մաքսատան մէջ ապրանքները կշռելու ժամանակ միշտ խարդախութիւններ կ'ըլլային կշռորդները հարկաւոր կատարելութիւնները չունենալնուն համար: Ուստի յիշալ ծաղկահասակ Աղան փութացաւ, ըստ խնդրոյ այժմեան մեծ մաքսապետ Վսեմ. Մէհմէտ Փաշային նոր տեսակ արուեստական կշռորդ մը շինելու, որ յար եւ նման է Եւրոպայի մէջ գործածուած կշռորդաց, մանաւանդ թէ ասիկա ա՛լ աւելի ուրիշ կատարելութիւններ եւ դիւրութիւններ ունի մաքսատանը վերաբերեալ պարագայից համար: Այս կշռորդը շատ ժամանակ չէ դետեղեցաւ Նոր կամուրջին քով, ուրտեղ նաւերէն ելած եւ ուրիշ տեղուանքէն եկած ապրանքները պիտի կշռուին: Յիշեալ նորաշէն կշռորդը մէկ տիրէմէն սկսեալ մինչեւ 3500 օխայ ծանրութեամբ ապրանք կը կշռէ խիստ ճշտութեամբ եւ զարմանալի արագութեամբ մը...» (Արշալոյս Արարատեան, Զմիւռնիա 1848 Թ. 307, Մարտ 19):

## Բարձրագոյն պատուաստիճաններ եւ պաշտօններ

*Տարակոյս չկայ թէ Ներսէս — Խոսրով Պէյ Տատեան այսքան արդիւնաւոր գործեր ընելէ ու երկրին այսքան մեծ ծառայութիւններ մատուցանելէ վերջ՝ մեծապէս գնահատուած, պատուուած, պարգեւատրուած եւ բարձրագոյն պաշտօններու կոչուած ըլլալու էր օրուան Սուլթան* Ապտիւլ — Մէճիտէն *եւ* Ապտիւլ — Ազիզէն, *որոնք ամէնէն լուսամիտ, արդարակորով ու յառաջդիմասէր եւ չետենք նաեւ անխտրասէր վեհապետներն եղած են Օսմանեան գահուն վրայ: Դժբախտաբար չունինք տեղեկութիւն Ներսէս — Խոսրով Պէյի՛ ստացած պատիւներու, շքանշաններու եւ այլն, մասին* 1848 — 55*ի շըրջաններէն:*

*Կարեւոր յիշատակութիւն մը պահած են ժամանակակից հայ թերթերը սակայն դոնէ* 1856*էն: Ներսէս — Խոսրով* երրորդ կարգի պաշտօնատար *կ'անուանուի եւ* էֆենտիութեան *պատուանունը կը ստանայ* 1856 *Նոյեմբերին* (*Տե՛ս* Մասիս, *Կ. Պ.* 1856 *Թ.* 234, *Դեկտ.* 5: — Արշալոյս Արարատեան, 1856 *Թ.* 534, *Դեկտ.* 14 *եւ Թ.* 535 *Դեկտ.* 28):

1860*ին* «Տեսչութեան ժողովի անդամ» *կ'անուանուի Ներսէս — Խոսրով* (Մասիս, 1860 *Թ.* 460): *Թերթը չի բացատրեր թէ ինչ կը հասկնայ «Տեսչութեան ժողով» ըսելով: Բարեբախտաբար* Մէնմուայը Հավատիս *կը ճշդէ՝ գրելով թէ Ներսէս – Խոսրով*

*Խփէնտի Տատեան* Ոստիկանական Տեսչութեան ժողովին անդամ է (Մէճմուայր Հավատիս, Կ. Պ. 1860 *Թ*. 373)։ «Անդամ ոստիկանութեան ատեանին» (*Արշ. Արարատ*. 1864 *Թ*. 736)։ *Այդ պաշտօնին մէջ է 1871ին ալ* (*Արամեան Օրացոյց*, *Կ*. *Պ*. 1871, *էջ* 102. «Անդամ Զապթիյէ ժողովին»)։

1869—70*ին* Տիվանը Թէմէյիզի անդամ է *Ներսէս–Խոսրով Պէյ* (*Տե՛ս* Հրահանգ Շերամապահութեան, *Կ*. *Պ*. 1871, *էջ* 24) *եւ այս չափ պաշտօններու եւ պատիւներու մէջ*,



Ներսէս Պէյ Խոսրով

Ներսէս — Թասրով, եղած է միշտ ամենախոնարհ եւ խոնարհամիտ մարդը: Միշտ այսպէս եղած են բոլոր բարձր միտքով ու հոգեկան ձիրքերով օժտուած անձնաւորութիւնները:

## Ազգային Գործիչը

Շատ բան ծանօթ չէ Ներսէս-Թասրովի ազգային գործունէութենէն: Այն քիչը սակայն որ յիշատակուած կը գտնենք՝ շատ բան կը բացատրէ:

1857—60ի միջոցին եղած է Ներսէս Պէյ Ազգային Ընդհանուր Ժողովին Երեսփոխան (Ջեփիւռ, Կ. Պ. 1864 Թ. 33, էջ 257): 1864էն առաջ գործած է նա իբրեւ Քաղաքական Ժողովի անդամ (Ջեփիւռ, անդ: — Հմմտ. Արշ. Արարատեան, 1864 Թ. 724): Ջեփիւռ մասնաւոր գոհունակութեամբ կ'ընդգծէ որ Ներսէս Պէյ Տատեան «շատ ուսումնական ու կարօտ անձանց ձեռնտու ու օգնական եղած է» (Անդ):

1863ին Հայ Երեսփոխան ընտրուած է Պալատ Սալմաթոմրուկ եւ Գարակէօմրիւկ միացեալ թաղերէն (Կիլիկիա, Կ. Պ. 1863, էջ 441):

1863 Հոկտեմբերին կ'ընտրուի Քաղաքական Ժողովի անդամ, որուն Դիւանը կը կազմուի այսպէս.

Ասլանեան Ստեփան Պէյ Ատենապետ, Տատեան Ներսէս էֆէնտի փոխ-Ատենապետ

*Կրճիկեան Անդրանիկ Պէյ Ատենադպիր* (Կիլիկիա, *Կ. Պ.* 1863, *էջ* 473):

1865*ին կ'ընտրուի* Քաղաքական ժողովի փոխ-Ատենապետ (*Արշ. Արարատեան*, 1865 *Թ.* 768): 1866*ին սկիզբը կ'ընտրուի* Ազգ. խառն ժողովի *անդամ* (*Արարատ.* 1866 *Թ.* 776):

*Ատկէ քիչ ետքն ալ բարձրացած է* Ատենապետութեան *պաշտօնին: Զի Իգնատիոս Պատրիարքի վախճանումէն ետք*, 28 *Օգոստ.* 1869*ին* Ներսէս Էփ. Տատեանի *Ատենապետութեամբ եւ* 63 *ժողովականներու ներկայութեամբ նոր Պատրիարքի ընտրութեան համար Մայր Եկեղեցւոյ մէջ Ընդհ. ժողով գումարուած է* (Մարմարա, *Կ. Պ.* 1964, *Հոկտ.* 28):

Ա. Երակ *ալ կը յիշէ վերոյիշեալ Ազգ. ժողովի պարագան՝ քիչ մը տարբեր թուականով: Սա կը գրէ. «Վերջապէս Մայր Եկեղեցիի մէջ* 4 Սեպտեմբեր 1869ի *գումարուեցաւ Ընդհ. ժողովը պատրիարքի ընտրութեան համար: Ներկայ էին* 75 *ազգային երեսփոխան եւ ժողովին կը նախագահէր* Ներսէս Տատեան: *Եկեղեցին լեցուած էր յոգնախուռն բազմութեամբ»* (Ժամանակ, *Կ. Պ.* 1965 *Թ.* 18501, *Յունուար* 27):

## Ազգային Բարբերար — Գրագէտը

*Այո՛, Ազգային Բարբերար մ'է Ներսէս — Խոսրով: Բարբերարելու ա՛յնքան ձեւեր ու ասպարէզներ կան: Ներսէս Պէյ ընտրած է*

գրականութեան *ասպարէզը* : *Իր* երկու գրական հատորները *միմիակ նպատակ ունեցած են* .— Ազգին զաւակներուն օգտակար ըլլալ :

*Այո՛, Ներսէս Պէյ* գրագէտ *մ՚եւս եղած է : Իր պետական, ճարտարապետական ու ազգային գործունէութեան ա՛յնքան զբաղումներուն մէջ կրցած է ժամանակ գտնել մտաւոր աշխատանքներու եւ ինքնազարգացման ալ նուիրուելու : Ընթերցումը սիրած է շատ : Եւ որովհետեւ մայրենի լեզուի չափ տիրած է* անգլիերէնին ու ֆրանսերէնին՝ *շատ բան կարդացած է թէ՛ իր մասնագիտական բարձր ուսումներու եւ թէ գիտական ուրիշ որեւէ ճիւղերու վրայ գրուած գրքեր :*

*ա) Մեզի կը թուի թէ Ներսէս — Խոսրով Պէյ* 1858*ի տարեները ճամբորդած է դէպի* Ֆրանսա *եւ թերեւս նաեւ* Անգլիա : *Այդ առթիւ ծանօթացած է* անգլիերէն լեզուաւ *գրուած մասնագիտական երկի մը, որուն տիտղոսն եղած է* «Նոր Օրլեանի բամպակի մշակութիւնը» : *Ներսէս Պէյ այս գիրքը կարդացած եւ ուսումնասիրած է նախ, յետոյ, ինչպէս ինքը իր թարգմանութեան* Յառաջաբանին *մէջ կը գրէ՝* «Իմ ամենասիրելի ծնողացս եւ Վսեմափառ Արքունի Ճարտարապետ Կարապետ Ամիրային (*Պալեան*) քաջալերութեամբը բուն իսկ Անգլիերէնէն Հայերէնի հաւատարմաբար թարգմանեցի *ա՛յն դիտաւորութեամբ որ* գուցէ Հայաստանի մէջ այս մշակութեանը հետեւող երկրագործներ կան նէ Ամերիկայի եղանակաւ լաւացնեն

եւ առաւել եւս արդիւնաւորեն իրենց աշխատութիւնը» (Նոր Օռլեանի բամբակի մշակութիւնը. Թարգմանեաց յԱնգղիականէ Ներսէս–Խոսրով Տատեան. Փարիզ 1859, էջ Ե—Զ):

Ներսէս–Խոսրով այս գիրքին Թարգմանութիւնը ըրած է Պոլիս՝ 1859 Ապրիլ 1ին (գուցէ վերջանալու Թուականն), ինչպէս կը տեսնուի իր Յառաջաբանին վերջը (էջ Զ) եւ յետոյ անձամբ տարած է Պարիս եւ Հոն Արամեան Տպարանին մէջ տպել տուած է 1859ի վերջերը: Գիրքը ունի 51 էջ իբրեւ բնագիր. էջ 53—56 տրուած է ցանկ մը «դժուարիմաց» բառերու՝ թրքերէն մեկնութեամբ. իսկ գրքին եւեւն ալ դրուած են վեց պատկեր—տախտակներ՝ երկրագործական մեկնութիւններու Համար:

Պոլսոյ Գրավաճառ Յ. Գ. Գափափեան 1870ին կը գրէ Ներսէս—Խոսրովի այս երկի մասին. «Մեծայարգ Տատեանց Գերդաստանէն ազնուատոհմ Ներսէս Պէյ Տատեան, որ իւր տաղանդովն եւ արուեստագիտութեամբը շատ պարագաներու մէջ ազգասիրաբար հասարակաց օգտին համար իւր աշխատութիւնները չէ խնայած եւ անխտրաբար ի գործ դրած է՝ ասկից մէկ քանի տարիներ յառաջ ալ Բամպակի մշակութիւնը ազգայնոցս մէջ ծաւալեցնելու դիտմամբ Բարիզ ժամանակին «Բամպակի մշակութիւն» անունով իւր աշխատասիրած Հեղինակութիւնը տպել տալով՝ մէջը շատ մ'ալ պատկերներ աւելցնելով՝ այլ եւ այլ տեղեր

ձրիապէս դրկած էր: *Ի՞նչ էր Մեծ. Պէյին այս փափաքը. ուրիշ բան չէր բայց եթէ* իւր բարեսրտութեամբ հասարակաց պակասութիւնները լեցնելով՝ Ազգին ապագան երջանկացնել» (Հրահանգ Ներամարանութեան *կամ Ներամ սնուցանելու կերպը. Կ. Պ.* 1871, *էջ* 27):

Զեփիւռ (*Կ. Պ.* 1864 *Թ.* 33, *էջ* 257) *եւս յիշատակութիւն մ'ըրած է գրքիս մասին:*

*բ) Ներսէս — Խօսրով Պէյի* երկրորդ *երկն է՝* «Հրահանգ Ներամարանութեան *կամ* Ներամ սնուցանելու կերպը», *որուն սկզբնական բնագիրը* թրքերէն *լեզուով հեղինակած եւ* թրքերէն գրով *տպել տուած է* 1869*ին* Պրուսայի մէջ: *Վերյիշեալ Յ. Գ. Գափափեան Գրավաճառը՝* 1870*ին կը գրէ.* «Ներսէս Պէյ Տատեան... Ներամարանութիւն *անուն հեղինակութիւնն որ* անցեալ տարի Պրուսա գտնուած ժամանակին *ականատես ըլլալով նոյն տեղի ժողովրդեան շերամոյ հիւանդութենէն կրած վնասներուն, ի գութ շարժեալ՝* Տաճկերէն տառերով տետրակ մը տպել տուեր էր *եւ զայն գործադրող* անձինք մեծամեծ օգուտներ քաղեր էին՝ *սոյն տետրակին Հայերէն տպել տալու միջոց ըլլալով՝ Պրուսայէն մեկներ է.* այս տետրակէն օրինակ մը ձեռքերնիս անցնելով՝ Հայերէնի դարձնել տուինք դէմն ալ Հայ տառով տաճկերէն լեզուն դնելով՝ *որպէս զի հայերէն լեզուին հմուտ չեղող անձինք ալ այս գործողութենէն զուրկ չմնան: Տպեցինք Մեծ.*

Հեղինակին այս աշխատասիրութիւնը որ ուրախ սրտիւ տպագրական ծախուց մեծագոյն մասին ձեռնտու եղաւ...» (Հրահանգ Շերամարանութեան կամ Շերամ սնուցանելու կերպը. Կ. Պ. 1871, էջ 27—28):

Գրքին այս երկրորդ տպագրութիւնը տեղի ունեցած է Պոլիս 1871ին: Այս տպագրութեան թրքերէն տիտղոսն է. «Իբէք Պէօճէյի Թէրպիյէսինէ տա բալիմաք»: Գրքոյկը ունի 28 էջ, որուն մէկ երեսը հայերէն՝ միւս երեսը թրքերէն է: Տպագրութիւնը լաւ եղած չէ.— Նիւթերը եւ էջերը խառնակուած են: Յառաջաբանը, որ Ներսէս—Խոսրովի գրութիւնն է՝ տպուած է էջ 14ի մէջ. էջ 18էն վերջ՝ կը սկսի էջ 4ը:

Ներսէս—Խոսրով իր այս Յառաջաբանութեան մէջ կը գրէ.

«...Նուաստս մէկ քանի տարիէ հետէ Օսմանեան Պետութեան շնորհիւ Եւրոպայի մէջ այս մասին ի գործ դրուած կերպերը եւ միջոցները տեսնելով եւ անոնց վերաբերեալ շատ գրքեր կարդալով եւ Տաճկաստանի մէջ մինչեւ հիմա ի գործ դրուած ամէն կերպերը մէկիկ մէկիկ փորձելով՝ տեսայ եւ հասկցայ որ որդերուն պատահած հիւանդութեանց գլխաւոր պատճառը... գլխաւորաբար խոնաւութիւնը, լիճերէն եւ աղտեղութիւններէն ելած գոլորշիքն է...»

Ինչպէս կը տեսնուի՝ Ներսէս—Խոսրով Պէյի այս աշխատութիւնը տարիներու ուսումնասիրութեան, ընթերցումի, զննու-

թիւններու եւ անձնական փորձերու արդիւնք է: *Զայն գրելու միակ նպատակն եղած է* ազգին զաւակներուն ձեռքը օգտակար գիրք մը տալ *Ճեռամապահութիւնը* գիտական եւ արդիական ձեւով մշակելու եւ անկէ մեծագոյն չափով օգտուելու համար: *Ահա՛* Ազգային Բարերարը, *ահա՛ արժանի որդին* մեծագոյն Ազգային Բարերար Յովհաննէս Ամիրայ Տատեանի:



Ներսէս – Խորով իր ստորագրութեամբ

Ամուսնութիւն

*Ներսէս — Խոսրով Տատեան ամուսնացած է երիտասարդ տարիքին՝* 1846*ին։ Իր կեանքի ընկերուհին եղած է* Օր. Արեգնազ Արզումանեան (*ծն.* 1826*ին*)։ *Չենք գտած որեւէ ծանօթութիւն Օրիորդիս կեանքի, ծնողաց եւ նախնեաց մասին։ Ըստ* Տիկ. Զարուհի Ֆերուհիխանի (*Պոլիս*), *որ թոռնու–*



Տիկ. Արեգնազ
(կին Ներսէս – Խոսրովի)

հին է Տիկնոջս՝ Օրիորդ Արեգնազ «ազնուական ընտանիքի մը» զաւակն է։

Տիկ. Արեգնազ ողջ էր իր ազնուական ամուսնին մահուան տարին՝ 1872ին (Հմմտ. Արշ. Արարատեան, 1872 Թ. 931)։ Տիկին Արեգնազ իր կեանքին վերջին տարիները Սելանիկ (Յունաստան) անցուցած եւ հոն ալ վախճանած է 1896ին։

Կեանքին վերջին օրերը եւ մահը

Կը թուի թէ փափկակազմ եւ նրբամարմին եղած է Ներսէս—Խոսրով Պէյ եւ չէ վայելած չարքաշ առողջութեան մը բարիքները։

Այս խորհրդածութիւնները կ'ընէի՝ երբ 1964 Յունուարին վերջը Եգիպտոսէն ստացայ ծրար մը ազնուաշուք Տիկին Աննա Ն. Պուղրոս փաշա Ղալիէն.— Ծրարը կը բովանդակէր Յովհաննէս Ամիրայ Տատեանի գրի առած «Օրագրութիւն»ը, որուն 22րդ էջին մէջ գրուած է.

«1825 Յուլիս 9, ծնաւ խոսրով Տատեան, որդի Յօհաննու, յԱյեօրկ։ Եագութ խաթունէն, ամուսինն Յօհաննու, շատ տառապանք քաշեց եւ հազիւ հազ ազատեցաւ, անանկ որ ամէնքն ալ յոյսերնին կտրած էին եւ Յօհաննէս Տատեան տունը դառնալով, ամուսնոյն տառապանքը... դայեկին չփոթութիւնը տեսնելով՝ չի կարաց հանդուրժել, առանձնացեալ ի սենեկին, անկաւ ի վերայ երեսաց իւրոց, արտասուելով օգնու–

*թիւն ի Տեառնէ խնդրելով, զԱմենօրհնեալ զՍուրբ Կոյս Աստուածածինն եւ զՍուրբ Գրիգոր Լուսաւորիչն միջնորդ կոչելով եւ այնպէս, անչափ տխրութեամբ.... հիւրանոցն երթալով... դուռը դրանց կը բաղխէին... երաց զդուռն, ետես զի երկու քահանայք էին եկեալ զողորմութիւն կամ ըղնպաստ խնդրել: Զայս բարի նշան համարելով՝ ընկալաւ ի ներքս եւ պատուասիրեաց... Յետ քառորդի միոյ եկին աւետել եթէ ազատեցաւ եւ ծնաւ: Սիմոն Տատեան եւ Յօհաննէս գնացին տեսանել: Թէպէտ մայրն երախային ազատեալ էր, բայց երախայն անշընչացեալ, միայն կենդանութեան չարժմունք նշմարէին: Դայեկն աճապարէր առ ի մկըրտել... ափով ջուր հեղլով՝ մկրտէր, բայց որովհետեւ քահանայքն ի հիւրանոցն էին, Յօհաննէս Տատեան աճապարեաց երեր զքահանայս եւ մկրտեցին դարձեալ եւ դրոշմ ետուն* զի կենդանացաւ յայնժամ երախայն *եւ զանուն նորին եդին* Ներսէս» (Օրագրութիւն, *էջ* 22—23):

*Ահա թէ ինչո՛ւ* «փափկակազմ եւ նրբամարմին» *կ'ըսէին*:

1864 *Օգոստ. 5ին կը գրէ Պոլսոյ* Ջեփիւռ (1864 *թ.* 33, *էջ* 257) — Տատեան վսեմ. Ներսէս էֆ.ին, *որ ասկէ քանի մը ամիս առաջ* անձնական տկարութեան *պատճառաւ Եւրոպա գացած էր՝ բերկրութեամբ կը լսենք որ հիմայ* բոլորովին առողջացած՝ *քիչ օրէն Պոլիս պիտի վերադառնայ... անոր ողջամբ վերադարձը քիչ ուրախութիւն պի-*

ափ չպատճառէ իւր սիրելի Գերդաստանին, համայն ազգին եւ մանաւանդ անոր ոգին լաւ ճանչողներուն» (Հմմտ. Նաեւ Մասիս, 1864 թ. 657)։

Ի՞նչ հիւանդութիւն ունեցած եւ ո՞ւր դարման գտած է.— չի յիշատակուիր։ «Եւրոպա գացած» կ'ըսուի։ Հաւանօրէն Ֆրանսա, երկիր մը, որ արեւելքցիներուն գրեթէ միակ դարմանատունն էր։

Բայց Ներսէս — Խօսրով Պէյի «բոլորովին առողջացած» ըլլալուն ստոյգ վկայութիւն մը չէ, երբ նա տակաւին հազիւ 46 լրացուցած՝ հրաժեշտ կու տայ այս կեանքին։ Արդարեւ 1872 Փետրուար 17ին կը կնքէ Ներսէս — Խօսրով Պէյ Տատեան իր ազգին ու հայրենիքին համար բարեգործութիւններով ու արդիւնքներով լի կեանքը։ Հանճարներու կեանքը երբեք երկարատեւ չէ եղած։ Հանճար մըն էր նաեւ Ներսէս — Խօսրով Տատեան, ինչպէս իր այս համառօտ կենսագրութենէն յայտնի կերպով կը տեսնուի։

Դժբախտաբար «բոլորովին առողջացած» չէր կրնար ըլլալ Ներսէս Պէյ իր ունեցած հիւանդութենէն. իր ունեցածը «անբուժելի ախտ» մըն էր, որուն զոհ կ'երթար իր երիտասարդ տարիքին մէջ։ Ահա թէ ի՛նչ կը տեղեկագրէ Զմիւռնիոյ լաւատեղեակ ժամանակակից հայ թերթը՝ ազդելով Ազգին մեծ կորուստը, 1872 Մարտ 11ին.

«Տատեան ազնուափայլ Գերդաստանը ցաւալի յոյժ կորուստ մի ըրաւ, որ ոչ նուազ ցաւալի է նաեւ բոլոր ազգին համար։ Վսեմ.

Ներսէս Պէյը՝ երկրորդ որդի Արքունի Վառօդապետ Հանգուցեալ Յովհաննէս Պէյին Տատեան, որ ժամանակէ մը ի վեր անբուժելի ախտիւ մը վարակեալ էր, անցեալ ամսոյ 22ին իրիկուան դէմ առ Աստուած փոխեցաւ ի Մաքրիգեղն Կ. Պոլսոյ յանմխիթար սուգ իւր ազնիւ լծակցին եւ զաւակացը, ինչպէս նաեւ բոլոր Տատեան Գերդաստանին: Հանգուցեալը, որ հազիւ թէ 46 տարեկան կար, իւր խոհական ու մշակեալ միտքովը, իւր ազգասիրական վեհ զգացմունքովը եւ իւր բարեսրտութեամբը սիրելի հանդիսացած էր ամենուն եւ յարգ ու համարում ունէր Բ. Դրան առջեւ, որուն զանազան պաշտօններու մէջ գտնուած եւ ամենայն հաւատարմութեամբ ու յաջողութեամբ ծառայած է...» (Արշ. Արարատեան, 1872 թ. 913):

Հայրենիք (Կ. Պ. 1872 թ. 91, Փետր. 19) կը գրէ. «Տատեան Ներսէս էֆ., որ թէ՛ Ազգին եւ թէ Տէրութեան ծառայութիւններ մատուցանելով ամենուն համարումը գրաւած էր՝ իւր մահկանացուն կնքեց ի հասակի 45 ամաց: Յուղարկաւորութեան հանդէսը երէկ ի Մախր գիւղ կատարուեր է»:

Իսկ Փունջ (Կ. Պ. 1872 թ. 711, Փետր. 19) կը գուժէ. «Արքունի Վառօդապետ Հանգուցեալ Յովհաննէս Պէյի որդի Վսեմ. Ներսէս Պէյ Տատեան, Ոստիկանութեան բարձրագոյն ժողովին եւ Հիմնադիր եւ Նախկին Տնօրէն Զէյթին Պուռնիի գործարանին, Երեքշաբթի երեկոյ իւր 46 տարեկան հիւան-

դագին կենաց ընթացքը կնքեց *յանմխիթար սուգ ազնուաշուք Գերդաստանին Տատեան... յուղարկաւորութեան հանդէսը երէկ մեծ շուքով կատարուեցաւ ի Մաքրիգիւղ ու մարմինը ամփոփուեցաւ ի Հայրենի Հանգստարանն ի գաւիթ եկեղեցւոյ գիւղին... Ներսէս Պէյ* արդարեւ ազնուական էր, առաքինի ոգի եւ գթոտ սիրտ կը կրէր նա. իրեն դիմող կարօտեալն բերկրալից կը դառնար...»:

Սերունդը

*Ներսէս եւ Արեգնազի զաւակներէն* երկուքը միայն *կը յիշատակէ* Բանասէր (*Պարիս*, 1907, *էջ* 120).— Սիմոն-Հրահատ (*ծն.* 1847) *եւ* Յովհաննէս-Վահրամ (*ծն.* 1857): *Ինչպէս կը տեսնուի՝* կրկնակ անուանակոչումով: *Անշուշտ բոլոր զաւակներն ալ այդպէս* կրկնանուն *եղած են*:

Թորոս Ազատեան (*Տատեան Գերդաստանը, անդ՝ էջ* 13) *Ներսէս—Խոսրովի զաւակներէն* վեց *հատի անունն կու տայ, լոկ անունով*.— Սիմոն, Վահրամ, Արշակ, Տըրդատ, Արեգնազ եւ Սրբուհի:

*Ներսէս—Արեգնազի* թոռնուհի՝ Տիկ. Զարուհի Ֆէրուհխեան (*Պոլիս*) *մեզ գրած մէկ նամակին մէջ Ներսէս—Արեգնազի զաւակներէն միայն* հինգը *կը յիշէ*.— Սիմոն, Վահրամ, Արշակ, Տրդատ եւ Խոսրովուհի:

*Մեր անձնական պրպտութեանց արդիւնքով կրցած ենք հետեւեալ վերջնական եզրակացութեան յանգիլ*.— *Ներսէս-Խոս-*

րով եւ Արեգնազ ունեցած են եօթը զաւակ։ Ահա անոնց անունները՝ տարիքի կարգով.

1. Սիմոն — Հրահատ, 2. Թովմաս (երկրորդ անունը անծանօթ), 3. Մարիամ, 4. Յովհաննէս — Վահրամ, 5. Տրդատ — Համազասպ, 6. Արշակ — Առաքել, 7. Խոսրովուհի։ Ասոնցմէ երկուքը — Թովմաս եւ Մարիամ — գտաւ Պր. Գէորգ Բամպուքճեան՝ Պէշիքթաշի եկեղեցւոյ Մկրտութեանց արձանագրութեան մէջ։ Սրտագին շնորհակալութիւն Պոլսեցի ազնիւ բարեկամիս։

ա. Սիմոն – Հրահատ.— Ներսէս — Խոսրով Պէյի անդրանիկն է ասիկա, ծնած 1847ին եւ մկրտուած 1847 Մայիս 18ին, ինչպէս կը ցուցնէ Պէշիկթաշի եկեղեցւոյ ցանկը։ Իր աղջիկը՝ Տիկ. Զարուհի Ֆէրուհիխան, որ կ'ապրի եւ Պոլիս է՝ մեր խնդրանքին վրայ հաճեցաւ թանկագին ծանօթութիւններ տալ ընդհանրապէս Տատեան Գերդաստանի եւ մասնաւորապէս իր ընտանեկան ճիւղի մասին։ Պարտք կը զգանք հրապարակով ալ յայտնել մեր ջերմ երախտիքը։

Տիկ. Զարուհի կը գրէ իր հօրը՝ Սիմոն — Հրահատ Պէյի մասին. «Սիմոն Պէյ Տատեան, Ներսէս Պէյի անդրանիկ զաւակը՝ եղած է Արուեստագէտ — Ճարտարագէտ (Ingénieur Dessinateur). Ֆրանսա ուսած գիտուն մըն էր։ Հնարած է երկրաչափական գործիք մը. տուած էր պատուանշաններ — կը գրէր քաջ Ֆրանսերէնով. ծայրայեղօրէն ազնիւ ու համեստ ըլլալուն՝ միշտ ջանացած է շուքին մէջ մնալ։ Իզմիրի մէջ պաշ-

տօնավարած է 14 տարի իբր «Նաֆթա»յի Ingénieur մինչեւ իր մահը՝ 1906։ Զմիւռնիոյ մէջ շատ սիրուած էր իր ուղղամիտ, բարի ու առատաձեռն բնաւորութեան ու պարզասիրութեանը համար։ Սիմոն Պէյ ամուսնացած էր Կարապետ Ամիրայ Պալեանի թոռան եւ Գրիգոր Պէյ Պալեանի աղջկան՝ Նազիկ Պալեանի (ծն. 1865, † 1924 Օգոստ.) հետ, որ-



Սիմոն Պէյ Տատեան
(որդի Ներսէս Պէյի)

մէ ունեցած է երկու մանչ եւ երկու աղջիկ: Մանչերն են. Ներսէս — Զարեհ (ծն. 1889 Մարտ 22, † 1926 ծովային արկածէ) եւ Վահէ — Առաքել (ծն. 1891 Սեպտ. 13, † 1921)»:



Տիկ. Զարուհի Ֆէրուհխեան

Պէշիկթաշի Ս. Աստուածածին եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ին մէջ արձանագրութիւն կայ Վահէ Տատեանի մասին սա՛ ձեւով.

«1921 Յունիս 7 — Վահէ Ս. Տատեան, (մեռած) 29 տարեկան, բնակութիւն Քիլիսէ փողոց. հիւանդութիւն՝ հիւծախտ, ծնեալ Պոլիս, թաղուած Շիշլի»:

Իսկ աղջիկներէն կրտսերը՝ Ատրինէ — Մաքրուհի (ծն. 1888 Յունուար 6, † 1938

*Ամերիկա*) *Նիւ Եորքի կառավարական հիւանդանոցի գլխաւոր հիւանդապահուհին եղած է*։

*Աղջիկներէն անդրանիկն է* Զարուհի — Յակինթ (*ծն․* 1884 *Դեկտ․* 25*ին Պէշիքթաշ*), *որ* Իզմիրի Ամերիկեան քոլէճէն, *Պոլսոյ* Գեղարուեստից *Ակադեմիայի* Art décoratif*ի ճիւղէն շրջանաւարտ՝ տարիներէ ի վեր գրականութեամբ կը զբաղի․ աշխատակցած է* Հայ Կինի, Ազդարարի, Ս․ Փրկիչի, Ժամանակի, Մարմարայ*ի․ թարգմանած է* 3 *թատերախաղեր՝ անգլիերէնէ․ անցեալին մէջ ունեցած է համայնքային գործունէութիւն․ անդամակցած է* «Ազգանուէր Հայուհեաց»,



Տիկ․ Նազիկ, կին Սիմոն Պէյի
(ծնեալ՝ Պալեան)

«Ազգային Հիւանդանոցի Օժանդակ»ի, որուն առաջին անդամուհիներէն եղած է. անդամակցած է նաեւ «Ուսուցչաց Օգնութեան սնտուկին» եւ «Արուեստանոց»ին — Ազգային Արուեստանոցին Տնօրէնութեան պաշտօնը վարած է 21 տարի:

Օր. Զարուհի ամուսնացած է Հրանտ Ֆէրուհխանի (քեռորդի Տօքթ. Բարունակ Պէյ Ֆէրուհխանի) հետ: Հրանտ Ֆէրուհխան՝ Միւլքիէ վարժարանէն վկայուած՝ եղած է Երկրագործական Դրամատան քննիչութեան Դիւանի Տնօրէն (Inspecteur en Chef) ստանալով Իւլայի պատուատիճան: Հրանտ Ֆէրուհխան մեռած է 1931ին: Հրանտ եւ Զարուհի ունեցած են 3 զաւակ. Արշակ — Ազատ (ծն. 1908 Նոյ. 28) ուսած Կեդրոնականին մէջ՝ կը զբաղի ներկայիս վաճառականութեամբ. լաւ մարզիկ (Sportsman) մըն է. Նախաձեռնարկ հիմնադիրներէն մին «Շիշլիի Մարմնակրթական Միութեան», որուն ֆուտպոլի խմբապետը եւ բերդապահը եղած է երկար տարիներ: Արշակ ամուսնացած է Սիրանոյշի հետ, որ Գարակէօզեան Որբանոցին կարող Տնօրէնուհին է, շատ գնահատուած ամէնքէն: Իրենց միակ զաւակն է՝ Հրանտ՝ Կեդրոնականի լիսէէն շրջանաւարտ:

Հրանտի եւ Զարուհիի երկրորդ զաւակը՝ Նարդուհի–Մայտա (ծն. 1906 Դեկտ. 17) նախ «Անարատ Յղութեան» վարժարանը յաճախած է՝ Հարպիէ, յետոյ Եսայեան վարժարանէն ու Գեղարուեստից Ակադեմիայէն շրջանաւարտ ըլլալէ վերջ՝ Բարիզ André

Liotի աշակերտած եւ Բարիզի Allience Françaiseէն չրջանաւարտ՝ եղած է Նկարչուհի, մասնակցելով յաճախ Բարիզի ցուցահանդէսներուն: Նարդուհի-Մայտա ամուսնացած է եւ ունի երկու աղջիկ:

Իր ամուսինն է Շէմ Առէլ, գնահատուած նկարիչ մը, որ Պոլսոյ դպրոցի մը մէջ ուսուցիչ է: Ունեցած են 2 աղջիկ — Էռի եւ Սէլմա — 21-19 տարեկան, որոնք 1963ին չրջանաւարտ եղան «ՍԷՆ Բրնուա» ֆրանսական վարժարանէն: Այժմ երկուքն ալ նկարչութեան կը հետեւին:

Նարդուհի-Մայտա մասնակցած է չատ մը ցուցահանդէսներու՝ Էդինբուրգ, Պարիս, Վիեննա, Միւնիխէն: Պարիսի մէջ եւ Վիեննա քանի մը նկարներ ծախած է: Այս տարի, 1964 Մայիս 14ին, դարձեալ մասնակցեցաւ «Կանանց Գեղարուեստի Միջազգային Ընկերակցութեան» կազմակերպած ցուցահանդէսին, որ տեղի ունեցաւ Պարիսի Art Moderneի Թանգարանին մէջ: 18 Թուրք արուեստագիտուհիներու մէջէն միայն 2 Հայուհիներ մրցանակի արժանացան — Տիկ. Մայտա-Առէլ եւ տիկ. Քրիսթին Սալերի: Տիկ. Մայտաի նկարը ցուցադրուեցաւ Ֆրանսայի հեռատեսիլէն: Այս առթիւ Իսթանպուլի Ժամանակ (1964 Թ. 18256, Յունիս 16) կը գրէ. «...Բարիզի Քաղաքապետական Պալատին մէջ ի պատիւ միջազգային բոլոր արուեստագիտուհիներուն հաւաքոյթ մը տեղի ունեցաւ եւ մրցանակները քաղաքապետին կողմէ բաշխուեցան: Առաջին կարգի չքանչան

ստացան Տիկ. Մայտա-Առէլ եւ Տիկ. Քրիսթին Սալերի»:

Հրանտ-Զարուհիի երրորդ զաւակը՝ Արտէմիս (ծն. 1910 Մարտ 10ին) վաղամեռիկ եղած է:

Սիմոն Պէյ Տատեան կնքած է իր կեանքը 1906 Յունուար 6ին Զմիւռնիոյ մէջ: Իզմիրի Արեւելեան Մամուլ կը գրէ 1906 Յունուար 18ին.— «Ամսոյս 6ին Նահանգիս հանրօգուտ շինութեանց երկրաչափներէն Սիմոն Պէյ Տատեան կնքած է իր մահկանացուն քաղաքիս մէջ: Հանգուցեալը Վառօդապետ Տատեան Յովհ. Պէյի թոռն է, Ներսէս Պէյի զաւակն էր, Շրջանաւարտ Բանկալթիի զինուորական դպրոցէն իբրեւ սպայակոյտի հարիւրապետ: Զինուորական ասպարէզէն հրաժարելէ վերջ՝ հանրային շինութեանց Նախարարութեան գլխական ճիւղին մէջ իբրեւ երկրաչափ—գծագրիչ ընդունուած է Իզմիր-Գասապայի եւ Այտընի երկաթուղիներու վարչութեանց քով յաջորդաբար: Կայսեր, երկրորդ գոմիսէրի պաշտօնը վարած էր: Իսկ վերջին անգամ Նահանգիս երկրաչափներու կարգին մէջ անցած եւ ցմահ շարունակած է: Հանգուցեալ Սիմոն Պէյ ազնիւ բնաւորութեամբ, գլխական կարողութեամբ օժտուած եւ մէթոտիկ վարմունքով սիրուած դէմք մ'էր եւ պատիւ կը բերէր իր պատկանած հասարակութեան» (Արեւելեան Մամուլ, Իզմիր 1906 թ. 4, էջ 112, Յունուար 18):

Սիմոն Պէյի, ինչպէս նաեւ իր Տիկնոջ Նազիկ Պալեանի կնիքները հոգաց իրենց ազնիւ դուստրը՝ Տիկ. Զարուհի Ֆէրուհխան:

բ. Թովմաս.— Ներսէս-Խօսրովի այս երկրորդ զաւակի մասին ոչ մէկ տեղ հանդիպած չէինք յիշատակութեան մը: Պր. Գէորգ Բամպուքճեան (Իսթանպուլ), որ Պէշիկթաշի «Գիւտ Գօտւոյ Ս. Աստուածածին» եկեղեցւոյ Տոմարներուն մէջ եղած Տատեան Գերդաստանի մկրտութեան արձանագրութիւնները օրինակած եւ մեզի ղրկելու ազնուութիւնը ունեցած էր՝ ահա այս մասին եղած միակ ծանօթութիւնը մեզի կը հաղորդէ:

«12 Դեկտ. 1848ին Ներսէս աղա Տատեանի որդին՝ Թովմաս կը մկրտուի ձեռամբ Տէր Գալուստ քահանայի եւ կնքահայրութեամբ Սիմօն Պէյ Տատեանի (որդի Պօղոս Պէյ Տատեանի)»: Պր. Բամպուքճեան կ'աւելցնէ իբրեւ ծանօթութիւն՝ «Այն զաւակը պէտք է որ Վաղամեռիկ եղած ըլլայ, որովհետեւ Տիկ. Զարուհի Ֆէրուհխանի (թոռ Ներսէս-Խօսրով Տատեանի) ալ անծանօթ է»:

գ. Մարիամ.— Ներսէս-Խօսրովի այս զաւակն ալ անծանօթ է ուրիշ կողմէ: Կը յիշուի միայն վերոյիշեալ Պէշիկթաշի Մկրտութեան Տոմարի մէջ՝ սա ձեւով:

«8 Յուլիս 1856ին Ներսէս աղա Տատեանի դուստրը՝ Մարիամ կը մկրտուի

ձեռամբ դարձեալ Տէր Գալուստ քահանայի եւ կնքահայրութեամբ Մկրտիչ Պէյի» (որ Պօղոս Ամիրայի որդին պիտի ըլլայ)։ Տիկ. Զ. Ֆէրուհխան ալ չի յիշեր։

դ. Յովհաննէս-Վահրամ.— Ներսէս-Խոսրովլի չորրորդ զաւակը Յովհաննէս-Վահրամ՝ աւելի Վահրամ անունով ծանօթ է, ծնած 1857 հաւանօրէն Դեկտ.ի վերջերը՝ մկրտուած է 1858 Յունուար 5ին։ Իր բարձրագոյն ուսումը աւարտած է Պարիս՝ մասնագիտութիւնն ըլլալով իրաւագիտութիւն, որով եղած է քաջ օրէնսգէտ եւ Պոլիս դարձին ընդունուած է Արդարութեան Նախարարութեան մէջ եւ կարգուած դատաւոր (Տե՛ս Հովիտ, Թիֆլիս 1910 Թ. 18, էջ 283)։

Յովհաննէս-Վահրամ Պէյ 1884 Յուլիսի սկիզբը կը նշանուի Օրիորդ Իսկուհի Գափամաճեանի հետ՝ մեծ հանդէսով, զոր կը նկարագրէ Թրքախօս Թէրճիւմանը էֆքեար (Կ. Պ. 1884 Թ. 2080, Յուլ. 17)։ Օր. Իսկուհի Գափամաճեան՝ Յովհաննէս Գափամաճեանի ընտանիքի զաւակ կը թուի ըլլալ, զի նշանտուքի հանդիսականներուն մէջ կը յիշուի խաչիկ Գափամաճեան, որ որդին է Յովհաննէս Գափամաճեանի։ Վերջնոյս աւելի մօտէն պիտի ծանօթանանք Բ. Տոհմի բաժնին մէջ։

Որքան կ'երեւայ՝ Վահրամի եւ Իսկուհիի միջեւ հարսանեկան պսակ տեղի չէ ունեցած։ Եւ կամ ցուցէ Իսկուհի կարճ ատենէն մեռած է։ Չի գիտենք որ Վահրամ Պէյ

Տատեան իրր 1890ին ամուսնացած է ուրիշի մը հետ, ինչպէս պիտի տեսնենք հիմայ։

Կ'ամուսնանայ ծաղումով Հունգարացի կոմս Զէչէնիի Փաշայի — հրշէջ գունդի պետ — աղջկան՝ Վանտայի հետ, որ ըստ Տիկ. Զարուհի Ֆէրուհխանի՝ արտակարգ գեղեցկութիւն մ'ունեցած է։ Զաւակ չեն ունեցած։

1890ին Պոլիս է Յովհաննէս-Վահրամ Պէյ Տատեան։ Իր պետական պաշտօնն ու տիտղոսն է՝ «Անդամ Պատժական Ատենի Բերայի» եւ ունի Օսմանիէ 3 եւ Մէճիտիէ 3 կարգերը (Ընդարձակ օրացոյց Ս. Փրկչի. Կ. Պ. 1896, էջ 164)։

Կը չեշտենք որ Վահրամ Պէյ 1890ին Պոլիս կը գտնուի։ Այս կէտը կարեւոր է ճշդելու համար իր Պարսկաստան անցնելու թուականը։ Իր 1890ին Պոլիս գտնուելուն ապացոյցը հետեւեալն է։ 1890ին կը գրէ Պոլսոյ Ծաղիկ թերթը. «Հայազգի Միշէլ Պէհլամեան Վոսփորի Ջրի հոսանաց շարժիչ ոյժը ճարտարական ձեռնարկութեանց գործածելու նպատակաւ ջրաբաշխական մեքենայ մը հնարած եւ իւր այս գիւտին համար Հանրօգուտ Շինութեանց Նախարարութենէն արտօնագիր ստացած էր։ Կ'իմանամք թէ այս գիւտին վերաբերեալ յատակագծերն եւ արտօնագիրը Տատեան Վահրամ Պէյի առաջարկութեամբ Կայս. պալատան սենեկապետներէն միոյն միջոցաւ Վեհ. Սուլթանին մատուցուելով, Ն. Վեհափառութիւնը իր բարձր գոհունակութիւնը յայտներ եւ գե-

դարուխտից չքաղրամ շնորհած է հնարո-դին» (Ծաղիկ, Կ. Պ. 1890 *Թ*. 3, *էջ* 7) :

*Պէշիկթաշի Ս. Աստուածածին եկեղե-ցւոյ* Թաղական խորհրդոյ ատենագրութեանց մէջ *Վահրամ էֆ. Տատեան* 16 *Դեկտ*. 1884*ին* թաղական խորհրդոյ անդամ *յիշուած է. Վահրամ եւ Տրդատ Տատեաններու Թաղ. խորհրդոյ անդամակցութեան ընտրութիւնը՝ Պատրիարքարանի կողմէ վաւերացուած է* 31 *Հոկտ*. 1888*ին*: *Իսկ* 6 *Նոյ*. 1888*ին գու-մարուած Թաղ. Խորհուրդին առաջին նիս-տին մէջ գաղտնի քուէարկութեամբ* Ատե-նապետ ընտրուած է Վահրամ Պէյ:

Վահրամ Պէյ 16 Հոկտ. 1890ին հրաժա-րած է Թաղ. խորհրդոյ Ատենապետութենէն: *Ահա հրաժարականին բնագիրը՝*

16 *Հոկտ*. 1890

*«Մեծ. Խաչիկ էֆ. Խօրասանճեան, Դեր-Ատենապետ Պատ. Թաղ. Խորհրդոյ Պէշիկ-թաշի.*

*Անձնական դրադմանցս պատճառաւ կը հարկադրիմ հրաժարականս մատուցանել պատ. Խորհրդոյդ Ատենապետութեան պաշ-տօնէն: Հաճեցէք ընդունիլ, Մեծապատիւ էֆ.ի, խորին յարգանացս հաւաստիքը:*

*Վ. Տատեան»:*

*Որքան կ՚երեւայ՝ Վահրամ Պէյ Տատեան իր Տիկնոջ հետ* Պոլիս *կը գտնուի* տակաւին 1891 Մարտին: *Զի Պէշիկթաշի Թաղ. Խոր-հրդոյ Ատենագրութեան մէջ գրուած է.—*

«3 *Մարտ* 1891

Ազն. Տիկին Վահրամ Պէյ Տատեան *Ս. Եկեղեցւոյս դաւթին Ս. Աստուածածնայ պատկերին համար 90 տրամ ծանրութեամբ եւ 4 ոսկի արժողութեամբ արծաթեայ թագ մը նուիրեց»: — Գրութիւնս փաստ է թէ Վահրամ Պէյ* առնուազն 1891ի սկիզբները Պոլիս է:

*Ուրեմն՝ Վահրամ Պէյ* 1890*ի վերջերը ու* 1891*ի սկիզբը տակաւին* Պոլիս *կը գըտնուէր: Հետեւաբար* 1891*ին անցած է* Պարսկաստան *եւ ոչ թէ* 1888*ին, ինչպէս կարծած է* Հովիտ (*Թիֆլիս* 1916 *թ.* 35, *էջ* 549):

*Թէ ի՞նչպէս եղած է որ Վահրամ Պէյ Տատեան* Պարսկաստան *անցած է՝ կու տանք ականատեսի մը գրածը: Ռուսահայ գրագէտ* Տիգրան Գեղամեան՝ 1904–5*ին Թեհերան եղած ըլլալով՝ կրցած է ձեռք բերել հետաքրքրական մանրամասնութիւններ* Յովհաննէս-Վահրամ Պէյ Տատեանի *կեանքի դծերու, յատկապէս Պոլսէն՝ Թեհերան անցնելու մասին: Տիգրան Գեղամեան կը գրէ* 1910 *Օգոստոս* 5*ին Ս. Պետերբուրգէն՝ Թիֆլիսի* Հովիտ *թերթին՝* «Իշխան Վահրամ Դադեանը Պարսից Արքունիքում» *վերնագրի տակ.*

«1904 *եւ* 5 *թուականները անց եմ կացրել* Թեհրանում: *Այդ չափ ժամանակուայ ընթացքում շատ առիթներ պիտի ներկայանային, ի հարկէ, ճանաչելու համար թէ բարձր պաշտօններ վարող մի շարք Հայերի մէջ ո՞վ ամենից շատ է սիրուած* Նասրէդդին եւ Մուզաֆէրէդդին Շահերի *կողմից...*

Նախ մի քանի խօսքով պատմեմ թէ երիտասարդ տարիքում Վահրամ-Բէյ Դադեանը ի՛նչպէս է ընկնել Պարսկաստան եւ կարճ ժամանակուայ մէջ մեծ պաշտօնի հասել ու երկու Շահերի սիրելին դառել, այդ իսկ վեհապետների բերանով եւ ֆիրմաններով Պռենս-Իշխան կոչուել եւ հաստատուել Շահն Շահերի արքունիքում...

1890—1891 թուականներին, երբ սկսուեցին հայկական շարժումները Կ. Պոլսում, Սուլթան Աբդիւլ-Համիտը ասում է Արթին-Փաշա Դադեանին, որին հետ նա յաճախ Նարդի է խաղալիս եղել երեկոները, թէ՝ իր ականջը շատ «վատ բաներ» են հասել նրա ազգական Վահրամ-Բէյի մասին եւ այդ «վատ բաները» այն է եղել որ Վահրամ-Բէյի մօտ ժողովւում են երիտասարդ թիւրքերը եւ հայերը եւ քաղաքական խնդիրների մասին են խօսում: «Քո Տոհմը, ասում է Սուլթանը Արթին Փաշային, այնպիսի նշանաւոր ծառայութիւններ է մատուցել իմ նախնիքներին եւ պետութեանը որ ես չէի ուզել որեւէ մէկը քո ազգականներից փէսադ-դաւաճան դուրս գայ, բանտում փտի կամ կախաղան հանուի... Ասում եմ թէ ինձ յայտնի է քո ազգական Վահրամ-Բէյը ֆէսադների հետ սերտ յարաբերութիւններ է պահպանում, ժողովներ է կազմում իւր բնակարանում եւ քաղաքական խնդիրների մասին խորհրդակցում եւ իմ դէմ դաւեր սարքում: Պարտաւորութիւն եմ դնում քեզ վրայ՝ խրատել եւ յորդորել նրան որ յետ

կանգնի վտանգաւոր ճանապարհից եւ յարաբերութիւնը իսպառ կտրէ այնպիսիների հետ, որոնցից ոչ մէկը ողջ չի մնալ եւ շուտով կը գտնի իր արժանաւոր պատիժը... Քո ազգականը երիտասարդ մի անձն է, փարիզում ուսումը աւարտած՝ քաջ իրաւագէտ է. Արդարութեան Նախարարը շատ գովեց նրան իբրեւ օրէնսգէտ եւ ընդունակ պաշտօնեայի. Ես նրան առաջ կը քաշեմ եւ շուտով բարձր պաշտօնի կը հասցնեմ, եթէ միայն ձեռք քաշի չար արարածներից եւ հեռու պահի իրան վնասակար ու վտանգաւոր գործերից»:

Նոյն յանձնարարութիւնը Վահրամ-Բէյի վերաբերմամբ Աբդիւլ-Համիդը տալիս է եւս իր ջեներալ-ադիւտանտ հունգարացի Կոմս Սեչինի-Փաշային, որի գեղանի դուստր Կոմսուհի Վանդայի հետ նոր է ամուսնացած եղել Վահրամ-Բէյը...

Մի կողմից Արթին Փաշան, միւս կողմից Կոմս Սեչինին ամէն ջանք գործ են դնում Վահրամ-Բէյին համոզելու եւ զգաստացնելու համար որ կտրէ յարաբերութիւնը ոստիկանութեան Նախարարի հսկողութեան տակ գտնուող խմբակի հետ եւ բոլորովին յետ կանգնի քաղաքական եւ պետական խնդիրների մէջ խառնուելուց: Վահրամ-Բէյը եւ նրա կրակոտ ամուսինը կտրուկ կերպով յայտնում են թէ հայրենասիրական զգացումը խեղդել եւ պարտականութիւնից յետ կանգնեցնել չեն կարող ո՛չ մի սպառնալիք եւ ոչ մի զարհուրելիք... Այս

պատճառով Վահրամ-Բէյը մի քանի ժամանակից յետոյ ձերբակալւում է եւ նետւում բանտ: Քաջարի Տիկլին Վանտան սակայն չի քնում, այլ բոլոր ջանք գործ է դնում իր ամուսնուն բանտից ազատելու համար: Մեծ կաշառքով է լինում թէ դրամական երաշխաւորութիւն տալով — չգիտեմ — բայց իրողութիւնը այն է լինում որ Վահրամ-Բէյը շուտով ազատւում է բանտից եւ իր ամուսնու հետ անյայտանում է Կ. Պոլսից: Շատ չի անցնում որ տաճկական կառավարութիւնը իմանում է թէ Վահրամ-Բէյը ներկայացել է Թեհրանում Նասրէդդին Շահին եւ խիստ սիրալիր ընդունելութիւն է գտել նորա կողմից: Հասկացւում է որ Կ. Պոլսի Պարսից դեսպանը Վահրամ-Բէյին տուած է եղել ջերմ յանձնարարական նամակներ Թեհրանի պետական մարդկանց եւ եռանդոտ միջնորդութիւն է արած Շահի առաջ:

Վահրամ Բէյը լաւ պաշտօն է ստանում Արտաքին Գործոց Նախարարութեան մէջ եւ ուղարկւում է Թաւրիզ իբրեւ Արտաքին Գործոց ներկայացուցիչ թագաժառանգի մօտ, բայց Շահի ցանկութեամբ շուտով կանչւում է Թեհրան: Որպէս ուսեալ եւ գործունեայ անձնաւորութիւն Վահրամ-Բէյը նոր կարգ ու կանոններ է ծրագրում եւ մտցնում փոստային ճիւղերի մէջ եւ առանձնապէս հետամուտ է լինում բարեկարգել մաքսային գործերը եւ յանձնել բարձր տնօրէնութիւնը Եւրոպայից հրաւիրուած մարդկանց: Ջանա-

զան ծրագիրներ է կազմում եւս ու ներկայացնում Շահին՝ կրթական, ելեւմտական, արդարադատական եւ նաեւ զինուորական նախարարութեան մէջ հիմնաւոր վերանորոգումներ մտցնելու համար: Նասրէդդին Շահը խիստ գնահատում է Վահրամ-Բէյի եռանդը եւ ընդունակութիւնը, նշանակում նրան իր գլխաւոր գեներալ-ադիւտանտ եւ առաջաւոր տեղ է տալիս արքունիքում:

Իմ Թեհրան եղած ժամանակը հէնց այն էր լսում Հայերից, Պարսիկներից եւ այլ ազգերից թէ Դադեանը այս ինչ օրը Շահի հետ որսի գնաց, այս ինչ օրը Շահը Պռենսի մօտ հիւր եկաւ, նշանակեց Պռենսին իր ներկայացուցիչը՝ այս ինչ պետութեան նոր նշանակած դեսպանին ընդունելու համար. զօրահանդէսներին Շահը կանչեց Պռենսին ու ձեռքը ուսի վրայ դրած՝ գոհունակութեան խօսքեր ասեց նրան, գործին հաղորդելու համար թէ այսինչ օրը ականակուռ ոսկէ թուր նուիրեց նրան. թէ այսինչ օրը չքեղապէս թամքած մի շատ գեղեցիկ նժոյգ ուղարկեց Պռենսին, եւ այլն:

Լսելով այդ ամենը, ի հարկէ, շատ ուրախանում էի, բայց ուրախութեանս չափը չկար, երբ լսում էի թէ Պռենսը որպէս Նախագահ Հայոց դպրոցական Հոգաբարձութեան այցելեց դպրոցը, այսինչ այնինչ ուսուցչի դասերին ներկայ գտնուեց, որոնցից գոհ մնալով՝ նուէրներ բաշխեց ուսուցիչներին, թէ նա խանութեան տիտղոսներ տալով՝ Կ. Պոլսից Պարսկաստան փախած այս

ու այն հայ դրագէտին, բժիշկին, դասատուին, արհեստաւորին՝ մէկին նշանակել տուեց Թաղաժառանգի կայքերի կառավարիչ, միւսին՝ արքայազունների բժշկապետ, մի ուրիշին ֆրանսերէնի դասատու կառավարական դպրոցի մէջ, եւ այլն:

Գալիս էին Թեհրան Կ. Պոլսից հայ դերասաններ եւ դերասանուհիներ. Իշխան Դադեանն էր որ յաջողեցնում էր նրանց համար թատրոնական ներկայացումներ պալատում տաճկերէն եւ թաթարերէն լեզուաւ. դրամական առատ նուէրներ տալով ճանապարհ էր դնում... լսում էր Թեհրանում թէ Պարսկաստանի այսինչ տեղերում պարսիկների կողմից նեղւում են Հայերը — Իշխան Դադեանն էր որ խնդրում յայտնում էր Շահին եւ խստապինդ հրամաններ ուղարկել տալիս նահանգապետներին: Մաքսատունը բռնում էր արտասահմանից ստացած հայ թերթերը. Իշխան Դադեանը հրամայում էր յանձնել թերթերը բաժանորդներին: Վերջապէս 1905 թուականին, հայ — թաթարական կոտորածների ժամանակ, ո՛րքան դրդուիչ Թուրքեր էին գալիս Կովկասից Թեհրան եւ ուրիշ քաղաքներ հայերի դէմ պարսիկներին ու Թուրքերին գրգռելու նպատակով: Իշխան Վահրամ Դադեանն էր որ իր հզօր ազդեցութեամբ խափանում էր չարագրգիռների անելիք պրոպագանդան եւ այս առթիւ այնպիսի կտրուկ միջոցների էր դիմում, որոնց մասին գրելը շատ տեղ կը բռնէր:

Աւելորդ չեմ համարում յիշատակել մի-

այն մի դէպք, ցոյց տալու համար թէ ո՛րչափ մեծ էր իշխան Դադեանի ազդեցութիւնը պարսից արքունիքում, ո՛րչափ էին նրան սիրում Նասրէդդին եւ Մուզաֆէրէդդին Շահերը եւ ի՜նչ բուռն ազգային զգացում էր կրում իր սրտի մէջ պատուանշանաւոր իշխան Դադեանը: Դէպքը պատահում է, իշխանի մասնաւոր քարտուղար Մանուէլ էֆ. Մուլեանի պատմելով՝ Նասրէդդին Շահի օրով:

Մի անգամ Աթաբէկ-Ազամ մեծ խնջոյք է սարքում իր ապարանքում, պետութեանց դեսպանների համար: Խնջոյքին հրաւիրուած են լինում արքայազուններ, նախարարներ եւ պետական բոլոր յայտնի մարդիկ: Խնջոյքի վերջերում մի երկու դեսպանների մէջ խօսք է ընկնում տաճկահայերի յեղափոխական շարժման մասին: Մէջ է ընկնում տաճկաց դեսպան եւ խիստ վիրաւորական խօսքեր է ասում հայերի հասցէին: Հեռուից լսում է իշխան Դադեանը եւ մօտենալով զգաստացնում է դեսպանին, որ թոյլ չտայ իր ներկայութեան վիրաւորական լեզու բանեցնել Հայերի մասին: Բայց տաճիկը ուշադրութիւն չի դարձնում, շարունակում է թափել բերանից եկածը եւ Դադեանին էլ բաւական կծում: Վառօդի պէս բռնկում է Դադեանը եւ աթոռը բարձրացրած հէնց ուզում է խփել Փաշայի թէ Բէյի գլխին, որ անգլիական դեսպանը բռնում է Դադեանի ձեռքից եւ ազատում Աբդիւլ-Համիդի ներկայացուցչի գլուխը ջարդուելուց: Իսկոյն հեռանում է սա խնջոյքից եւ չտապում յայտ-

նել ծանր իրողութիւնը ծածկագիր հեռագրով Սուլթան Համիդին: Համիդ էլ կատաղած հեռագրում է Շահին եւ յանուն «կրօնակցական եղբայրութեան» խնդրում է «ըմբոստ գեաւուրի» գլուխը... Նասրէդդին Շահը կանչում Դադեանին իր մօտ եւ քմծիծաղ ասում է թէ կռացնէ գլուխը, որը ուզում է կտրել... Իշխանը նկատում է Շահի ձեռքին մի ինչ որ փայլուն բան եւ կռացնում է գլուխը: Շահը անց է կացնում Դադեանի վիզը ականակուռ մի նոր չքանշան եւ ասում է ծիծաղելով. «Կտրեցի գլուխդ, թող լուրը հասցնի իր Սուլթանին նրա դեսպանը...»:

Իբրեւ համեստ աշխատաւոր եւ օտարահպատակ հայ՝ լսելով իշխան Դադեանի պանծալի գործերը, ի հարկէ, պոտենցիա չունէի նրա հետ ծանօթանալու եւ իմ մեծագոյն յարգանքներն ու հիացում նրան արտայայտելու եւ ոչ էլ յոյս ունէի թէ երբեւիցէ պատիւ կ՚ունենամ երես առ երես հանդիպելու եւ խօսելու բարձրաստիճան հայ ազգասէրի հետ: Մինչդեռ այնպէս պատահեց որ փափագս ինքնին իրագործուեց:

Մի օր Հայոց Թատրոնում իրարանցում էր թէ հայազգի Շահզադէն է եկել. ասացին թէ ահա նոր մտաւ մառանատուն (բուֆէտ) դերասանների համար նախաճաշիկ եւ խմելիք պատուիրելու: Շտապեցի մառանատուն, որտեղ խոնարհ բարեւելով դիմաւորեցին նրան թատրոնի հանդիսականներից շատերը. ես եւս բարեւեցի: Բարեւս ընդունելով՝ մի հայեացք ձգեց նա վրաս, ապա մօտեցաւ ու

հարցրեց ինձ թէ ես ո՞վ եմ, ի՞նչ տեղից եմ: Յայտնեցի իմ ո՛վ եւ ո՛րտեղից եկած լինելս: Հարց ու փորձ արեց ռուսահայոց կեանքի, իր ծանօթների մասին: Աշխատեցի ամէն կերպ բաւարարութիւն տալ իշխանի հարցասիրութեանը:

— Չա՛տ աղէկ, չա՛տ աղէկ, գոհ եմ ծանօթանալուս. ահա իմ այցելատոմսը (որի վրայ գրուած էր Ֆրանսերէն).—



Վահրամ խան Տատեան

*Prince Vahran Dadian*
Premier Aide - de - Camp de S. M. I. le Schah
Inspecteur Général de l'Armeé Persane

եւ կը խնդրեմ որ չթերանաս այցելութեան

գալու ինձ, որպէս զի ներկայացնեմ իշխանուհուն»:

*Այս խօսքերով ձեռք տուաւ ինձ եւ մեկնեց Թատրոնից: Մի քանի օր ուշացրի, ի հարկէ, այցելութիւնս, որ «Հայավարի» դուրս չգայ: Կողմնակի կերպով իմացայ թէ ո՛ր եւ առաւօտեան ի՞նչ ժամին է աւելի ազատ լինում իշխանը որ քաղցր պարտաւորութիւնս կատարեմ: Որոշուած օրը գնացի եւ պատիւ ունեցայ ներկայանալու եւս* իշխանուհի վանդային ամուսնու պէս բարձրահասակ, բարեկազմ եւ եւրոպական տիպով խիստ գեղանի մի Տիկին: *Կարծեցի օտարազգի Տիկինը հայերէն ամենեւին իմանալիս չպիտի լինի, բայց որչափ մեծ եղաւ զարմանքս եւ հիացումս, երբ Իշխանուհին* սկսեց այնպիսի մաքուր հայերէն խօսել, *որը, ճշմարիտ ասեմ, երբեք չեմ լսած Պետերբուրգի գոնէ հէնց մի հայ ընտանիքում: Համարձակութիւն էլ լինէր, բայց չկարողացայ ինձ զսպել եւ չհարցնել թէ Իշխանուհին, իբրեւ օտարուհի ի՞նչպէս է կարողացել այդչափ լաւ եւ մաքուր հայերէն սովորել:*

— *Թողութիւն կ՚ընէք, պարոն, պատասխանեց Իշխանուհին փափուկ ժպիտով,* հայու հետ ամուսնանալով այլեւս օտարուհի մը չեմ, այլ հայուհի մըն եմ. միթէ կրնա՞յ ըլլալ որ հայուհին իր ազգային լեզուն չգիտնայ»:

*Այս խօսքերից ա՛յնչափ զգացուեցի որ*

արտասուքս դժուարութեամբ կարողացայ զսպել...

Նորերս ռուս հեռագրական գործակալութիւնը Թեհրանից հաղորդեց մի ուրախալի լուր թէ «Իշխան Գադեանը նշանակուել է Արդարութեան Նախարարի օգնական»:

5 Օգոստոս Տիգրան Գեղամեան

Ս. Պետերբուրգ (Հովիտ, Թիֆլիս 1910 թ. 18, էջ 282—4):

1916 Սեպտ. 11ին կը ծանուցանէ Թիֆլիսի Հովիտ. «Օգոստոս 12ին Թեհրանում վախճանուել է Վահրամ-Բէյ Տատեան, որ ստացել էր Նասրէդդին Շահից Իշխան (prince) տիտղոսը: Վահրամ-Բէյ Տատեանը համիդեան հալածանքների ժամանակ՝ 1888 թուին[1] եկել էր Թեհրան, երիտասարդ հասակում... Նասրէդդին Շահը, Սատրազամ Աթաբէկը, նոյնպէս Մուզաֆֆէրէդդին եւ Մահմէդ Ալի Շահերը հովա–

[1] Ինչպէս ճշդեցինք վերը՝ Վահրամ Պէյ 1890ին տակաւին Պոլիս կը գտնուէր (Տե՛ս Ծաղիկ, Կ. Պ. 1890 թ. 3, էջ 7), հետեւաբար սխալ է Հովիտի կարծիքը թէ Վահրամ Պէյ 1888ին անցած է Պարսկաստան: Այս մասին Գեղամեանի տուած թուականը — 1890-1891 — ճիշդ է:

1888 Հոկտեմբերին Պէշիկթաշի Տատեանց Ապարանքին մէջ մեծահանդէս տօնախմբութիւն կ՚ըլլայ Յարութիւն-Գարեգին Տատեանի փաշայութեան բարձրագոյն պատուաստիճանին բարձրանալուն առթիւ: Այդ հանդիսութեան ներկայ են եւ հիւրընկալ՝ Վահրամ Պէյ եւ Տիկին վանտա (Տե՛ս Արեւելք, Կ. Պ. 1888 թ. 1425, Հոկտ. 4—16):

նուիրեցին, պաշտօններ տուին Իշխանին, ռոճիկ սահմանեցին եւ նա... մինչեւ այսօր ապրեց Թեհրանում... Նա մեռաւ անզաւակ ··· Նրա բարի, ազնիւ, հայասէր ամուսինը զրկուեց օտարութեան մէջ իր միակ նեցու-կից» (Հովիտ, Թիֆլիս 1916 Թ· 35, էջ 549)։

Վահրամի մահուան օրը անձնասպան կ'ըլլայ Տիկ· Վանոա։

Վահրամ Պէյ Տատեանի լուսանկարը՝ իբրեւ Պարսից Արդարութեան Նախարարի օգնականի՝ տուած է Հովիտ, 1910, Թ· 18, էջ 273, որուն կլիշէն մեզ հաճեցաւ ղրկել Տիկ· Զարուհի Ֆէրուհխան։ Տիկ· Վանոայի մէկ լուսանկարը, քաշուած Բուդապեշտ 1890ին՝ Վիեննայի մեր Թանգարանին նուի-րեց նոյնպէս Տիկ· Զարուհի Ֆէրուհխան (Իսթանպուլ)։ Շնորհակալութիւն Ազնիւ Տիկնոջ։

Ե· Տրդատ-Համազասպ·— Ծնած է 1860ին՝ Պէշիկթաշ։ 1876ին Կայսերական լիսէն մտնելով 1882ին վարժարանին ընթաց-քը կ'աւարտէ եւ Օսմ· կառավարութեան զանազան պաշտօնները կը վարէ։ 1883ին կը վերականգնէ Պէշիկթաշի Մաքրուհեան երկ-սեռ վարժարանը, որ իր հօրեղբօր աղջկան՝ Տիկ· Մաքրուհիի ծախքով կառուցուած էր եւ վերջին աստիճան անկեալ վիճակ մը ու-նէր։ 1884ին Թաղական խորհուրդի անդամ կ'ընտրուի, վարելով երկսեռ վարժարանին Տնօրէնութիւնը 12 տարի շարունակաբար։ Վարժարանը իբր բարձրագոյն Նախակրթա-րան Պոլսոյ ազգային վարժարաններու մէջ

*առաջնակարգ դիրք մը կը գրաւէր:* *Կազմած* է «Մաքրուհեան Ուսումնասիրաց Ընկերութիւնը», *նպատակ ունենալով* աղքատ աշակերտաց գրենական պէտքերն հոգալ եւ կարօտ Տրչանաւարտներու բարձրագոյն վարժարաններու մէջ պաշտպանութիւնն ստանձնել: *Իր եղբօր՝* Վահրամ Պէյի[1] *աջակցութեամբ կազմել տուած է* Կրթական Մարմ



Տրդատ Պէյ Տալեան

նամարզական Ընկերութիւն մը: *Ութը տարի թաղականութեան պաշտօն վարած է*

[1] *Ցաւալի վրիպումով «Պալեան» մականունը տպուած է մեր երկին մէջ (Պատմութիւն Հայ Մշակութային Ընկերութիւններու, Ա. Վիեննա 1957, էջ* 174—5), *փոխանակ* «Տալեան»*ի*:

իբրեւ Ատենապետ նոյն Խորհրդին: Կարեւոր ծառայութիւններ մատուցած է Պէշիկթաշի ազգային շրջանակին: 1909ին Եէնի–Գիւղի Թաղական Խորհրդոյ անդամ ընտրուած է եւ մինչեւ այսօր կը վարէ նոյն պաշտօնը: 1910ին վանօրէից խորհրդոյ անդամ ընտրուած է... 1913ին Պէշիկթաշէն երեսփոխան ընտրուած է: Անդամ արդի Քաղ. Ժողովին» (Տարեցոյց 1914, Կ. Պ., էջ 69–70: — Տե՛ս նաեւ Լոյս, Կ. Պ. 1884 Թ. 475: — Արեւելք, Կ. Պ. 1885 Թ. 520. Նոյն՝ 1902 Թ. 5082. Նոյն՝ 1906 Թ. 6349):

Տրդատ Պէյ ամուսնացած է Օր. Ֆորթիւնէ Տէմիրճիպաշեանի հետ: Արեւելք (1900 Թ. 4378) 1900 Յուլիս 17/30ին նախ ծանուցանելէ յետոյ թէ «Անցեալ Հինգշաբթի օր Ազգ. Պատրիարքարանի մէջ տեղի ունեցաւ Նշանախօսութիւնը Տրդատ Պէյ Տատեանի ընդ Օր. Ֆորթիւնէ Տէմիրճիպաշեանի»՝ քիչ ետքն ալ կը նկարագրէ հարսանիքը՝ 1900 Օգոստոս 7ին գրելով:

«Տատեան Տրդատ Պէյի ընդ Օր. Ֆորթիւնէ Տէմիրճիպաշեանի պսակադրութեան հանդէսը երէկ Պէշիկթաշի եկեղեցւոյն մէջ կատարուեցաւ... Հանդէսին կը նախագահէր Տ. Վահրամ Եպիսկ. Մանկունի, իր շուրջը ունենալով Գէորգ Երէցեան Սրբազանը, Վահան եւ Ծահպազեան վարդապետները... Բարձ. Յարութիւն փաշա, որ կնքահայրութեան պաշտօնը պիտի կատարէր, հիւանդ ըլլալով՝ չկրցաւ նոյն իսկ ներկայ գտնուիլ. իր կողմէ կնքահայրութեան պաշ–

*տօնը կատարեց* Իլիաս էֆ․ Զայեան։ *Ներկայ էր* Տիրան Պէյ Տատեան, *որ ի դիմաց իր հօրը՝ Յարութիւն Փաշայի ընդունեց ներկաներու շնորհաւորութիւնները, ինչպէս հարսին կողմէ ներկաներու խնդակցութիւնները կ'ընդունէին մայրը՝* Տիկ․ Մարիամ Տէմիրճիպաշեան, *եղբայրները եւ քոյրերը*․․․



Զայեան – Նազգաշեան – Ֆէրահեան ընտանիքներ․
Օր․ Շահպազ — 1917, Պոմոնիի, Յուլ․ 17

Եկեղեցական արարողութեանց աւարտման՝ հանդիսականք Տրդատ Պէյի բնակարանը գացին, ուր շնորհաւորութիւնք եղան եւ հիւրերը մեծարուեցան Տատեան Գերդաստանի դարաւոր եւ փառաւոր հիւրասիրութեամբ» (Արեւելք, 1900 Թ. 4385):

Տրդատ Պէյ Տատեանի կինը՝ Ֆորթիւնէ աղջիկն է Եճովք Տէմիրճիպաշեանի եւ Մարիամի, որոնց հինգ զաւակներն են. Սեպուհ, Խոսրով, Գայիանէ, Նեմզուր եւ Ֆորթիւնէ: Ասոնցմէ Սեպուհ Տէմիրճիպաշեան († 1905 Նոյ. 19) իր բարձրագոյն ուսումը Պարիս ընելէ յետոյ՝ եղած է անուանի սեղանաւոր մը եւ Սպարապետի Դրան Հայթայթիչը, արժանացած Գ. կարգի Մէճիտիէ պատուանշանին եւ Միւթէմայիզի աստիճանին (Արեւելք, 1915 Թ. 6033):

Տիկ. Զարուհի Ֆէրուհխան կը գրէ Պոլսէն. «Տրդատ Պէյ Տատեան հանճարեղ ճարտարագէտ էր եւ կառավարական պաշտօն վարած ըլլալով՝ պատուանշանով պատուուած էր: Եղած է ազնիւ, բարեհամբոյր եւ ազգասէր: Ամուսնացած Ֆորթիւնէ Տէմիրճիպաշեանի (զարմուհին բանաստեղծ Եղիա Տէմիրճիպաշեանի) հետ՝ ունեցած էր 2 դուստր, մին՝ Աննա–Արեգնազ – Մելինէ (ծն. 1901 Մարտ 19ին), որ կը մեռնի շատ երիտասարդ, Բարիզի մէջ 1935ին ամուսնացած եւ Տատ անունով զաւակ մը ունեցած է.

միւսը՝ Մառի (ծն. 1902 Օգոստ. 27)[1] ամուսնացած է Կերեւամեանի հետ, որ 1938ին անզաւակ մեռած է։ Մառի երաժշտագէտ, դաշնակահարուհի – քննադատ եւ լեզուագէտ է։ Դաշնակի դասերը առած է «լէկէ»էն, որ Պոլսոյ լաւագոյն դասատուն էր։ Վերջը մեկնած է Գերմանիա, ուր շարունակած է գերման ուսուցչէ մը դաս առնել, յետոյ մեկնած է Ֆրանսա եւ նշանաւոր դաշնակահար



Մառի Կերեւամեան

«Forto»ի գպրոցին դարընթացքները աւար–

---

[1] Մկրտուած է 1902 Հոկտ. 13ին Պէշիկթաշի եկեղեցին՝ կնքահայրութեամբ Յովհաննէս Իլիաս Զայեանի եւ կոչուած՝ Մարիամ – Արաքսի, ըստ Պէշիկթաշի եկեղեցիին Մկրտութեան Տոմարին։

տած է։ Լաւ դաշնակահարուհի մըն է։ Կը գրէ ֆրանսերէն Journal d'Orientի մէջ եւ Պոլսոյ «Ժամանակ» թարգմանաբար կու-տայ»։ Երբ կը գրէի այս տողերը՝ 1964 Մայիսին՝ «Ժամանակ»ի մէջ հանդիպեցայ Մառի Կերեւամեանի երաժշտական–քննադատական մէկ թարմ Յօդուածին սա՛ վերնագրին տակ. «Երգչուհի Տիկին Ալիս Մանուկեան», ուր կը գրէր Մառի.

«Խորունկ հիացումով ունկնդրեցի Կիրակի առաւօտ ձայնասփիւռէն, նախորդ Կիրակի Շանի մէջ նուագախումբի ընկերակցութեամբ տրուած Տկ. Ալիս Մանուկեանի նուագահանդէսին կրկնութիւնը։ Մեծ եղաւ զարմանքս եւ գոհունակութիւնս դէմ յանդիման գտնուելով իր ասպարէզին կատարելապէս տիրացող կատարելագործեալ արուեստագիտուհիի մը։ Արժէքաւոր սոբրանօ քօլօրաթուր մըն է Տիկ. Ալիս Մանուկեան, որ ձայնային եւ երաժշտական «րէժիսթր»ի վրայ կը ներկայացնէ մեծ ձիրքեր եւ դիւրութիւններ, ու հիանալի են իր բարձր «վօքալիզ»ները։ Ձայնը զօրաւոր եւ լայնածաւալ է, տաք եւ թաւշային իր հնչիւնը ձայնի ելեւէջներու ընթացքին։ Գեղեցիկ եւ յոյժ գոհացուցիչ են իր ֆրազինները, չափաւորուած երաժշտականութեամբ եւ «դադար»ով (բօզ)։ ... Շատ յաջող էր իր առոգանութիւնը իտալերէնի մէջ եւ ուշագրաւ իր ձայնային եւ երաժշտական մեթրիզը։ Ձայնավարժքերու (վօքալիզ) մէջ արտակարգ ջընջութեամբ մը իր ձայնը կը հասնի բարձրա-

դոյն կատարներու։ Մետաղային ոչ մէկ ձայն խղեց ներդաշնակութիւնը, ուշադրաւ ոչ մէկ ջանք խորտակեց զայն․ արտակարգօրէն զօրաւոր է նաեւ իր շունչը։ Փոքր վերապահութիւն մը միայն․ բարձրագոյն ձայնանիշերը երգած պահուն ձայնը կորագծէ (քուրպ) մը չանցնելով քիչ մը բարձրանիշ կը հնչէ, սակայն դիւրաւ կարելի է սրբագրուիլ, մանաւանդ Տիկ․ Մանուկեանի պարագային, ուր ամէն ինչ համասեռութիւն, ներդաշնակութիւն եւ երաժշտական հաւասարակշռութիւն է։

Այս արժէքաւոր երգչուհին պատիւ կը բերէ մեր երկրին եւ մանաւանդ իր ազգին, կարելի է դասել զայն մեծ երգչուհիներու շարքին, այն երգչուհիներուն՝ որոնք գիտեն դեղեցկութեամբ տալ իրենց չափը եւ իրենց արուեստով եւ հաղորդակից յուզումով տպաւորել իրենց ունկնդիրները։

(Ժամանակ, Կ․ Պ․ 1964 Թ․ 18․225)։

Մառի Կերեւամեան

Մեր խնդրանքին վրայ՝ հաճեցաւ Տիկ․ Մառի Կերեւամեան հաղորդել հետեւեալ մանրամասնութիւնը իր եւ իր ընտանիքի մասին․— «Հայրս՝ Տրդատ Պէյ Տատեան ծնաւ 1860 Հոկտ․ 10ին Պէշիկթաշ եւ կնքեց մահկանացուն Ենիգիւղի մէջ, 1916ին, 1900ին ամուսնացաւ Տէմիրճիպաշեան բարեհամբաւ ընտանիքի դստեր՝ Տիրուհիի (Ֆորթինէ, զարմուհին Եղիա Տէմիրճի-

պաշեանի) հետ: Տէմիրճիպաշեան ընտանիքը ընիկ խասգիւղցի, ունեցաւ ազգային Բարեբար մը՝ յանձին մեծ հօրս Ենովք Տէմիրճիպաշեանի, որ կառոյց Սրբենիայի (Վոսփոր) Գիւտ Տփոյ Ս. Եկեղեցին, ուր թաղուած է: Այն եկեղեցւոյ Թաղային Խորհուրդին ալ, իբրեւ հասոյթի աղբիւր, նուիրեց եկեղեցւոյ շրջակայքի տուներէն մէկ քանին:

Մայրս ծնաւ 1877ին Ենիգիւղ, իր ընտանեկան ծովեզերեայ ապարանքին մէջ, ուր կնքեց նաեւ մահկանացուն 1955 Օգոստ. 23ին:

Տիրուհի Տէմիրճիպաշեան – Տրդատ Պէյ Տատեան միութենէն ծնան, Պէշիքթաշի Տատեան բնակարանի մէջ (այժմ Հայկ. Վարժարան) երկու աղջիկներ, քոյրս՝ Աննա եւ ես: Աննա ծնաւ 1901ին եւ 1924ին Բարիզի մէջ ամուսնացաւ Գրիգոր Մերճանեանի հետ, որոնց միութենէն ծնաւ մանչ զաւակ մը՝ Տատ: Քոյրս կնքեց մահկանացուն 1936ին:

Ես, կրտսեր դուստրս, ծնայ 1902ին Պէշիկթաշ եւ 4–5 տարեկանիս ընտանեօք փոխադրուեցանք Ենիգիւղի մեր ծովեզերեայ տան մէջ (Տէմիրճիպաշեան ընտանիքի գեղեցիկ տունը, որ ծախուեցաւ 1963ին):

Գեղարուեստական զբաղումներուս գալով՝ դաշնակի դասերս սկսայ 4 տարեկանիս, մօրաքրոջս՝ Նեմզիւր Տէմիրճիպաշեանի հովանաւորութեան ներքեւ, որ խղճամիտ դաշնակահարուհի մըն էր: Վեց տարեկանիս ունեցայ գերման ուսուցիչ մը եւ յետագային ալ

քաղաքիս լաւագոյն ուսուցիչները։ 1922ին քրոջս հետ մեկնեցայ Գերմանիա՝ երաժշտութեան հետեւելու համար։ Քանի մը ամիս Վիեննայի երաժշտանոցը՝ Ճէյմս Քվասթի աշակերտելէս յետոյ՝ Պեռլին գացի, ուր Ֆէրուչիս Մուզօնի յանձնարարեց զիս աւստրիացի Gottfried Galstonի, որ դաշնամուրի ականաւոր վարպետ եւ մեծ արուեստագէտ մըն էր։ Երաժշտական սեղմ չփումներ ունեցայ նաեւ դաշնամուրի վարպետներ՝ Zadoraի, Egon Petriի, Clodio Arauի եւ Edwin Fischerի հետ, որմէ առաջնորդուեցայ Պեթհովենի Սոնաթներուն։ Պերլինի մէջ աշխատեցայ նաեւ «Սերմօնի»ի եւ «քօնթըրըբուան»ի Langheinrichի հետ եւ աւելի վերջ ալ Kurt Weilի հետ։ 1924ին Բարիզի մէջ դարձեալ աշխատեցայ դաշնակի՝ Բարիզի պետական երաժշտանոցի յայտնի ուսուցիչներէն Ignace Philippeի հետ։

1936ին Իսթանպուլի մէջ ամուսնացայ «Սթենտըրտ Օյլ»ի տնտեսներէն՝ Հրանտ Կերեւամեանի հետ։ 1939ին այրիանալով՝ ապրեցայ մօրս հետ մինչեւ 1955, իր մահուան թուականը։

Մասնաւոր ուսուցիչներով դաստիարակուած ըլլալով՝ վարժարան չեմ յաճախած եւ բացի մայրենի լեզուէս՝ կը խօսիմ ֆրանսերէն, անգլիերէն, գերմաներէն եւ յունարէն լեզուները։

1958էն ի վեր քաղաքիս երաժշտական քննադատներէն եմ։ Չորս տարի Journal d'Orient Ֆրանսագիր օրաթերթի աշխատակ–

ցել յետոյ՝ տասը տարիէ ի վեր ալ երաժըշտական քննադատն եմ «Ժամանակ» օրաթերթի»:

Տատեան Գերդաստանի 20րդ դարու շառաւիղ, գեղարուեստական բարձրագոյն ուսման դափնիով պսակուած այս խոնարհամիտ Տիկինը՝ Մառի Կերեւամեան՝ փառք մըն է իր դարաւոր Գերդաստանին եւ պատիւը իր Ազգին: Մե՛ղք որ աւելի լայն շրջանակներու եւ ասպարէզներու վրայ փայլելու առիթը չէ տրուած իրեն: Մանիշակի մը համեստութեամբ նախընտրած է փոքր շրջանակի մը մէջ գործել:

Իր կլիշէն ուրախութեամբ կը զետեղենք այստեղ:

Տրդատ Պէյ Տատեան կը վախճանի 1916 Մայիս 18ին (հ. տ.): Նէճիպիւղի Թաղ. Խորհուրդը փառաւոր յուղարկաւորութիւն մը կը կատարէ Ս. Աստուածածին եկեղեցւոյ մէջ՝ նախագահութեամբ Տէր Գաբրիէլ Արքեպիսկոպոս Ճէվահիրճեան Սրբազանի եւ մարմինը կ՚ամփոփուի Նէնեգիւղի գերեզմանատունը: Այս առթիւ կը տողէ Ժամանակ (1916 թ. 2462–3):

«Տրդատ Պէյ Տատեան ազնուական հին Գերդաստանէ, բարձր դաստիարակութեամբ օժտուած, մեծ յարգ կը վայելէր իբր պետական պաշտօնեայ եւ միշտ ու ամենուն կողմէ սիրուած էր իբր ուսուցիչ պետական բարձրագոյն վարժարաններու: Հանգուցեալը քանիցս վարած է Քաղաքական Ժողովի եւ

Ուսումնական Խորհուրդի անդամակցութիւնները»:

Տրդատ Պէյի կլիշէն սիրայօժար տրամադրեց մեզ Տիկ. Զ. Ֆէրուհխան:

գ. Արշակ-Առաքել.— Ներսէս-Խոսրովի վեցերորդ զաւակը Արշակ-Առաքել ծնած է 1865ին եւ մկրտուած Պէշիկթաշի եկեղեցին 1865 Յունիս 27ին՝ Տիրան Պէյ Տատեանի կնքահայրութեամբ: Արշակ-Առաքել մեռած է երիտասարդ հասակի մէջ 1894 Օգոստոս 11ին եւ թաղուած Մաքրիգիւղի եկեղեցւոյն շրջափակին մէջ: Արշակ-Առաքել ամուրի էր[1]:

է. Խոսրովուհի.— Ներսէս-Խոսրով Պէյ Տատեանի եօթներորդ եւ վերջին զաւակն է Խոսրովուհի, որ ծնած է 1861ին: Հաւանօրէն ինքն ալ կրկնանուն էր: Խոսրովուհի ամուսնացած է Գրիգոր Բաշալեանի (Հօրեղբայրը՝ գրագէտ Լեւոն Բաշալեանի) հետ, որ եղած է Սելանիկի կառավարական կալուածներու Տնօրէնը: — 1888 Հոկտ. 4-16ին հիւրընկալ է Օր. Խոսրովուհի Յարութիւն Փաշայի փաշայութեան հանդէսին (Արեւելք, 1888 թ. 1425):

Մաքրիգիւղի Ծնունդ Ս. Աստուածածին եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ը կու տայ ծանօթութիւն Խոսրովուհիի մասին: Այդ «Տոմար»ի համեմատ Խոսրովուհի ծնած է

[1] Ըստ Պէշիկթաշի եկեղեցւոյ «Ննջեցելոց Տոմար»ին՝ Արշակ-Առաքել եղած է Արտաքին Գործոց նախարարութեան մէջ քարտուղար. մեռած է կարուածէ:

1861ին, մեռած է 1934 Հոկտ. 23ին՝ 73 տարեկան. կրած է երկարատեւ սրտի հիւանդութիւն: «Տոմար»ի արձանագրութիւնն է.

«1934 Հոկտ. 23 – Խոսրովուհի Փաշալեան (դուստր Ներսէս Պէյ Տատեանի), 73 տարեկան (Հիճրէթի 1277ին ծնեալ). Բնակավայր՝ Բերա, Էսկիշէհիր, Տօլապտէրէ ճատտէսի Թիւ 61. երկարատեւ սրտի հիւանդութենէ. Մագրիգիւղցի»:

Խոսրովուհի եւ Գրիգոր մնացած են անզաւակ:

5. Արուսեակ.— Յովհաննէս Ամիրայ Տատեանի հինգերորդ զաւակն է Արուսեակ ծնած 1828 Յունուար 28ին: Ամուսնացած է Գէորգ Ա. Մարգարեանի հետ: Ունեցած են զաւակներ, որոնց յիշատակութեան չենք հանդիպած: Իրենց զաւակներէն միայն մին ծանօթ է.— Սրբուհի:

Տիկ. Արուսեակի եւ Գրիգոր Մարգարեանի սերունդի մասին կու տայ Տիկ. Զարուհի Ֆէրուհխան հետեւեալ ծանօթութիւնները.

«Արուս Հանըմին աղջիկն էր Տիկին Սրբուհի Թօփհանէլեան, անոր աղջիկն է Սէզարիկ, ամուսնացած Տօքթ. Շահպազի (†1926) հետ, որ մանկաբարձ էր. ունէին 2 զաւակ, աղջիկ մը՝ Մարգրիտ Փափազեան, որ մեռած է 1946ին անզաւակ, որդի մը՝ Գրիգոր Շահպազ, մեռած 1945ին Փարիզ, ամուսնացած էր Հեղինէի հետ, որմէ ունեցած էր 2 աղջիկ, մին՝ Մեհրինէ Շահինեան, որ 2 աղջիկ ունենալով՝ գաղթած են Ամե-

րիկա, *իսկ միւս աղջիկն է՝* Սրբուհի, *մեկնած* Իտալիա»:

*Տիկ. Արուսեակի մահուան մասին կը գրէ հին Տատեան «Ցանկ»ը.* «1881 *Յուլիս 6ին* Ազնուափայլ Արուս Հանըմ Տատեան եւ Մարգարեան *Իսկիւտար Թօփհան օղլուն վախճանեցաւ եւ* Իսկիւտարի գերեզմանատունը թաղուեցաւ»:

*Իր մահը կը գուժէ Պոլսոյ* Լոյս (1881 *Թ.* 171, *Յուլ.* 15*ին*).

«*Տատեան բարեհամբաւ Գերդաստանն անցեալ շաբթու խիստ ցաւալի կորուստ մ'ըրաւ: Բարեյիշատակ Յովհաննէս Պէյի դուստր...* ազնուափայլ Տիկ. Արուս Գ. Մարգարեան *իւր մահկանացուն կնքեց... ի խոր սուգ համակելով իւր ազնուազարմ* զաւակունքն... *Բարեյիշատակ հանգուցեալը* սրտի եւ մտաց գեղեցիկ յատկութիւններով, առաքինութեամբ, բարեպաշտութեամբ եւ մանաւանդ իւր սիրասուն զաւակացը տուած բարւոք դաստիարակութեամբն այն հազուագիւտ Հայ կիներէն մին էր, որք իրաւամբ կը փայլին Ազգին բարձրագոյն դասուն մէջ եւ հետեւաբար պատիւ կը բերեն իրենց Ազգին եւ Գերդաստանին»:

*Տիկ. Արուսեակ Տատեանի ամուսնոյն՝* Գէորգ Ա. Մարգարեանի *մասին գտած ենք յիշատակութիւն մը՝ Մարգարեանի* մահուան տարին, *որմէ կ'իմանանք որ Գէորգ Ա. Մարգարեան ծնած է* 1820*ին* Պոլիս *եւ* Տատեան Տան փեսայանալով՝ *ունեցած է* «բարեսնունդ զաւակներ, որոնք իրենց ազնիւ

վարուքը եւ պարկեշտ կրթութեամբը իրենց հօրը յիշատակը անջնջելի պիտի պահեն»: *Գէորգ Ա. Մարգարեան մեռած է* 1868 *Հոկտեմբեր* 31*ին:*

*Զմիւռնիոյ լաւատեղեակ հայ թերթն է, որուն կը պարտինք այս սեղմ, բայց միակ ծանօթութիւնը: Թերթը* 1868 *Նոյ.* 23*ին կը տեղեկագրէ.*

«*Կ. Պոլսոյ հայ ազնուականներէն* Մեծ. Գէորգ Աղա Ա. Մարգարեան, *որ ժամանակէ մը ի վեր ցաւալի հիւանդութեամբ մը կը տառապէր, անցեալ ամսոյ* 31*ին առ Աստուած փոխեցաւ ի հասակի* 48 *ամաց, անմխիթար սգոյ մէջ թողլով իւր ազնիւ ընտանիքը եւ իւր բազմաթիւ ազգականները: Այս բարեպաշտ պատուական անձը, որ* Տատեան պայծառափայլ Գերդաստանին փեսայացեալ *էր, ուսումնասէր եւ բարեսունդ զաւակներ կը թողու, որոնք իրենց ազնիւ վարուքը եւ պարկեշտ կրթութեամբը իրենց հօրը յիշատակը անջնջելի պիտի պահեն»* (Արշալոյս Արարատեան, *Զմիւռնիա* 1868 *թ.* 845, *Նոյ.* 23):

*Շատ զարմանալի է որ բոլորովին անծանօթ մնացած են իր զաւակներն ու սերունդը: Հայ Մամուլի մէջ բա՛ն մը չենք գտած:*

6. Յարութիւն–Գարեգին.— *Բովանդակ Տատեան Գերդաստանի Պատմութեան մէջ* պատուոյ եւ աստիճանի *տեսակէտով ամենաբարձր դէմքն է* Յարութիւն–Գարեգին Պէյ Տատեան: *Ինքն է միայն որ բարձրացած է*

*մինչեւ* Միւշիւրութեան – Փաշայութեան *ամենաբարձր պատուաստիճանին, որուն կարող էր հասնիլ Թուրքիոյ մէջ Հայ քրիստոնեայ մը: Անշուշտ ասիկա ապացոյց է Յարութիւն – Գարեգինի* բացառիկ տաղանդին, պետական մարդու իր արտակարգ կարողութեան *եւ թերեւս նաեւ առանձին* վստահութեան ու համակրութեան *Սուլթան Համիտի կողմէ:*

*Յարութիւն Փաշա Տատեանի մասին մեր ունեցած նիւթը ընդարձակ եւ պէսպիսուն է: Կը խօսինք առանձին վերնագիրներով:*

Ծնունդ եւ կրթութիւն

*Յարութիւն – Գարեգին ծնած է Այ—Ստեֆանօ* 1830 *Ապրիլ* 5*ի Աւագ շաբաթ օր եւ Զատկի Յարութեան ի պատիւ՝* Յարութիւն *կը կոչէ մկրտող Տ. Ստեփան քհնյ: Երկու տարեկան եղած ատեն հետեւեալ արկածը կը պատահի իրեն, զոր գրի առած է հայրը՝ Յովհաննէս Ամիրայ. «...* 1832 *Դեկտեմբեր* 10*ին Յարութիւն – Գարեգինը փոքր տղայ ըլլալով, առտըվանց կանուխ տղայքը ամմենքը մէկտեղ ի քէն ինչպէս կ՚ըլլայ տղին առջին բան մը կ՚իյնայ, ուսկից պակուցեալ կը զարհուրի ու վրան արհաւիրք մը կու գայ, ջղերը ցնցումը առնելով, անանկ որ խեղդամահ ըլլալու վիճակ կ՚իյնայ: Ծնողքը եւ բոլորը կը շուարին, վասն զի ո՛չ բժիշկ մը կար եւ ոչ մէկ ճար մը կրնային ընել:* Մարգրիտ խաթունը (*Յովհաննէս Պէյի մայրը*) *կոնակին ցռումն* (*հաճամաթ*) *ըրավ*

*ալ նէ այլեւս կատղեցաւ․ ասանկ մէկ երկու ժամ չարչարուեցաւ տղան։ Ինչ եւ իցէ քիչ մը միջոց տըվալ օրօրոցին մէջ կը քնանար․*



Արքին Փաշա

մէկ մ՚ալ յանկարծ աս արհաւիրքը կրկնեց. անանկ որ գլխուն մազերը բոլորը տնկվեցաւ ու կը խեղդըվէր չարչարանօք։ Մահտեսի Տատ՝ Հայրը Յօհաննու՝ Ս. Երուսաղէմ ուխտի գացեր էր նէ, տնօրինական տեղերուն ամմէնէն ալ մէկ մէկ կտոր մասունք առեր ու փոքրիկ սնտուկի մը մէջ պահած էր. Յօհ. Տատեանը առավ եղբօրորդիքներէն. անիկակ սենեկին բարձր տեղ մը դըրված էր. ալ ամմենքը յուսակտուր միւս խելահաս եղբարքը կ՚ողբան վրան – ծնողքը նոյնպէս։ Մայրը՝ Եագուբ խաթունը ամուսնոյն աղաղակելով ըսավ. «Մի չուարիր, բեր հօրդ բերած մասունքները վրան դիր»։ Եւ Յովհաննէս Տատեանը սնտուկը առաւ բերաւ. բացաւ ու նախ եւ առաջ ձեռքը եկաւ այն մասունքը թղթով, որուն վրայ գրած էր. «Սրբազնասուրբ գերեզմանին Քրիստոսի կափարիչ վէմէն է»։ Իսկոյն Յօհաննէսը կատարեալ հաւատով գինքը խաչակնքելով՝ միւս աղայոց ըսավ. «Քրիստոս յարեաւ ի մեռելոց» ըսէք։ Տղաքը «Քրիստոս յարեաւ» ըսելնիքէն միաբերան ու Յօհաննէսը նոյն կտոր մասունքը Յարութիւնին գլխուն վրայ դնելով՝ «Յանուն Յիսուսի Քրիստոսի» ըսելովը, ո՛վ սքանչելեացս, իսկ եւ ի նմին պահու յական թօթափել արհաւիրքը դադրեցաւ ու նոյն իսկ ժամուն աչքը բացաւ, եղբարցը երեսը նայելով սկսավ խնդալ ու իրեն դաջեակէն սորված խաղը երգել։ Աս տեսն անպատմելի կ՚ըլլայ ծնողաց ուրախութեան վիճակը եւ Աստուծոյ սքանչելիքը ակնյանդի–

ման տեսնելովնին, հաւատքը, յոյսը, սէրը միանգամայն ի միում վայրկենի իրենց ազդեցութիւնը մարդուս վրայ ըլլայ նէ ի՛նչ վիճակ կը ստանան ծնողքը եւ հոն գտնըվօղքը, միայն կրօղը կրնայ հասկնալ եւ բացատրութիւն չի կրնար ըլլալ։ Այս դիպուածէս յետոյ մայրը դարձեալ ուխտ ընելովը, յաջողիկայ չարթու Ուրբաթ օրն Իւսկիւտար Սուրբ Խաչ խրկեց Մարգարիտ Խաթունին հետ եւ անկէց ետեւ այլեւս ոչ երբեք պատահեցաւ» (Յովհաննէս Ամիրայ Տատեանի անտիպ «ժամանակագրութիւն»․ տե՛ս Թ․ Ազատեան, Տատեան Գերդաստանը, անդ՝ էջ 18–19)։

Յարութիւն–Գարեգին իր նախնական ուսումը՝ հայերէն եւ ֆրանսերէն տանը մէջ մասնաւոր ուսուցիչներէ եւ դաստիարակներէ ստացած է։ Արեւելք (1888 թ․ 1424) կը գրէ «Վսեմ․ Յարութիւն Փաշա իւր պատանեկութեան ժամանակ Պոլսոյ մէջ ուսած է այլեւայլ գիտութիւններ ու լեզուներ»։ Ուսումը շարունակելու եւ բարձրագոյն ուսման ընթացք մ՚ընելու համար 1842 Հոկտեմբերի սկիզբը ծովային ճամբով, հօրը եւ Ներսէս–Խօսրով եղբօրը հետ դէպի Եւրոպա կը մեկնի։ Ճամբան Իզմիր հանդիպելով՝ կ՚այցելէ տեղւոյն Ս․ Մեսրոպեան վարժարանը, ուր հիւրերու տետրակին մէջ կը ստորագրէ․ «1842 Հոկտ․ 7 Յարութիւն Գարեգին Տատեանց, եկի հօրս հետ տեսանել գդպրոցն Ս․ Մեսրոպայ» (Արեւելք, Կ․ Պ․ 1899 թ․ 4059)։

*Հոս խօսքը կու տանք* ժամանակակից փրանսացի գրագէտի *մը* — Eugène — *որ* 1844*ին* Պարիս*ի մէջ լոյս տեսնող* Revue Sintétique des Sciences *պարբերաթերթին մէջ Յօդուած մը նուիրելով* Յովհաննէս Ամիրայ Տատեանի՝ *յիշատակած է նաեւ* Յարութիւն – Գարեգինը *գրուատիքի բառերով*: Eugène*ի այդ Յօդուածը, ինչպէս ըսած ենք վերը՝* Արշալոյս Արարատեան*ի խմբագրութիւնը հայերէնի թարգմած եւ իր թերթին մէջ տպագրած է՝ առանց ըսելու թէ այդ Յօդուածը Փրանսերէն թերթին մէջ ե՞րբ լոյս տեսած է: Կը թուի թէ* 1844*ին լոյս տեսած է: Ահա* Eugène*ի տողերը Յարութիւն – Գարեգինի մասին*.

«1842 *Նոյեմբեր* 8 – 20*ին Մեծապատիւ Վառօդապետ Յօհաննէս Ամիրայ Տատեան իր երկու տղուն հետ* Փարիզ *եկաւ, ուսկից անմիջապէս Անգլիա անցաւ*... Յարութիւն-Գարեգին Աղան, Փարիզու ճեմարանին[1] պաշտօնատար (*օֆիսիէ*) Մօսիւ Ժիլէ Տամիթի խնամոց յանձնուեցաւ, որ խիստ ծանուցեալ է սինթեթիք ըսուած իր գործերովը, *որուն աշխատակից եղած են նաեւ* Մօսիւ Թայլըֆէր, յիշեալ ճեմարանին վերակացուն (*Տնօրէն*) ու Տօքթըր Հանքէլը Նամուրի: *Կը լսենք թէ* Նորահասակ Յարութիւն Աղան մեծ յառաջդիմութիւններ ըրած է ու կը շարունակէ ընելու» (Revue Sintétique

[1] *Անունը չի ճշդուիր. չ'ըսուիր թէ Պարիսի ո՞ր վարժարանն է:*

des Sciences, Paris, Eugène. *Թարգ.* Արշ. Արարատ., 1844 *Թ.* 174–5, *Յունուար* 21–2):

*Պոլսոյ* Արեւելք (1888 *Թ.* 1424) *կը գրէ որ Ցարութիւն Տատեան իր բարձրագոյն ուսման համար «հռչակաւոր Րէշիտ Փաշայի եպարքոսութեան օրով իւր հօր, Յօհաննէս Պէյի հետ* Փարիզ *գնացած եւ անդ* ՍէՆ Պառպի, Լուի լը Կռանի ու Սորպոնի *բարձրագոյն վարժարանաց մէջ կատարելագործած է իւր ուսումը...»:*

*Ի՞նչ կը սորվէր Ցարութիւն–Գարեգին: Ժամանակակից հայաթերթը այս մասին եւս ունի տեղեկութիւն: Նա կը տեղեկագրէ* 1843 *Յուլիս 23ին:*

«*Յունիս 22ին* Տատեանն ազնուական Յապութիւն–Գարեգինն Աղայինն ուսմանց հարցաքննութիւնը *կատարուեր է* Փարիզ, *մասիւ* ժիլէ Տամիթինն Ուսումնարանինն մէջ, *որն որ* Գաղղիոյ թագաւորական ձեմարանինն *պաշտօնատար է* (*օֆիսիէ*)... *Աս ժողովքին մէջը ներկայ գտնուեր են շատ երեւելի անձինք. առաջին Թարգմանը Օսմ. դեսպանատան, մասիւ Ժուանէն, առաջին Թարգմանը գաղղիացւոց Թագաւորին*, ՍէՆ Լուի արքայական դպրոցին Վարժապետները *ու քանի մը գաղղիացի երեւելի եկեղեցականներ: Հարցաքննութիւնը սկսելէն առաջ մասիւ* ժիլէ Տամիթը *հետեւեալ ճառը կարդացեր է.*

*Ազնուամեծար Պարոնայք,*

*Ներեցէք ինծի կ'աղաչեմ որ քանի մը խօսք գրուցեմ աս արժանայարգ ընկերու–*

*թեանը մէջ, որն որ ժողվըւեր է հոս տեղս* իմ ամենասիրելի աշակերտիս ուսումնական յառաջդիմութիւնը տեսնելու համար… *յատկապէս կ'ուղղեմ իմ խօսքս ազնուական* Յարութիւն Գարեգին Աղային: *Ինչո՞ւ համար, սիրելի զաւակ, աս պարոնները* քու գերազնիւ Հայրդ *ու աս պատուաւոր անձինքները հոս տեղս հաւաքուած են. կը փութամ ըսել քեզի թէ անոնց դիտաւորութիւնը ուրիշ բան չէ, բայց միայն գիտութեան մեծ ու կարեւոր բան ըլլալը ապացուցանելու քեզի: Հիմայ ասոնք քու աշխատութեանդ պտուղը քեզմէ կը խնդրեն տեսնել ու մեզի հետ մէկ տեղ քու արժանապատիւ ու գերյարգելի Հօրդ յայտնի ընել քու յառաջադիմութիւններդ… աղէկ գիտեն անոնք որ* հազիւ թէ վեց ամիս կայ հայրենիքէդ ելլելը *… Իսկ դուն, սիրելի Յարութիւն, ցուցուր այսօր քու բարի կամքովդ ամէն մէկ օրուան ըրած յառաջադիմութիւններդ… Աս ճառէն ետքը հարցաքննութիւնը սկսեցին հետեւեալ գիտութեանց վրայ.*— Վերլուծութիւն քերականական եւ տրամաբանական գաղղիարէն լեզուի. Գաղղիարէն գրականութիւն տեսական եւ գործնական. թուաբանութիւն, Աշխարհագրութիւն, Երկրաչափութիւն, Պատմութիւն, Ուրուագրութիւն եւ Բարոյական դաստիարակութիւն:

*Աս ամէն գիտութեանց վրայ զատ զատ հարցմունքներ ըրին*, որոնց խիստ ճշդութեամբ ու դիւրութեամբ պատասխանեց *Յա–*

*րութիւն – Գարեգին, որուն քիչ ատենուան մէջ այսքան յառաջադիմութեանը վրայ խիստ գոհ ըլլալով ներկայ գտնուող բոլոր անձինքը՝ իրենց խնդակցութիւնն ու բարեմաղթութիւնը յայտնեցին անոր* մեծապատիւ Հօրը, արքունի վառօդապետ Տատեան Յօհաննէս Աղային, որուն ազնուական սիրտը անպատմելի ուրախութեամբ եւ մխիթարութեամբ լեցուեցաւ...» (Արշ. Արարատեան, *Զմիւռնիա* 1843 *Թ.* 148, *Յուլ.* 23) :

Journal des Débats 1843 *Սեպտ.* 22*ին կը գրէ որ* «Յարութիւն – Գարեգին Տատեան, *որ հազիւ տասնուերեք ու կէս տարեկան կայ՝* շատ ուղիղ կը խօսի ու կը գրէ գաղղիերէն լեզուն... *Նոր եկաւ* Անգղիայէն, *ուր գացեր էր արհեստներու վերաբերեալ գլխաւոր գործատունները տեսնելու»* (*Արշ. Արարատ. անդ՝ Թ.* 160) :

*Իզմիրի* Արշալոյս Արարատեան *թերթը* 1844 *Փետրուարին կը տողէ.* «*Մեծ ուրախութեամբ եւ մխիթարութեամբ կը լսենք որ ուսմունքի համար* Փարիզ *գտնուած հայազգի նորահասակ տղաքները շատ յաջողութեամբ յառաջդիմութիւններ կ՚ընեն, որոնց մէջ երեւելի են* Նիկողոս Աղան Պալեան, *որ Մեծապատիւ* Արքունի ճարտարապետ Կարապետ Աղային տղան է *ու* Աղայ Յարութիւն Գարեգին Տատեանը : Աս ետքինին համար մօտ օրերս վերստին հարցաքննութեան հանդէս մը եղեր է *ի ներկայութեան* երեւելի գիտուն անձանց ու նախագահութեամբ մօսիւ Թայլըֆէրի, որ Փարիզու

ճեմարանին վերատեսուչն (Տնօրէն) է: *Հարցաքննութեան սկիզբը Մօսիւ Ժիլէ Տամիթ վարժապետը ուսումնասիրական երկար ճառ մը կարդացեր է, որուն լմնալէն ետքը Մեծ. Նախագահը հետեւեալ համառօտ ատենաբանութիւնը ըրեր է.*

*Պարոնայք,*

*Արդէն կը ճանաչէի արեւելեան երիտասարդներուն մեծ յաջողակութիւնը ու անձամբ եւս վերահասու եղած էի չատոնցմէ* զարմանալի ընդունակութեանը ու բարի հանգամանացը Հայոց Ազգին, որ գործունեայ ու հաւատարիմ ժողովուրդ մըն է... *աս բանս կ'ապացուցանէ ինծի թէ...* Հայերը մեծ ու ազնուական փափագ մը ունին զանազան ուսմանց համար: Բարեկրթութիւնը Արեւելքէն եկաւ մեզի, ուստի աներկբայ կրկին իր օրօրոցը դառնալու է: *Եւ եթէ նորահաստ արեւելքցիները կ'ընդունին բոլոր Եւրոպիոյ մէջ* սանկ մէկ աղէկ դաստիարակութիւն մը, ինչպէս որ կը տեսնուի ծաղկահասակ Յարութիւն Գարեգին Աղային իր իմաստուն վարժապետէն, *չեմ վախնար հաստատելու թէ քիչ ատենուան մէջ* հազուագիւտ տաղանդաւոր անձինք պիտի ելլեն Հայոց Ազգէն, որոնք իրենց գիտութեամբը ու մանաւոր առաքինութեամբը հաւատարիմ ծառայութիւններ ընելու են վեհ. Ինքնակալին, որ կը պաշտպանէ զանոնք ու փառք եւ պատիւ ըլլալու են Արամեան Ազգին»:

*Յարութիւն — Գարեգին Աղային դաս*

*տուած գիտութիւնները հետեւեալներն են․* Գաղղիական գրականութիւն, տրամաբանական լուծմունք, լատիներէն, երկրաչափութիւն, քիմիաբանութիւն, ֆիզիքա, բուսաբանութիւն, աշխարհագրութիւն, պատմութիւն, ուրուագրութիւն։ *Ասոնց ամենուն վրայօք եղած* բոլոր հարցմունքներուն շատ աղէկ պատասխան տուեր է» (Արշ․ Արարատ․ 1844 *թ․* 178)։

*Յարութիւն – Գաբրիէլին այս վերոյիշեալ ուսումները աւարտելէ վերջ՝ ընդունուած է* Պարիսի պետական համալսարանը՝ 1844*ի ընթացքին։ Ուսման այս շրջանը կը տեւէ* երկու տարիի *չափ եւ* 1846 *Յուլիս* 23*ին վերջին փայլուն քննութիւն մը տալով՝ կը ստանայ* համալսարանական իր վկայականը, *որուն տիտղոսն է ․—* Baccalauréat ès sciences ։

*Յարութիւն – Գաբրիէլին* 1846*ի Օգոստոսին համալսարանական այդ վկայականով կը վերադառնայ ծննդավայրը՝* Պոլիս։ *Ճամբան կը հանդիպի նախ* Վենետիկ, *ուր կը մնայ՝ այցելելու համար տեսարժան վայրերը։ Հաւանօրէն այցելած է նաեւ* Մխիթարեան Միաբանութեան Մայր վանքը՝ Ս․ Ղազար, *թէեւ այս մասին յատուկ յիշատակութիւն մը չ՚ըներ* Բազմավէպ, *որ Յօդուած մը նուիրած է Յարութիւն – Գաբրիէլին սա՛ վերնագրով․* «Պարոն Յարութիւն Գաբրիէլ Տատեան ի Վենետիկ»։ *Թերթը կը գրէ․*

«Պարոն Յարութիւն Գաբրիէլ Տատեան *ազնիւ պատանին* երեք տարիի չափ Փարիզ զանազան գիտութիւններ սորվելու հետ էր

եւ արդէն իր զարմանալի յառաջդիմութեամ-
բը Փարիզու մէջ հռչակուած էր… *Մեզի*
*մեծ ուրախութիւն է հոս ծանուցանելը թէ*
աս մեր հանճարեղ ու տաղանդաւոր Իշխա-
նազունը աս տարի Յուլիս 23ին քննուեցաւ
Փարիզու թագաւորական ճեմարանին *քաջ*
*վարժապետներէն՝* Զափաբերութեան, Բնա-
բանութեան, Բնական պատմութեան ու
Տարրալուծութեան մէջ *ու ամէն հարցմունք-*
*ներուն քաջութեամբ պատասխան տալով՝*
Գաղղիոյ համալսարանէն ընդունեցաւ Զա-
փաբերական եւ Բնական գիտութեանց *վար-*
*ժապետութեան* Առաջին աստիճանը՝ Bacca-
lauréat ès sciences, *որով* իր եւ իւր Տոհմին
ու Ազգին անունը *կրկին պայծառացուց*: Իսկ
հիմա քիչ ատենի համար Պոլիս դառնալու
ըլլալով՝ *Վենետիկ հանդիպեցաւ, քաղաքիս*
*տեսնելու արժանի տեղուանքը* կիրթ ախոր-
ժակով ու սրամիտ դիտողութեամբ զննեց
ու իր ազնուաբարոյ, բարեկիրթ եւ ուսում-
նասէր բնաւորութեան կատարելութիւննե-
րովը՝ ամէն զինքը տեսնողներուն ու իր մե-
ծանուն ազգատոհմը ճանչցողներուն գովելի
ու սիրելի եղաւ…» (Բազմավէպ, *Վենետիկ*
1846 *Թ*. 17, *էջ* 263, *Սեպտ*. 1):

*Ատկէ քիչ ետքը*, 1846 *Սեպտ*. 8*ին կը*
*տողէ Զմիւռնիոյ հայաթերթը*. «*Արքունի*
*Վառօդապետ Վսեմ. Տատեան Յօհաննէս*
*Ամիրային որդին՝* ազնուաբարոյ եւ ուսում-
նական Յարութիւն Գաբրիէլին Աղան *անցած*
*ամսու* 28*ին Զորեքշաբթի իրիկուան դէմ*
*աւստրիական շոգենաւով հասաւ մեր քաղա-*

քը Փարիզէն գալով Իտալիայի ճանապարհաւ։ Յիշեալ ծաղկահասակ ազնուականը, որ երեք ու կէս տարիէ ի վեր մեքենական ուսմանց կը հետեւէր ի Փարիզ, արդէն լմնցուցած ըլլալով նոյն գիտութիւնը եւ իր օրինաւոր վկայականը (տիփլոմ) ստանալով՝ կը դառնայ ի Կոստանդնուպոլիս...» (Արշ. Արարատեան, 1846 թ. 267)։

Ինչպէս Բազմավէպ կը շեշտէր՝ Յարութիւն-Գարեգին «Քիչ ատենի համար» կը դառնար Պոլիս։ Մեզ կը թուի թէ ան տակաւին ուսման շրջանի մը, կամ մասնագիտական ճիւղի մը հետեւելու համար անհրաժեշտ կը համարէր վերադառնալ Եւրոպա։

Ստուգիւ ալ 1847 Փետրուարին Հօրը՝ Յովհաննէս Ամիրայ Տատեանի եւ կրտսեր եղբօր Գրիգոր-Միհրանի հետ դէպի Եւրոպա ճամբայ կ՚ելլէ։ Յովհաննէս Ամիրայի երրորդ ճամբորդութիւնն է այս։ Փետր. 23ին Իզմիր կը հասնին եւ Արշ. Արարատեանի խմբագրութիւնը կը ստուգէ որ գաղղիական նաւով կը ճամբորդեն դէպի Եւրոպա (Արշ. Արարատ. 1847 թ. 280)։

Չենք գտներ ժամանակակից ծանօթութիւն մը թէ ո՞ւր գացած է Յարութիւն-Գարեգին։ Անշուշտ Պարիս եղած է իր նպատակը, բայց թէ Պարիսի մէջ ի՞նչ մասնագիտական ուսման հետեւած է՝ չունինք ստոյգ տեղեկութիւն մը։ Արդեօք ա՞յս շրջանին է որ նա յաճախած է Պարիսի շատ ծանօթ վարժարանը.— Sainte-Barbe։ Մասիսի (1862 թ. 565) յայտնութիւնը թէ Յարու-

*Թիւն – Գարպին Պարիսի* Sainte – Barbe վարժարանին աշակերտած է՝ *շատ ուշ մկայութիւն մ'է եւ անորոշ ձգուած թէ ե՞րբ աշակերտած է* :

*Յարութիւն – Գարպինի այս վերջին համբորդութեան եւ յատկապէս* Sainte – Barbe*ի կապակցութեան մասին լուսարանութիւն մը գտած կը համարինք* Արշալոյս Արարատեանի *քով* :

*«Արշալոյս Արարատեան» թերթը իմացնել է յետոյ թէ «Բարձրապատիւ Տատեան Յովհաննէս Ամիրայ* Ընկերակցութեամբ իւր սիրելի որդւոյն մեծաշուք եւ ուսումնական Գարեգին Յարութիւն Աղային (1848) *Յունուար* 31*ին*, *կէսօրէն ետքը*, *գաղղիական շոգենաւով հասաւ Իզմիր* Փարիզէն գալով»՝ *թերթը կը գրէ* · *«Յիշեալ Վսեմ* · *ազգասէր Ամիրայէն ուրախ սրտիւ իմացանք թէ Փարիզի մէջ* · · · 25—30 *հայազգի երիտասարդներ կան*, *որոնք զանազան գիտութեանց եւ օգտակար արհեստից կը հետեւին* : *Ասոնցմէ մէկ քանին* Սէնդ–Պարպի բարեհամբաւ դպրոցին աշակերտեալ են, *որուն տաւքինի եւ հայասէր* վերատեսուչ Պարոն Աղեքսանդր Լապրուստը *մարդասիրական ոգիէ շարժեալ* յատուկ խնամք մը ունի եղեր հայկազեան աշակերտաց յառաջադիմութեանց վրայ» (Արշ · Արարատեան, 1848, *Յունուար* 31) :

1862*ի Պարիսի ճաշկերոյթին խօսած ճառին մէջ Յարութիւն–Գարպին* մասնաւոր յիշատակութիւն կ'ընէ Sainte-Barbeի *Տնօ–*

րէն՝ Լապրուստին, *ինչպէս պիտի տեսնենք քիչ վարը։ Անկէ յայտնի կ՚ըլլայ թէ Յարութիւն–Գարեգին* Sainte-Barbe *վարժարանին աշակերտած է* Աղեքսանդր Լապրուստի Տնօրէնութեան շրջանին, այսինքն 1847—1848ին։ — Ընդարձակ Օրացոյցի (1902, *էջ* 53) ***Յօդուածագրին համեմատ Յարութիւն–Գարեգին** «իր Միջնակարգ ուսումներն աւարտեց* Սէնդ–Պարպ լիսէին *մէջ*»։

1848 ***Յունուար** 31ին* Պարիսէն վերադառնալով՝ ***Յարութիւն–Գարեգին** իր ուսման շրջանը աւարտած էր*։

Պետական մարդը․ — *Բարձրագոյն եւ մասնագիտական ուսման պաշարով եւ ֆրանսերէն լեզուի կատարեալ տիրապետութեամբ օժտուած՝ **Յարութիւն–Գարեգին** Պոլիս կը դառնար 1848ի սկիզբը։ Իր նպատակն էր* Թուրք Պետութեան ծառայել։ *Ըստ* Արեւելքի (*Կ․ Պ․* 1888 *Թ․* 1424) ***Յարութիւն–Գարեգին Տատեանի*** առաջին պետական պաշտօնը *եղած է Թուրք* Ոստիկանութեան *մէջ ստացած պաշտօնը*։ Փունջ (*Կ․ Պ․* 1895 *Թ․* 2477) *կը ճշդէ* ժամանակը, *երբ կը դրէ թէ **Յարութիւն–Գարեգին*** այն ատեն *պսակուեցաւ*, *երբ* «Բ․ Դրան թարգմանութեան սենեկին մէջ էր»։ *Արդ, **Յարութիւն–Գարեգին*** 1850ին պսակուած է (***Տե՛ս*** Արշ․ Արարատեան, 1850 *Թ․* 369)։ ***Ուրեմն՝*** 1850ին պետական պաշտօնի մէջ էր ան։ ***Երբէ՞ն***։ *Գուցէ արդէն 1848էն սկսած*։

Արարատի (*Վաղարշապատ* 1901, *էջ* 438) ***Յօդուածագրին համեմատ Յարութիւն–***

Գարեգին 1853ին պաշտօն ընդունած է Արտաքին Գործոց Նախարարութեան մէջ, իսկ 1854ին նոյն Նախարարութեան Դիւանին Տնօրէնի օգնական կը կարգուի եւ Սալիսէի աստիճան կը ստանայ (Տե՛ս Փունջ, 1901 թ. 2759)։ Պոլսոյ La Turquie թերթին համեմատ Յարութիւն-Գարեգին 1857ին Կայսերական Գործակալի Քարտուղար եղած է Բուկարեստ ղրկուած «Համազգային Մասնաժողովոյն» (Արշ. Արարատ. 1872 թ. 936)։ Մէնմ. Հավատիս (Կ. Պ. 1857 թ. 179) եւս կը հաստատէ որ Վալաքիոյ մայրաքաղաք Բուկարեստ ղրկուած Պատուիրակութեան մէջ փրանսերէն լեզուի թարգման-քարտուղարի պաշտօն տուած է Յարութիւն-Գարեգին Պէյ Տատեանի։ Այս մասնախումբին մէջ կարեւոր դեր կատարած է Յարութիւն Տատեան, որով Հայերը կը յաջողին Մոլտաւիոյ մէջ հաւասարութեան եւ հողի տէր դառնալու իրաւունք ձեռք բերել (Տե՛ս այս մասին ընդարձակօրէն Մասիս, Կ. Պ. 1882 թ. 3270)։

La Turquie կը գրէ որ 1858ին «Կայսերական Տեսչութիւն Ռումէլիի» պաշտօնը տրուած է Յարութիւն Տատեանի (Արշ. Արարատ. 1872 թ. 936)։ Այդ առթիւ կը շնորհուի իրեն Մէճիտիէի չորրորդ աստիճանի պատուանշանը (Մասիս, 1860 թ. 460)։ Իսկ Արարատ (անդ՝ էջ 439) կը տողէ. Յարութիւն Տատեան «1859ին պաշտօնի կոչուեցաւ Բ. Դրան թարգմանութեանց սենեկին մէջ եւ յաջորդ տարին Օտեսա ղրկուելով

*մասնաւոր պաշտօնով՝* Բ. կարգի Ս. Սթանիսլաւոս պատուանշանը *ստացաւ Ռուս կառավարութեան կողմէ: Նոյն տարւոյն վերջերը* (1860) Բարիզի *Օսմ. Դեսպանատան Փրանսերէնի* Ա. Քարտուղար[1] *անուանուեցաւ եւ երկու ամիս չափ ալ վարեց նոյն Դեսպանատան* Գործակատարի *պաշտօնը, այդ միջոցին* Միւթէմայիզի *աստիճանին բարձրանալով: Պահ մըն ալ* Սպանիոյ *կառավարութեան մօտ յատուկ պաշտօն մը յանձնուելով իրեն՝* Իզապէլ Լա–Գաթոլիկ *պատուանշանին* Գ. Կարգը *ստացաւ»:*

*Ըստ* Արշալոյս Արարատեանի (1872 *թ.* 936) 1862*ին է որ Յարութիւն Պէյ Տատեան* Պարիսի Օսմ. Դեսպանատան առաջին քարտուղար *կ'անուանուի: Պարիսի* Sainte-Barbe *վարժարանի* նախկին աշակերտները *սովորութիւն ըրած էին տարին անգամ մը կոչունք տալով՝* վարժարանի տարեդարձը տօնախմբել: 1862 *Դեկտ. 4ին այդ կոչունքին կը հրաւիրեն Պարիսի Օսմ. Դեսպանատան Առաջին Քարտուղար Յարութիւն–Գարեգին Տատեանը, իբրեւ իրենց* վաղեմի աշակերտակիցը: *Այս առթիւ* Մասիս *կը տողէ*. «200էն աւելի կոչնականաց յատուկ խնդրանօք նոյն կոչունքին Նախագահելու մեծ պատիւը իրեն կ'առաջարկեն, *պատիւ մը, որ* մինչեւ հիմա այս առաջին անգամ Հայազգիի մը կը տրուի»: *Յարութիւն Տա–*

[1] Սխալ է Ընդարձակ Օրացոյցի (Կ. Պ. 1902, էջ 505) *կարծիքը թէ Յարութիւն Տատեան Պարիսի Օսմ. Դեսպանական* Քարտուղար *եղած է* 1865*ին:*

*տեան ձաչին վերջը խօսած է Հոյակապ ճառ մը, որ կը չեշտէ թէ «քիչ երջանկութիւն մը չէ ինծի* բազմամեայ տարակայութենէ ետեւ վերստին ուսումնակցացս մէջ գտնուիլ *եւ* մեր սիրելի Սէնթ–Պարպը *տօնախմբել*, որուն յիշատակը յաւիտեան անմոռանալի պիտի մնայ սրտիս մէջ: *Դուք, Պարոնայք* Լապրուստ, *Կեռառ եւ Պլանչէ... ձեր կեանքը նուիրած էք...* իմ Պարպեան հայրենակիցներուս այս երկրորդ հայրենիքին *զար–գացմանը... ընդունեցէք իմ միջոցաւս ձեր Արեւելքի աշակերտներուն խորին յարգա–նաց Հաւատաիքը...*» (*Տե՛ս* Մասիս *Կ. Պ.* 1862 *Թ.* 565):

***Ցարութիւն–Գարեգին Տատեան Պարխի Օսմ. Դեսպանատան Քարտուղարութիւնը կը վարէ*** չորս տարի, *մերթ վարելով նաեւ* փոխ–Դեսպանական *պաշտօնը: Պոլայ* Փող (1872 *Թ.* 80) *կը գրէ որ **Ցարութիւն Տատեան*** Փարիզի Դեսպանական Գործակատարու–թեան պաշտօնը վարած է «այնպիսի ժամա–նակ մը, ուր խիստ դժուար խնդիրներ կային Դրան եւ Թիւիլըրիի արքունեաց մէջ»: — 1863*ին, երբ Պարխի Թուրք դեսպան* Մէհէ–մէտ Ճէմիլ *Պարխէն* Մատրիտ *կը մեկնի՝ **Ցարութիւն Տատեան*** Դեսպանութեան պաշ–տօնն ալ կը վարէ (Մասիս, 1863 *Թ.* 586): ***Այդ առթիւ Ցարութիւն Տատեան** կը ստա–նայ Սպանիոյ* Իզապէլ Լա–Գաթոլիք *նշանին* երկրորդ կարգին Grand Officier *պա–տուանշանը* (Մէջմուայը Հավատիս, *Կ. Պ.* 1863 *Թ.* 508):

*Յարութիւն-Գարեգին* 1866 *Սեպտ. 20ին կը վերադառնայ Պոլիս:* Ծիածան (Կ. Պ. 1866 *Թ.* 1) *կ'ողջունէ այդ վերադարձը.* «Վսեմ. Յարութիւն-Գարեգին էֆ. Տատեան չորս տարի Փարիզու Օսմ. Դեսպանատան Ա. Քարտուղարութեան եւ դեսպանատան փոխանորդութեան ծանր եւ կարեւորագոյն պաշտօնը վերջին ծայր արժանաւորութեամբ եւ հազուագիւտ հանճարով կատարելէն



Արթին Փաշա (1863ին)
Երիտասարդ Պարիսի դեսպան

ոնել տես Սեպտ․ ամսոյս 20ին ողջամբ ժա–մանեց մայրաքաղաքս․․․» (*Տե՛ս նաեւ* Փող, 1866 *թ*․ 139)։

*Պարխէն վերադարձին ստացած է* էս–համի ճէտիտէի Տնօրէնութիւնը (Արշ․ Արա–րատ․ 1872 *թ*․ 936)։ 1871*ին* Շուրայի Տէվ–լէթի (*Պետական Խորհուրդ*) անդամ է (Փունջ, 1871 *թ*․ 687։ — *Տե՛ս նաեւ* Արա–մեան Օրացոյց, *կ*․ *պ*․ 1871, *էջ* 99)։ *Այս վերջին պատիւը* 1868*էն է*։ 1868 *Ապրիլին կ՚անուանուի* Շուրայի Տէվլէթի Միւավին․ *իսկ* 1868 *Յունիսին կ՚անուանուի նոյն* խորհրդոյն անդամ։ *Իզմիրի թերթը կը գրէ*․ «Վսեմ․ Տիար Յարութիւն Տատեան, *որ Շուրայի Տէվլէթ կոչուած Պետական Խորհրդոյն Մուավին էր՝ նոյն Խորհրդոյն* անդամ *անուանուեցաւ* Րիւթպէի Էվվէլ Սը–նըֆի Սանի աստիճանաւ» (Արշ․ Արարատ․ 1868 *թ*․ 830, 834)։ «1869*ին կը կոչուի* Ան–տառաց Տնօրէնութեան *եւ* 1870*ին կ՚ըլլայ* Ելմտական Նախարարութեան խորհրդական (Միւսթէշար), *բարձրանալով* Ուլայի Ա․ Աստիճանին։ *Մինչեւ այդ թուականը* այս–քան կարեւոր պաշտօն մը չէր յանձնուած ոչ–իսլամ պաշտօնատարի մը» (Արարատ, *էջ* 936)։

1872 *Մայիսին կ՚աւետէ* Արշ․ Արարա–տեան (1872 *թ*․ 936)․ «Կայսերական հրո–վարտակաւ Տատեան Յարութ․ էֆ․ Տէրու–թեան Գանձուց Պաշտօնէի (*Նախարար*) խորհրդական անուանեցաւ․․․»։ *Նոյն տարի կ՚անուանուի նաեւ* «Անտառաց խորհրդոյն



Յարութիւն փաշայի Ֆէրմանը

Նախագահ» (*Անդ*)։ *Իսկ տարւոյ Հոկտ. ին* «Հանգաց եւ Անտառաց Ընդհանուր Վերատեսուչ կը կարգուի» (Անդ՝ *Թ*. 947)։ *Այս առթիւ Պոլսոյ* Levant Times *կը տողէ*. «*Նորին Վսեմ. Տատեան Արթինի* Անտառաց եւ

Հանգաց Ընդհ. վերատեսուչ անուանումը իրական բարիք մ'է երկրին համար... կը չնորհաւորենք Կայսերական կառավարութիւնը իւր այս ընտրութեանը համար...» (Տե՛ս Օրագիր, Կ. Պ. 1872 թ. 834):

1872 Օգոստոսին կը գրէր Փող (1872 թ. 221). «Կը լսեմք թէ Տատեան Վսեմ. Յարութիւն էֆ. Ընդհ. Մաքսատանց վերատեսուչ անուանուած է»: 1873 Յուլիս–Օգոստոսին կը կարգուի Պոլսոյ Վեցերորդ Թաղամասին (Բերա) Քաղաքապետական խորհուրդին Նախագահ՝ «Մեծ գոհութիւն պատճառելով յիշեալ շրջանակին բնակիչներուն» (Տե՛ս մանրամասն՝ Մասիս, 1873 թ. 1424: — Փունջ, 1873 թ. 810):

1875 Օգոստոսին կը կարգուի Արտաքին Գործոց Նախարարութեան խորհրդական (Միւսթէշար), բարձր եւ արժանիքներով լի պաշտօն մը, որ ի վերջոյ զինքը կը հասցնէ փաշայութեան բարձրագոյն պատուաստիճանին (Տե՛ս Փունջ, 1875 թ. 1011: — Արշ. Արարատ, 1875 թ. 1021): Այս առթիւ Յարութիւն–Գարեգին Տատեան կը ստանայ Պալայի Աստիճանը եւ կը վարէ ամիս մը նաեւ Արտաքին Գործոց Նախարարութիւնը (Արարատ, 1901, էջ 439):

1881ին կ'իմանայ Պոլսոյ Phar-du-Bosphore թերթը թէ Յարութիւն Տատեան «Հայաստանի Քօմիսէր» կը կարգուի (Տե՛ս Հայրենիք, Կ. Պ. 1881 թ. 842): Պոլսոյ Լոյս (1882 թ. 220) կը գրէ 1882 Փետր.ին. «Խտալիոյ վեհ. Թագաւորն Արտաքին Գործոց

*Նախարարութեան* խորհրդական Տատեան վսեմ. Յարութիւն էֆ.ին Գուրօն տ'Իթալիա պատուաստիճանին Ա. Աստիճանը *նուիրեր* է [1]»: *Իսկ Սուլթանը Յարութիւն Պէյ Տատեանի կը շնորհէ* Ա. Կարգի Օսմանիէ Պատուանշանը (Լոյս, 1884 *թ.* 396, *Յունուար* 11), *որ ամենաբարձր պատուանշաններէն մին է Թուրքիոյ մէջ*:

1887*ին* «Պուլկարիոյ արտասովոր քոմիսէր կ'անուանուի *եւ Սուլթանէն կը վարձատրուի* Իմթիյազի ոսկի եւ արծաթ շքադրամներով: *Միեւնոյն ատեն Կայսերական Իրատէ մը կ'արտօնէ իրեն կրել* Իֆթիխարի *պատուանշանը, զոր Սուլթան Մահմուտ Բ. Կայսրը նուիրած է Տատեան ամբողջ Գերդաստանին*» (*Տե՛ս* Արարատ, *անդ՝ էջ* 439: — Մասիս, 1887 *էջ* 251: — Արմէնիա, 1887 *թ.* 15):

1888 *Սեպտ.ին կը բարձրանայ* Փաշայութեան *բարձրագոյն պատուին* (*Տե՛ս* Ծաղիկ, *Կ. Պ.* 1888 *թ.* 168, *Հոկ.* 1), *որուն տուչութիւնը կը կատարուի մասնաւոր հանդէսով* 1888 *Հոկ.* 3*ին*: *Թերթը կը գրէ*.

«Վսեմ. Յարութիւն Փաշա Տատեան. Հանդէս Ընթերցման Կայսերական Մէնշուրի. — *Երկուշաբթի* (*Հոկտ.* 3) *օր ի Պէշիկթաշ*

---

[1] Ընդարձակ Օրացոյց (1902, *էջ* 506) *կը պատմէ որ Յարութիւն Պէյ Տատեան «1882ին Յունաստանի սահմանագլխին խնդիրը քննող* Դեսպանախորհրդին անդամակցեցաւ *եւ այս առթիւ* Ա. կարգի Մէճիտիէ *ստացաւ*» (*Տե՛ս այս մասին* Արարատ, *Վաղարշապատ* 1901, *էջ* 439):

*Տատեանց ապարանքին մէջ մեծ շքով կատարուեցաւ Վսեմ. Յարութիւն Փաշայի* Վէզիրութեան Մէնշուրի *ընթերցումն: Տատեանց Ապարանքը վեհաշուք իմն պճնազարդեալ էր արեւելեան եւ արեւմտեան ճաշակաւ... ժամը ճիշդ վեցին Վեհ. Սուլթանի Սենեկապետ* Արիֆ Պէյ, *որ կայսերական Մէնշուրը կը կրէր, շրջապատեալ պալատականներով՝ արքունի կառքերով հասաւ ի դուռն Տատեանց Ապարանքին: Վսեմ. Յարութիւն Փաշա, պաշտօնական համազգեստով եւ պատուանշաններով զարդարուն՝ իջաւ ապարանքին դուռը եւ Արիֆ Պէյին ձեռքէն առնելով* Կայսերական Մէնշուրը՝ *համբուրեց զայն ու գլխուն վերեւ բարձրացնելով՝ եղաւ ի սրահ: Մէնշուրը կարդաց* Պէյլիճի Րայիֆ Պէյ... *Ներկայք փութացին շնորհաւորել զՏատեան Գերդաստանն.* Զաչեան Իլիասի *աղջիկը՝* Մարի *կարդաց ուղերձ մը Յարութիւն Փաշայի ուղղուած...»:* (Ծաղիկ, 1888 *թ.* 169, *Հոկտ.* 5): — Արեւելք (1888 *թ.* 1425), *ընդարձակ, սիրուն նկարագրականի մը մէջ կ'ընդգծէ. «...Պարտէզին դրան առջեւ զօրաց վաշտ մը կանգնած էր, իսկ պարտէզին մէջ զինուորական նուագախումբ մը ընտրելագոյն կտորներ կը հնչեցնէր... դուռը կանգնած էին Արտաքին Գործոց Նախարարութեան դիւանները, սենեկապահներ, ոստիկանք... Հիւրերը կ'ընդունուէին ի սրահն եւ ի դահլիճ: Ներկայ էին Երուսաղէմայ Պատրիարք Տ. Յարութիւն Ս., Խորէն Արքեպ. Նարպէյ...*

*կը նշմարուէին Արտաքին Գործոց Նախարար Սայիտ Փաշա, Ցակոր Փաշա, Մինիր Փաշա, Միւզիւրիս Փաշա, Անտառաց եւ Հանքաց Ընդհ. Տնօրէն Գույումճեան Պետրոս էֆ., Փորթուգալ Միքայէլ էֆ.*[1]... Տանեան բազմանիւղ Գերդաստանին բոլոր անդամները հանդերձ ընտանեօք... վսեմ. Յարութիւն Փաշայի որդին Տիրան Պէյ եւ եղբօրորդիքն Վահրամ Պէյ, Տրդատ Պէյ, Արշակ Պէյ կը հիւրասիրէին հրաւիրեալները, *իսկ* Տիկ. Եւգինէ Նազաշեան, Օր. Խոսրովուհի Տանեան եւ Տիկ. Վանտա Վահրամ Պէյ կը պատուասիրէին Տիկինները եւ Օրիորդները...»:

*Յարութիւն Փաշա* 1897—98*ին կը կոչուի* Անդամակցութեան Պետական Խորհրդոյ Քաղաքային Ճիւղին (Արարատ, անդ՝ *էջ* 440): 1898 *Մարտին Սուլթանը իրեն կը նուիրէ* Ականակուռ Օսմանիէ Պատուանշանը (Փունջ, 1898 *թ.* 2594: — Ծաղիկ, 1898, *էջ* 255): 1899 *Մայիսէն առաջ ստացած իր* Մէնիտիէ Ականակուռ Պատուանշանը, *իսկ* 1899 *Մայիսին Սուլթանէն կը ստանայ* «Իփթիխարի» Ականակուռ Պատուանշանը (Բիւրակն, *Կ. Պ.* 1899 *թ.* 20, *էջ* 318):

Ազգային Գործիչը. — *Հակառակ Պետական կեանքի իր ա՛յնքան բեռնաւորուած պաշտօններուն՝ Յարութիւն-Գարեգին Պէյ Տատեան ժամանակ կը գտնէր նաեւ* Հայ Ազգային կեանքի մէջ *իր գործակցութիւնը*

---

[1] *Հարիւրաւոր անուններ:*

րերելու։ Դժբախտաբար պիտի թուենք լոկ, առանց հնարաւորութեան մանրամասնութիւն տալու՝ տեղւոյ պակասէն։

1850ին անդամ է Ուսումնական խորհրդոյն (Մանզ. էֆքեար, Կ. Պ. 1904 թ. 1022)։ 1872 Օգոստոսին ընտրուած է Ատենապետ Ազգ. Ընդհ. Քաղաքական Ժողովին (Մասիս, 1872 թ. 1280)։ 1873ին Բերայի Թաղապետութեան Նախագահն է եւ Ազգ. Հիւանդանոցի ի նպաստ սարքուած պարահանդէսը իր նախագահութեան տակ կ'առնէ՝ մեծապէս արդիւնաւորելով զայն, որով «Համայն պատսպարեալք կ'օրհնեն Նորին վսեմութիւնը եւ ազգ. այս պատսպարանին մէջ անմահ կը մնայ իր անունը» (Փունջ, 1873 թ. 858)։ 1874ին իր վրայ կ'առնէ Պէշիկթաշի վարժարանին Հոգաբարձութիւնը (Արշ. Արարատ. 1874 թ. 990)։ 1875ին գրաքննութեամբ կը դադրեցուի Օրագիր թերթը. իր միջնորդութեամբ Նորագիր լոյս կը տեսնէ նախկինին տեղ (Անդ՝ 1876 թ. 1031)։ Գաբրիէլ Նորատունկեանի պսակին կնքահայրն է 1883 Յուլիսին (Փունջ, 1883 թ. 1793)։ Իր ճարտարութիւնը թափած է իրարու հետ հաշտ ցոյց տալու տէրութեան եւ հայ ազգին շահերը...» (Իրաւունք, Վառնա 1897 թ. 20)։

Գրագէտ-Գիտնականը, — Յարութիւն-Գաբրիէլինի մասնագիտութիւնը եղած է քննադատութիւնը։ Գրած է այդ նիւթին վրայ մասնագիտական յօդուած մը՝ դեռ թարմ երիտասարդ (Մանզ. էֆքեար, 1904 թ.

1022) ։ *Թարգմանած է* Սիլվիօ Պէլլիկոյի *«Իմ բանտարկութիւններս»* (Հայաստան, Կ· Պ· 1851 *թ·* 54) ։ 1877*ին գրած է* Levant Herald*ի մէջ՝ պաշտպանելով* 1875*ի գանձային անօրէնութիւնները· յօդուածս թարգմանուած է* Ճէրիտէի Հավատիս*ի մէջ եւ արտատպուած* Թէրճ· Էֆքեարի *մէջ* (1877) ։

Զարգացած մարդը Յարութիւն Փաշայի մէջ· — Բիւզանդ Քէչեան *կը գրէ· «Յարութիւն Փաշա... յոյժ հաճելի էր իր* նուրբ կենցաղագիտութեամբը եւ փափկանկատ վարմունքովը... զարդն էր պաշտօնական, դիւանագիտական եւ ընկերական ընդունելութիւններու մէջ... կիրթ ճաշակի տէր էր *նաեւ իմացական գործերու մէջ...»* (Բիւզանդիոն, *Կ· Պ·* 1901 *թ·* 1530) ։

Վերջին տարիները եւ մահը· — *«Վերջին տարիներս Յարութիւն Փաշա ծերութեան հետ ունէր նաեւ* սրտի հիւանդութիւն, *որը մէկ անգամ կը ճաշէր... երբեմն* սաստիկ կը նեղուէր դժուարաշնչութենէ» (Արարատ, *անդ՝ էջ* 439—40) ։ *Յարութիւն Փաշա հիւանդ է* 1896—97*ին· զինքը կը դարմանեն* Դոկտ· Խօրասանճեան, Դոկտ· Թորգոմեան եւ Մ· Մորտման (Ծաղիկ, 1897 *թ·* 4) Բիւզանդիոն (1901 *թ·* 1530) *կը տողէ·* «*Յարութիւն Փաշա* տարիներէ ի վեր հիւանդ սրտով մը կ'ապրէր... ծունկին վրայ յամառ այտուց մը գոյացած էր, *որուն* քաղցկեղ *ըլլալը ճանչցած էր Տօքթ· Խօրասանճեան...*» ։

1901 Հոկտ. 7ի գիշերը իր մահկանացուն կը կնքէ Օսմ. Պետութեան Արտաքին Գործոց Նախարարութեան Խորհրդական եւ Հայոց Քաղաքական Ժողովի Ատենապետ Յարութիւն Փաշա Տատեան 71 տարեկան: Իր տղան Յովհաննէս-Տիրան Պէյ Տատեան անձամբ կայսերական պալատ երթալով՝ կ՚իմացնէ իր հօր մահը: Սուլթանը ցաւ յայտնելով՝ կը հրամայէ որ յուղարկաւորութիւնը կատարուի կայսերական ծախքով: Յուղարկաւորութիւնը տեղի կ՚ունենայ վայելուչ հանդիսաւորութեամբ Հոկտ. 10ին. մարմինը ընկուզենի դագաղի մէջ ամփոփուած՝ կը փոխադրուի Նշան-Թաշի ապարանքէն Բերայի Ս. Երրորդութիւն եկեղեցին՝ շքեղօրէն զարդարուած, ուր Արտաքին Գործոց Նախարարութեան երեք սենեկապաններ սնդուսէ բարձիկներու վրայ կը կրէին 8 Օսմանեան եւ 32 Եւրոպական կառավարութեանց պատուանշանները[1]: Յուղարկաւորներու մէջ էին բազմաթիւ Փաշաներ, Դեսպաններ եւ բարձրաստիճան պաշտօնեաներ: Ս. Պատրիարքը իր շուրջը ունէր 8 Արքեպիսկոպոսներ եւ Եպիսկոպոսներ, 16 Վարդապետներ, 56 քահանաներ եւ ամէն թաղերէ եկած դպիրներ, անհամար բազմութիւն: Պատրիարքը կը կրէր ոսկեհուռ կարմիր թաւիշէ, ոսկեթել բանուած եզրներով այն շուրջառը, զոր Պօղոս Ամիրայ Տատեան Այ-

[1] Ֆրանսական պետութենէն ունէր Grand Officier de la Légion d'honneur, կը գրէ ինծի իր թոռը՝ Արթին Պէյ Տատեան (Պարիզ):



Տիկին Լօժէնի
դուստր Արթին Փաշայի
(կանանցի պաշտօնեայ)

սրբեփանոսի եկեղեցիին համար շինել տուած էր 600 լիրա ծախսելով եւ զոր Յարութիւն Պէյ Տատեան (*Փաշա*) իր պսակին համար բերել տուած էր Պէշիկթաշի եկեղեցին, 53[1] տարի առաջ (Բիւզանդիոն, 1901 *թ*. 1530)։ *Արարողութենէ վերջ՝ Դամբանականը կը խօսի Ս. Պատրիարքը, որմէ վերջ մեռելական դագաղը չքեղ կառքի մէջ կը տարուի նախ Ս. Յարութիւն եւ յետոյ* Պէշիկթաշ, *ուր վերջին թաղման կարգը կը կատարուի եւ Փաշային մարմինը կ'ամփոփուի* Ս. Աստուածածին եկեղեցւոյ հարաւային կողմը *պատրաստուած դամբարանը*։ *Ահա՛ իր* տապանագիրը՝ *այնքան պարզ եւ այնքան խօսուն*.

*Յս. Քս. Ծռ.*

*Արթին Փաշա*

*Տատեան*

*Ծնե*. 1830

*ՀՎՆԱ*. 1901 *Հկ. Դ*. 8

(*Տե՛ս ընդարձակ՝* Բիւզանդիոն, *անդ*։ — Փունջ, 1901 *թ*. 2759։ — Արարատ, 1901 *էջ* 437—44։ — Արեւելք, 1901 *թ*. 476–5)։

Յարութիւն Փաշայի սերունդը. — *Յարութիւն Փաշա ամուսնացած է Մկրտիչ Ամիրայ Ճէզայիրլեանի* (*ծն*. 1805) *քրոջ*

---

[1] Բիւզանդիոնի *համեմատ, ուրեմն, Յարութիւն-Գարեգին Տատեանի* պսակը *տեղի ունեցած է* 1848*ին*, *ինչ որ* սխալ *է*, *ան տեղի ունեցած է* 1850*ին* (*Տե՛ս* Արշ. Արարատեան, *Զմիւռնիա* 1850 *թ*. 369)։

*աղջկան* Տիրուհի[1] Թագքագեանի (*ծն.* 1832) *հետ։ Պսակը տեղի ունեցած է ա՛յն ատեն, երբ Յարութիւն–Գարեգին փաշա* «Բ. Դրան թարգմանութեան սենեկին մէջ էր» (Փունջ, 1895 *թ.* 2477), *այսինքն՝* 1850 *Յունիսին* (*Տե՛ս մանրամասն* Արշ. Արարատեան, 1850 *թ.* 369)։ *Տիկ. Տիրուհի եղած է* գթած, խոնարհամիտ, ջերմեռանդ կրօնասէր *անձ մը* (Փունջ, 1895 *թ.* 2477)։ *Մեռած է* 1895 *Հոկտ.* 14*ին՝* 63 *տարեկան* (Հայրենիք, *Կ. Պ.* 1895 *թ.* 1312–4)։ *Պէշիկթաշի* «Ննջեցելոց Տոմար»*ը կը գրէ Տիկ. Տիրուհիի* մահուան *աթիւ.* «1895 *Հոկտ.* 15 — Տիրուհի Տատեան, 62 *տարեկան, հիւանդութիւն՝* ինքնիրմէպէնի (*քաղցկեղ*)... *ծնեալ Պէշիկթաշ, թաղուած Խասգիւղ*»։

*Յարութիւն եւ Տիրուհի ունեցած են* երեք *զաւակ.* Իսկուհի, Եւգինէ–Ճօժէնի, Յովհաննէս, Տիրան։

Ա. Իսկուհի, — *ծնած* 1851 *Մարտին՝ մեռած է* 1863 *Հոկտ.* 2*ին՝ մօտ* տասնուերեք *տարեկան եւ թաղուած* Օրթագիւղ «իր նախնեաց հանգստարանը» (Մասիս, 1863 *թ.* 608)։ Սխալ *է*, *հետեւաբար*, Ընդարձակ Օրացոյցը (1902, *էջ* 504), *որ Իսկուհին* Պարիս *մեռած կը դնէ եւ* Թ. Ազատեան (Աստղաբերդ, 1951, *էջ* 163), *որ Իսկուհին* «Տիկ. Նաքաշեան» *համարած է*։ Պր. Արթին Տա–

---

[1] *Սխալ է նաեւ* Չարքնեանի (Türk Dovlet, Hismetiche Ermeniler, Istanbul 1953) *գրածը թէ Յարութիւն փաշայի կնոջ անունը* Թագուհի *էր*։

տեան (*Պարիս*) *կը գրէ որ Իսկուհին* կառքի մը արկածին հետեւանքով *մեռած է* :

*Բ.* Եւգինէ-Էօժէնի. — *Անծանօթ է իր ծննդեան թուականը եւ այլ պարագաները*: *Կայ սակայն կրկնանուն* անծանօթ *անձ մը, դուստր Յարութիւն Տատեանի եւ Տիկ. Տիրուհիի, որ Պէշիկթաշի եկեղեցւոյ «Մկրտութեան Տոմարի» մէջ ունի արձանագրութիւնս.*

«Զապէլ-Թագուհի, *մկրտուած* 17 *Մարտ* 1867*ին Պէշիկթաշի եկեղեցւոյն մէջ՝ կնքահայրութեամբ Ստեփան Զայեանի. մայրը՝* Միհրիկ, *հայրը* Յարութիւն»: *Զարմանալի է Տիկ. Տիրուհիի անունը՝ «Միհրիկ» ձեւով: Բայց ո՞վ է սա* «Զապէլ-Թագուհի», *որ ուրիշ կողմէ անծանօթ է: Կրնա՞յ ըլլալ որ* Եւգինէ *իր մկրտութեան ատեն* Զապէլ-Թագուհի *կոչուած՝ յետոյ* Եւգինէ *առած եւ ֆրանսական արտասանութեամբ* «Էօժէնի» *յորջորջուած ըլլայ: Եթէ ճիշդ է այս ենթադրութիւնը՝ այն ատեն* Եւգինէ-Էօժէնի *ծնած է իբր* 1867 *Փետրուար-Մարտ: Իսկ եթէ Եւգինէի սկզբնական անունը «Զապէլ-Թագուհի» չէ եղած՝ այն ատեն հարկ է ընդունիլ թէ Յարութիւն եւ Տիրուհի* չորրորդ *զաւակ մ'ալ ունեցած են*: — Զապէլ-Թագուհի՝ *անծանօթ ուրիշ ամէն բանով*:

1884*ին Պոլիս կ'այցելեն Աւստրիոյ Արքիդուքս եւ Արքիդքսուհի* Ռուդոլֆ եւ Ստեփանի: *Օր. Եւգինէ-Էօժէնի կը կարգուի* թարգման Ստեփանի իշխանուհիին: *Այնքան լաւ կը կատարէ իր պաշտօնը որ* «Կայսերա-



Դոկտ. Համբարձում Նազգաշեան

կան հրամանաւ մնայուն թարգման կը կարգուի կայսերական կանանոցին» (Արեւելք, Կ. Պ. 1884 *թ. 84)։ Այս առթիւ Սուլթանը իրեն կը նուիրէ* Շէֆագաթ պատուանշանը *եւ Օր. Եւգինէ-Խօժէնի* առաջին Հայուհին *է, որ այդ բարձր պատուանշանը կը ստանայ* (Մասիս, 1884 *թ.* 3658)։ 1885*ին ալ կը ստանայ Սուլթանէն* ականազարդ մէտայեօն մը (Հայրենիք, 1885 *թ.* 1799)։

1889*ին Պոլիս կը հանդին Գերմանիոյ* Վիլհելմ Բ. Կայսր-Կայսրուհին։ *Տիկ. Եւգինէ կը կարգուի* պատուակալ Տիկին Կայսրուհին *եւ այնքան անթերի կը կատարէ իր պաշտօնը որ Սուլթանը իրեն կը շնորհէ* ադամանդազարդ ապարանջան մը (Ծաղիկ, 1889 *թ.* 261)։ 1890*ին կայսերական կանանոցը կ՚այցելէ* անգլիացի բարձրաստիճան Տիկնանց խումբ մը։ *Այդ առթիւ մեծ գովեստներ կը շռայլէ* Լ. Հերբըրտ *Տիկ. Եւգինէի, որ «իր պաշտօնը կատարած է մեծ փափկութեամբ եւ շնորհօք»* (Ծաղիկ, 1890 *թ.* 8)։

*Տիկ. Եւգինէ իր պաշտօնին բերումով ծանօթացած է.* «*Eugénie* Կայսրուհիին (*Ֆրանսա*), Սթէֆանի Արքիդքսուհիին (*Աւստրիա*), Մեծ Դքսուհի Էլէնին (*Յունաստան*), *Augusta-Victoria* Կայսրուհիին (*Գերմանիա*), Մէլինայի (Մոնթէնէկրոյ), *եւ այլն» կը գրէ ինձ Տիկին Եւգինէի աղջիկը՝* Օր. Մարգրիտ Տատեան-Նազգաշեան *Աթէնքէն*, 1963*ին*։

*Տիկ. Եւգինէ* արձաթեայ գեղեցիկ կանթեղ *մը կը նուիրէ Ս. Լուսաւորիչ եկ.ւոյն* (Ծաղիկ, 1897, *էջ* 47)։ 1897*ին Սուլթանը Տիկ. Եւգինէի կը շնորհէ* Ա. Կարգի Շէֆաքաթ պատուանշանը (Ծաղիկ, 1897 *թ.* 7)։ — Տիկ. Հայկանոյշ Մառք *սիրուն* Յուշ *մը ունի Տիկ. Եւգինէի մասին, գողտրիկ տողերով, կենսագրական գծերով ու մեծ համակրանքով* (*Տե՛ս* Աստղաբերդ, 1953 *թ.* 11—12), *ուր* տեղւոյ նեղութեան *պատճառաւ անկարող ենք տալ, ինչպէս որ կըտրտեցինք նոյն պատճառաւ շատ կարեւոր, թանկագին տեղիքներ*։

*Օր. Եւգինէ-Խօժէնի ամուսնացած է* Դոկտ. Համբարձում Նազգաշեանի *հետ*։ *Նշանախօսութիւնը տեղի ունեցած է* 1884 *Նոյեմբերին* (*Տե՛ս* Գրական եւ Իմաստասիրական Շարժում, *Կ. Պ.* 1884, *էջ* 220), *իսկ պսակը կատարուած է* 1886 *Փետրուարին* (*Տե՛ս* Մէճ. Ախպար, *Կ. Պ.* 1886 *թ.* 29)։ — *Դոկտ. Նազգաշեանի* կենսագրականը *հաճեցան ղրկել ինձ* Տիկ. Ալիս Կամսարական (*Պոլիս*) *եւ* Պր. Գէորգ Բամպուքճեան (*Պոլիս*)։ Դոկտ. Համբարձում Նազգաշեան *ծնած է* Կեսարիա 1857*ին*։ *Հայրը Նկարիչ* (Նազգաշ) *ըլլալուն*՝ Նազգաշեան *մականունը առած է*։ *Նախակրթութիւնը ստանալէ վերջ՝ անցած է* Պոլիս *եւ աշակերտած* Նուպար-Շահնազարեան *Վարժարանին, յետոյ* Կայսերական Լիսէին։ 1875*ին մեկնած է* Պարիս՝ *ուսանելու համար բժշկութիւն*։ 1882*ին փայլուն քննութեամբ կը ստանայ* բժշկութեան եւ



Մարգրիտ — Աննա Նազգաշեան

վիրաբուժութեան Դոկտորայի վկայականը ։ *Վերադարձին բնակած* Պէշիկթաշ եւ Օրթագիւղ՝ *չահած է համակրանքը պաշտօնական եւ պալատական բարձր դասուն ։ Անուանուած է* խորհրդատու բժիշկ կայսերական պալատի ։ *Պաշտօնավարած է նաեւ* Կիւմիւշսու Հիւանդանոցը ։ *Պատուուած է* Ա. Կարգի Ուլա–էվվէլի աստիճանով, *ինչպէս նաեւ* Մէճիտիէ Ա. եւ Օսմանիէ Բ. *եւ բազմաթիւ* շքանշաններով եւ միդալներով (Տօքթ. Ա. Մէզպուրեան, *Հայ եւ ծագումով Հայ բժիշկներ. Հտ. Բ.*, անտիպ ։ — *Տե՛ս նաեւ* Ընդարձակ Տարեցոյց *Ազգ. Հիւ. Կ. Պ.* 1908, *էջ* 456) ։ — *Տիկ. Եւգինէ եւ Դկտ. Նազգաչեան ունեցած են* հինգ *զաւակ*. — Լուսինէ–Եազութ, Երանուհի–Անահիտ, Մաքրուհի–Շուշան, Մարիամ–Յուլիանէ–Մարգրիտ *եւ* Աննա ։ — ա) Լուսինէ–Եազութ՝ *ծնած* 1886 *Նոյ.* 30*ին՝ եղած է սիրուած* գրագիտուհի *մը. խորապէս թափանցած Փրանսական գրականութեան (Պարիս)* Annales*ի շատ մը մրցումներուն մէջ առաջնութիւն շահած է ։ Աշխատակցած է* Levant Herald *եւ* Stamboul*ի*, *ինչպէս նաեւ* Լոյս Կանանց *եւ* Հայ Կին*ի՝* Mireille *ծածկանունով* ։

*Օր. Լուսինէ–Եազութ* չէ ամուսնացած՝ *հակառակ շատ ձեռք խնդրողներու եւ իր մօր ջերմ փափաքին ։* 1922*ի Իզմիրի դէպքին իր երկու քոյրերուն հետ անցած է* Աթէնք, *ուր եւ մեռած է* 1941*ին* ։ — բ) Երանուհի–Անահիտ (*ծն.* 1888 *Յուլ.* 23) *եւ* գ) Մաքրուհի–Շուշան (*ծն.* 1894 *Սեպտ.* 23) *մեռած*

*են մանկական հասակի մէջ* (Փունջ, 1897 *թ.* 2540)։ — դ) Մարիամ-Ցուլիանէ-Մարգրիտ՝ *ծնած Պէշիկթաշ* 1891 *Յուլ.* 1*ին՝ ուսումը առած է մասնաւոր ուսուցիչներէ*։ 1922*ին* Աթէնք *հաստատուելէ վերջ Ֆրանսական* Chambre de Commerce*ի Գրագրուհին եղած է* 1923—34. *յետոյ* Ֆրանս. Դեսպանատան վաճառականական ճիւղին մէջ *Գրագրուհին եղած է Պետին, ինչպէս նաեւ* Արխիւներու եւ Թղթատարական Ճիւղերուն Պետը, ուր դեռ կը պաշտօնավարէ։ *Նոյնպէս Մարգրիտ եւ քոյրը՝ Աննա* չեն ուզած ամուսնանալ։ *Օր. Մարգրիտ մեծապէս օժանդակեց մեզ նիւթեր հայթայթելով եւ* շատ մը կլիշէներ շինել տալով ու դրկելով մեզ։ *Շնորհակալութիւն շատ*։ — ե) Աննա *ծն. Պէշիկթաշ* 1897 *Ապրիլ* 2) *Շրջանաւարտ է* Աթէնքի Գեղարուեստից Վարժարանէն *եւ իբր* amateur *կը զբաղի* Գծագրութեամբ եւ Արձանագրութեամբ։

Տիկ. Եւգինէ-Ժօժէնի *մեռած է* 1920*ին եւ թաղուած Շիշլի, իսկ* Դոկտ. Նազգաշեան *մեռած է* 1907 *Փետր.* 13*ին եւ թաղուած Շիշլիի ընտանեկան դամբարանին մէջ* (*Տե՛ս* Արեւելք, 1907 *թ.* 6415-8)։ *Երկուքին կլիշէները դրկած է մեզ* Օր. Մարգրիտ Նազգաշեան (*Աթէնք*)։

Գ. Յովհաննէս-Տիրան. — *Ծնած* 1855*ին* (Բանասէր, *Փարիզ* 1907, *էջ* 120), *իր նախնական ուսումը* Պոլիս *ստանալէ վերջ՝ անցած է* Եւրոպա (Աստղաբերդ, *Կ. Պ.* 1951 *թ.* 8-9)։ 1877*ին* Տնօրէն *է* Ֆէսխանէի

*եւ* Պրուսիոյ Թագաւորէն *կը ստանայ* ադամանդազարդ շքանշան (Մէնմ. Հավատիս, *Կ. Պ.* 1877 *Թ.* 185): 1882*ին Արտաքին Գործոց Նախարարութեան* հեռագրական դիւանին Միւմէիղն (*քննիչ*) *է եւ* Աւստրիոյ Կայսրէն կը պատուուի շքանշանով մը (Լոյս, 1882 *Թ.* 220, *Փետր.* 6): 1886*ին* Իւլայի Բ. ատինանու Հիւպատոսական Ընդհ. Դիւանին Տնօրէն կ'անուանուի (Հայրենիք, *Կ. Պ.* 1886 *Թ.* 1987: — Ծաղիկ, 1889, *էջ* 3): 1888*ին իրեն կը շնորհէ* Պարսից Շահը Առիւծի եւ Արեգական պատուանշանի Բ. Աստիճանը (Սուրհանդակ, *Կ. Պ.* 1888 *Թ.* 7): 1898*ին* Վարչական պաշտօնեաներու ընտրութեան Յանձնաժողովին անդամ է *եւ Սուլթանէն կը ստանայ* Մէճիտիէ Բ. Աստիճանի պատուանշանը (Փունջ, 1898 *Թ.* 2588): 1904*ին* Պետական խորհրդոյ անդամ է (Ընդարձակ Օրացոյց, 1905, *էջ* 195): Արքին Պէյ Տատեան (*Պարիս*), *որդի Տիրան Պէյ Տատեանի՝ ինծ կը գրէ որ իր հայրը* ֆրանսական կառավարութենէն *ստացած էր* *Officier de la Légion d'honneur* պատուանշանը:

*Յովհաննէս–Տիրան Պէյ Տատեան ամուսնացած է* էմնիէթ Սանտըղըի (*Դրամատան*) Տնօրէն վսեմ. Յովհաննէս Փափազեանի *աղջկան* Օր. Տիրուհիի (*Տիրուհիյա*) *հետ*: *Նշանտուքը կը կատարուի* 1882 *Փետր.* 21*ին* (*Տե՛ս* Լոյս, 1882 *Թ.* 226: — Հայրենիք, 1882 *Թ.* 1132): *Օր. Տիրուհի ծնած է* 1858*ին*: *Իրենց պսակը տեղի ունեցած է* 1884 *Փետր.* 24*ին* (Արեւելք, 1884 *Թ.* 34):

*Տիրան եւ Տիրուհի ունեցած են* չորս *զաւակ*· Սրբուհի–Փայլինէ, Աթինէ–Մարիամ, Մկրտիչ–Պերոզ (*Միչի*) *եւ* Յարութիւն–Տատ: — ա) Սրբուհի–Փայլինէ՝ *ծնած* 1885 *Օգոստ*. 16*ին*՝ *մեռած է* 1961՝ *մնալով ամուրի*: *Չենք գիտեր թէ ի՞նչ կապակցութեամբ* Մաղաքիա Տ. Բ. Ֆինճանճեան 1890*ին* «Ջօն» *մ'ընծայած է Օր. Փայլինէի* (*Տե՛ս* Ծաղիկ, 1890 *թ*. 314): — բ) Աթինէ–Մարիամ, *սկզբնական անունը*՝ Մարիամ–Աստղինէ, *ծնած* 1887 *Մայիս 3ին*՝ *եղած է* երաժշտագէտ–գեղարուեստագէտ: *Իր մասնագիտութիւնն եղած է* մանդոլինը, *որուն մէջ փայլած է* «կանխահաս կարողութեամբ» (*Տե՛ս մանրամասն*՝ Ծաղիկ, 1899, *էջ* 331, 343: — Արեւելք, 1899 *թ*. 3941: — Մանզումէի էֆքեար, *Կ*. *Պ*. 1903 *թ*. 508): *Մեռած է* 1961*ին*: — գ) Մկրտիչ–Պերոզ (*Միչի*)· — *Ծնած* 1893 *Յունուար* 17*ին*՝ *եղած է* ելեկտրական–ճարտարագէտ (Ingenieur)· *ամուսնացած* Օր. Նիկեար Էնֆուէրճեանի *հետ* (Ժամանակ, *Կ*. *Պ*. 1919 *թ*. 3553) *ունեցած է* 2 *զաւակ*· Տիրուհի–Վալանթին *եւ* Արթին–Ռոժէռ: *Տիրուհի ամուսնացած* Արմէն Բարսեղեանի *հետ*՝ *ունեցած է մանչ մը եւ աղջիկ մը*· *Արմէն Բարսեղեան* փաստաբան *է Պարիս*: *Արթին–Ռոժէռ ամուսնացած* Maïloff*ի աղջկան հետ*՝ *ունեցած է մանչ մը եւ աղջիկ մը*· *Ռոժէր կ'աշխատի ճարտարարուեստի առաջնակարգ տան մը մէջ*: *Մկրտիչ–Պերոզ մեռած է Պարիս*: — դ) Յարութիւն–Տատ· *Պէշիկթաշի*



Արթին Տատեան
(լէգէոնական համազգեստով)

«Գիւտ Գօտւոյ Ս. Աստուածածնին» եկեղեցւոյ Մկրտութեան արձանագրութիւնը կ՚ըսէ. «5 Ապրիլ 1892ին Տիրան Պէյ Տատեանի որդին՝ Յարութիւն-Տատ. (ծն. 2 Յունուար 1892ին) կը մկրտուի ձեռամբ Տ. Յովհաննէս քհնյ. Մկրեանի եւ կնքահայրութեամբ Էլիաս էֆ. Զայեանի»:

Ստացած ենք իրմէ 1963ին ընդարձակ տեղեկութիւն իր եւ իրեններուն մասին, մեղք որ համառօտելու պարտաւորութիւնը կը ստիպէ մեզ սեղմել նիւթը. — «Մխիթարեանց քով ուսման ընթացքէ մը վերջ՝ աշակերտեցայ Sainte-Barbeի (Պարիս), ուր ստացայ վկայականս Bachelier ès lettres, որով կրցայ մտնել Sorbonne հետեւելու Գրականութեան ճիւղին, որմէ վերջ եղայ ուսուցիչ Boulogne-sur-Seine բարձրագոյն վարժարանի մէջ: Նախ դրուեցայ Օտար Լէգէոնի, յետոյ Արեւելեան Լէգէոնի մէջ, որ 1917ին դարձած էր Հայկական Լէգէոն, ուր եղայ կցորդ՝ բանակի Հրամանատարի՝ Կիլիկիոյ մէջ: 1919 Օգոստ. 19ին ազատ արձակուեցայ ենթա-տեղակալի աստիճանով եւ Պարիս վերադարձայ. ամուսնացայ Marie-Louise Albrespitի հետ, որմէ ունեցայ Աղեքսանդր-Տիրան, Կլեման-Պերոզ եւ Հերինէ-Անահիտ: Աղեքսանդր՝ ամուսնացած Աչչինելլի ընտանիքի մէկ աղջկան հետ՝ ունի 2 զաւակ. Կլեման եւ Հելէն, երկուքն ալ ամուրի, լաւ գործի մէջ են Մարսէյլ եւ Նիս: 1935ին բաժնուեցայ կնոջմէս՝ անձնական պատճառներով... ազատութեան օրե-

*րուն ամուսնացայ* Boisgelin *կոմսի* Maud *անունով աղջկան հետ, որ ինծ տուաւ* 5 *մանչ եւ* 1 *աղջիկ*: — Յակոբ, *որ զինուոր է*, Գարեգին, *որ արհեստի կը հետեւի*, Մկըրտիչ, *որ ճարտարարուեստ (?) կը զբաղի եւ* Արմէն, Շուշան եւ Յովհաննէս, *որ դպրոց կ՚երթան: Ներկայիս կը զբաղիմ Ֆրանս· րանակի* Նախկին Հայ Կամաւորներու Ընկերութեան *գործերով, որուն հիմնադիրներէն եմ, տակէ զատ քննիչ եմ մեծ թանգարանի մը մէջ*: Մեր Տոհմէն, ինծմէ զատ ուրիշ ոչ մէկ ուղիղ շառաւիղ կայ մինչեւ ինծի հասնող»:

*Կը կարծենք թէ* սխալ *է Արթին Պէյ Տատեանի այդ հաստատածը: Զի* ներկայիս *իր* պապին եղբօր — Գրիգոր-Միհրանի թոռները *կան* ողջ եւ ապրող: *Այսպէս*՝ Պր. Վահրամ Տատեան, *որդի* Պօղոս Պէյ Գնդապետի (*որդի Գրիգոր-Միհրանի*), *որ Պոլսոյ* Ֆէրիգիւղ *թաղին մէջ կ՚ապրի, զաւակներ ունի: Նոյնպէս Գրիգոր-Միհրանի ուրիշ մէկ թոռ*՝ Պր. Լեւոն Պէյ Տատեան, *որ* Ա. Տոհմի *շառաւիղ է, թոռ Գրիգոր-Միհրանի եւ որդի* Պօղոս Պէյ Գնդապետի, *որ կը գտնուի* Մարսէյլ, *ամուսնացած է եւ ունի զաւակներ*.

Տիրան Պէյ Տատեան *մեռած է* 1908*ին*, *իսկ իր Տիկինը*՝ Տիրուհի *վախճանած է* 1949*ին*՝ 91 *տարեկան* (Արեւմուտք, *Փարիզ* 1949):

Գ. Գրիգոր-Միհրան. — *Ծնած է* 1832 *Յունիս* 25*ին*: *Ընտանեկան կրթութեան մէջ դաստիարակ ունեցած է* Յովսէփ Վարդան

փաշա (*Բուլիս*, Կ. Պ. 1966, *Փետր.*, *էջ* 25), *իսկ* 1847 *Փետր. 25ին հայրը՝* Յովհ. Ամիրայ Տատեան *զինքը տարած է* Պարիս, *ուր մտած է* Սամուէլ–Մուրատ Վարժարանը *եւ մէկ ու կէս տարի ուսանելէ վերջ՝* 1848 *Սեպտ.ին կը մեկնի* Լոնդոն *եւ* Մանչեստր *«անոնց մէջ գլխաւոր գործարանները պըտըտելու» համար որմէ վերջ* 1848 *Հոկտ. 18ին կը վերադառնայ* Պոլիս (Արշ. Արարատեան, 1848 *Թ.* 323): *Մեզի կը թուի թէ վերա–*



Տիրան (որդի Արթինի, Պարիս)



Գրիգոր – Միհրան Պէյ
կրտսեր որդի Յովհ· Ամիրայի

*դարձին մտած է հօրը վարած* Ազատլըի վառօդարանի *մէջ, ուր* 1849*ին Սուլթանէն կը ստանայ* Նիշանի Իփթիխար (Արշ· Արարատեան, 1849 *թ*· 341)։

*Գրիգոր–Միհրան երկար տարիներ աշխատած է Վառօդարանի մէջ եւ* 1868*էն առաջ կարգուած է նոյնիսկ* Արքունի վառօդապետ։ *Վառօդապետութեան մէջ հաստատուած է* 1868*ին, երբ հայրը* հիւանդ ըլլալով՝ Վիեննա *կը մեկնի։ Օրուան թերթը կը յիշէ զինքը*· «···Գրիգոր էֆէնտի Վառօդա–

պետ Մաքրիգիւղի Վառօդարանին» (Արշ. Արարատեան, 1869 *թ.* 857)։ *Թէ ե՛րբ սկսած եւ մինչեւ երբ տեւած է իր Վառօդապետութիւնը՝ յիշատակութիւն չկայ։ Գրիգոր–Միհրանի* Վառօդապետութեան *մասին կարեւոր լուսաբանութիւն մը կու տայ* Թէրճ. էֆքեար (*Կ. Պ.* 1882 *թ.* 1614), *որմէ յայտնի կ՚ըլլայ թէ Գրիգոր–Միհրան այդ* պաշտօնին մէջ *էր* 1853—55ի խրիմի պատերազմին։ *Թերթը կը գրէ. «Հանգուցեալ Գրիգոր Պէյ* վաղուց կը կատարէր Վառօդապետի պաշտօնը. *այդ արհեստը* նախապէս հօր խնամքովը ու ճարտարութեամբը Փարիզի մէջ ձեռք բերած էր եւ այս նոյն մասնագիտութեան մէջ ա՛յնքան վարժած *ու կատարելագործած էր որ* խրիմի պատերազմի ընթացքին պատրաստած վառօդին ընտիր ըլլալը *փորձով հաստատուած ըլլալով՝ Սուլթան Ապտիւլ–Մէճիտ կայսեր կողմէ հրամարտակով* ականակապ սուրի եւ Մէճիտիէ նշանի արժանացած է»։

*Գրիգոր–Միհրանի* թոռ՝ Պր. Վահրամ Ճամուգեանի (*Իսթանպուլ*) *կարծիքով* Ազգ. Հիւ. Օրացոյցը *իր 1877ի եւ 1878ի տարիներուն մէջ յիշած է Գրիգոր–Միհրան Պէյ իր եղբօր՝ Առաքել Պէյի հետ իբրեւ* Արքունի Վառօդապետներ։ *Դժբախտաբար չունենալով մեր Մատենադարանի մէջ* Ազգ. Հիւ. Օրացոյց*ի 1877ի եւ 1878ի տարիները՝ անկարող ենք ճշդել։ — Գրիգոր–Միհրան ունի գեղեցիկ նամակ մը՝ ուղղուած* Մասիս*ին*,



Տիկ. Սօֆի Թիւրապեան եւ ընտանիքը

«Տատեան Գերդաստանը» *վերնագրով, որմէ կը քաղենք.*

«...*Խմբագիր. Ազգ. Հիւ. Հաստատութեան տարեդարձի նկարագիրն ընթերցայ ազգ. Լրագրաց մէջ* տրտմախառն, *տեսնելով որ Հանգուցեալ Հօրս յիշատակը* ջնջուած էր Ազգային Բարերարաց ցանկէն: *Արդարեւ Վառօղապետ* Յովհաննէս Պէյ Տատեան *մեռած է*, բայց ո՛չ իւր գործերը. *ցաւ է ինձ ըսել որ* իւր մեռած օրէն անունն ալ մոռցուեցաւ, յիշատակն ալ: ...*Պարծանօք կրնամ ըսել թէ Յովհաննէս Պէյ ազգային ոգի կը կրէր. կը սիրէր իւր Ազգը եւ յանհունս կը սիրէր... մեծ փափաք կը տածէր որ յետ իւր մահուան՝ դէթ տարին մի անգամ իւր հոգւոյն համար հանգստեան աղօթք մը կատարուէր... բայց* անունն անգամ մոռցուած է... *երբ դեռ ուսման լոյսը տարածուած չէր Ազգին մէջ՝* աշխարհագրական քարտէսներու եւ գրական զարգացման համար ահագին գումարներ շնորհեց: Այի Եորկիի, Մաքրիգիւղի Ս. եկեղեցին ու դպրոցը իւր մեծ պարտէզով եւ եկեղեցւոյ բոլորտիքը գտնուած գետիններն եւ կալուածներն ամբողջովին ինքը ընծայած է Ազգին: *Իւր շնորհիւ* Զէյթին Պուռնուի, Իզմիրի եւ Հէրէքէի գործարաններուն մէջ բազմաթիւ Հայազգիներ ապրելէ զատ՝ տարազագործութեան եւ երկաթագործութեան արհեստը կատարելագործելով, իրենց հայրենիքը լուսաւորած եւ շատեր այս առիթով կ'ապրին: Գաւառաց մէջ

դպրոցներու եւ եկեղեցեաց մեծ գումարներ տուած է։ *Արեւելեան պատերազմի ժամանակ* (1853—55) երեք տարի Ազգ․ Հիւանդանոցի մէջ փամփուշտ շինել տալով մեծ հասոյթ մը գոյացուցած եւ նոյն Հաստատութեան պատսպարեալ հացն ու միսը շնորհել տուած է․․․ որուն իմ մանկութիւնս վկայ է, վասն զի անդ ներկայ էի․․․»։

Գրիգոր Մ․ Տատեան

1882 *Մայիս* 11

*Մաքրիգիւղ* (Մասիս, 1882 *Թ*․ 3186)։

*Գրիգոր–Միհրան Պէյ* երկու անգամ *ամուսնացած է․ նախ* Օր․ Նեւրիկ Միսաքեանի *հետ* (*ծն*․ 1844, † 1875 *Մայ*․ 23), *որ Թոռնուհին է* Վարդերես Ամիրայ Միսաքեանի եւ Տիկ․ Տիրուհիի (*ծն*․ *Աճիչէգմէլեան*), *որ* 1845 *Մայիս* 3*ին մեռած է* 22 *տարեկան*[1]։ *Պսակը տեղի ունեցած է* 1860*ին եւ Նեւրիկ* 15 *տարի «երկու հիմնուրց ազգ․ Գերդաստաններու* — Տատեան եւ Միսաքեան — *միջեւ կապ եւ դարդ հանդիսացած»* *է* (Մասիս, 1875 *Թ*․ 1687)։

*Ըստ* Տիկ․ Զարուհի Ֆէրուհխեանի (*Իսթանպուլ*) *Գրիգոր Պէյ եւ Տիկ․ Նեւրիկ ունեցած են* երեք *զաւակ*․ Թագուհի, Պետրոս եւ Պօղոս։ — ա) Թագուհի (*ծն*․ 1869,

[1] *Տիկ․ Տիրուհի Թաղուած է Խասգիւղի գերեզմանատունը եւ ունի* 20 *տողնոց տապանագիր մը* (*Տե՛ս* Յակոբ Վարժապետեան, *Յիշատակարան Հարիւրամեայ Յոբելեանի Խասգիւղի Ս․ Ստեփանոս եկեղեցւոյ*, *Կ․ Պ*․ 1931, *էջ* 190)։

մկրտուած է 1869 Փետր. 7ին) ամուսնացած է Պոլիս եւ ունեցած 2 զաւակ — Նեւրիկ եւ Կարապետ. 1919—20ին Ամերիկա գաղթած է՝ ամուսնին մահէն վերջ, ուր երկրորդ անգամ ամուսնացած Պալիկեան անունով անձի մը հետ՝ մեռած է 1960—64ի ընթացքին: — բ) Պետրոս՝ ծնած 1866 Յուլ. 3ին՝ մկրտուած է 1866 Յուլ. 11ին՝ ձեռամբ Տ. Թադէոս քհնյ.ի եւ կնքահայրութեամբ Ստեփան Միսաքեանի (եղբայր Տիկ. Նեւրիկի): Իր ուսման եւ գործի մասին կը գրէ



Նեկտար Հանըմ
Բ. կին Գրիգոր Միհրանի

Յ. Դարբինեան 1904*ին*՝ Բաբերդէն. «...*Ամիրաներու, Պէյերու, Փաշաներու բեղուն ընտանիքէ մը սերած... զաւակն է* Գրիգոր Պէյին (*Տատեան*)... *Նախնական կրթութիւնը* Մաքրիքէօյի Տատեան *եւ* Սամաթիոյ Մեսրոպեան *վարժարաններուն մէջ առնելէ յետոյ՝ երկու տարի ալ աշակերտած է* Ռոպէրթ Գոլէճի. *այնուհետեւ մտած է* Պ. Պրիւոյի Երկրաչափական Վարժարանը, *որմէ շրջանաւարտ իբրեւ* ճարտարագէտ–երկրաչափ՝ *ղրկուած է* Տրապիզոն, Կարին եւ Բաբերդ՝ *միշտ միեւնոյն պաշտօնով եւ անխոնջ յարգուելով... (Բաբերդի) վարժարանը սիրած ա՛յն յարկն է, ուր ամէնէն շատ ու ամէնէն յաճախ կ'այցելէ իր խրախուսիչ խօսքերով ու քաջալերող նուէրներով: Ու սակայն ո՛չ թէ* այս տարի միայն, Ուսումնական խորհուրդի Ատենապետ ըլլալուն համար ...*ինքն եղաւ այս տարուան սկիզբները* Լսարան–Ընթերցարան *մը հիմնելու գաղափարին ոյժ տուողներուն առաջինը*...» (Արեւելք, Կ. Պ. 1904 *թ.* 5752): — 1907*ին Պոլիս է եւ նուէր մը կ'ընէ* Մաքրի գիւղի դպրոցին (Արեւելք, 1907 *թ.* 6392), 1918*ին, ուրիշ Հայերու հետ, Պետրոս Պէյ Տատեան Սեւ ծով տարուած եւ ծովը թափուած է:*

*Ըստ* Տիկ. Զ. Ֆէրուհիխանի՝ *Պետրոս Պէյ ամուսնացած է* Վերապատուելի Թաշճեանի *կնոջ զարմուհիին հետ եւ ունեցած* չորս *զաւակ.* Ներիկ, Հայկ, Զապէլ, Գրիգոր, *որոնց մասին ծանօթութիւն կը պակսի:* —

գ) Պօղոս. — *Գրիգոր եւ Ներիկի* երրորդ *զաւակը*՝ Պօղոս Պէյ Տատեան *ծանօթ է աւելի* «Պօղոս Պէյ Գնդապետ» *անունով: Իր մասին տուած են ծանօթութիւններ* Տիկ. Զ. Ֆէրուհիխանէ, Տիկ. Շ. Ազատեանէ, Պր. Վահրամ Ճամուզեանէ *եւ* Պր. Վահրամ Պէյ Տատեանէ. *վերջինս իր* որդին է, *որմէ քաղած է* Պր. Գէորգ Բամպուքճեան (*Պոլիս*) *հետեւեալ թանկագին տեղեկութիւնները: Կը յայտնեմ մասնաւոր շնորհակալութիւնս երկուքին ալ:*

*Գնդապետ Պօղոս Պէյ ծնած է* Այ-Ստեփանօ 1862*ին. նախակրթութիւնը ստացած է Մագրիգիւղ* Արծրունեան վարժարանի *մէջ*, *շրջանաւարտ* Հարպիյէյի զինուորական վարժարանէն, *մկայուած* Անասնաբուժական վարժարանէն: *Իբր անասնաբոյժ ծառայած է բանակին մէջ* Մալաթիա, Էտիրնէ, Ուզունքէօփրիւ, Հատըմգիւղ, *եւ այլն: Մասնակցած է Պալքանեան, Ընդհանուր եւ Զանաքքալէի պատերազմներուն: Ստացած է* 7 *տեսակ պատուանշաններ: Իբր* 1890*ին ամուսնացած է* Օր. Խօժէնի Յարութիւն Փոխարեանի *հետ, որմէ ունեցած է* 7 *զաւակներ.* 1) Լեւոն Պէյ (*ծն.* 1892) *Պոլսոյ* «Թիւնէլ»*ի վարչութեան մէջ եղած է* Chef de gare. 1923*ին մեկնած՝ նախ* Couriers Ardèche *գործատունը աշխատած է, յետոյ օճառի գործատուն մը: Իբր* 1920*ին* Օր. Մառի Թէրզեանի *հետ ամուսնանալով՝ ունեցած է* 2 *մանչ եւ* 1 *աղջիկ, որոնց անուններն են, ըստ* Տիկ. Շուշանիկ Ազատեանի՝



Պօղոս Գնդապետ
(որդի Գրիգոր Միհրանի)

Տիրան, ժազ *եւ* ժիլպէր: — 2) Երուանդ Պէյ (*Ծն. Մալաթիա* 1895) *վկայուած է* Առեւտրական բարձրագոյն վարժարանէն. *Ա. Ընդհ. պատերազմին եղած է թարգման Գերմաններուն, յետոյ ենթասպայ զինուորական, պատերազմէն վերջ՝ Ելեկտր. հանրակառքի եւ փապուղիի քննական բաժնի վերակացու,* 1941*ին հանգստեան կոչուած. հայերէնէ զատ՝ գիտէր թրքերէն, Ֆրանսերէն, գերմաներէն, անգլիերէն, ռումանե–*

րէն. ամուսնացած Հերմինէի հետ՝ ունեցած է Սիւզան (ամուսնացած «զարֆճը» Հրաչ Մէնէնտեանի հետ), Սիրվարդ (ամուսնացած երկաթագործ Յակոբ Ճիկանօղլուի հետ) եւ Ժիրայր (արհեստով դարբին, կը գտնուի Գերմանիա): Մեռած է Պոլիս 1958ին: — 3) Էլիզ (ծն. 1898) ամուսնացած է Յուսիկ Պարսամեանի հետ, որուն մահէն վերջ՝ անցած Ֆրանսա՝ ամուսնացած է Մինասեանի մը հետ, զաւակ բնաւ չէ ունեցած, կը գտնուի Մարսիլիա: — 4) Յարութիւն (ծն. իբր 1900) երեք կամ չորս տարեկանին պատուհանէն ինկած մեռած է: — 5) Մելինէ–Մանիշակ (ծն. 1899 Օգ. 9. † 1924, ամուրի): — 6) Վահրամ Պէյ (ծն. 1904 Սեպտ. 22, Խոտրճէ) ուսած է նախ Ֆէրիգիւղի ազգ. դպրոցը, յետոյ Էսայեան վարժարանը եւ ամէնէն վերջ Բանկալթիի Վիեննական Մխիթարեան Վարժարանի Միջնակարգէն վկայուած է: Մեքենագիտութեան հետեւելով՝ արհեստը կատարելագործելու համար 1923ին անցած է Պարիս, ուր զանազան գործատուններու մէջ աշխատած է: 1927ին Պոլիս դառնալով՝ զինուորագրուած եւ Կիմիւշսուի հիւանդանոցը առողջապահական ընթացքի հետեւելով՝ յիսնապետի աստիճան ստացած է... 1931 Սեպտ. 18ին ամուսնացած է Վառվառա Լիղորաթոց (յետոյ Վերժին) հետ, որմէ ունեցած է. — ա) Արմենակ (ծն. 1932), որ Մխիթարեան Վարժարանի Նախակրթարանէն վկայուած է. արհեստով զինգոգրաֆ է: — բ) Պերճ (ծն. 1937

Սեպտ. 20) ուսած է Փէրիգիւղի նախակրթարանը. ռադիոյի նորոգիչ է. Անաստաս անունով աղջկան մը հետ ամուսնացած, զաւակ չունին: — գ) Նատիա (ծն.



Տիկ. Եագութ Թօփալեան

1940 Յունիս 7) վկայուած է Ֆէրիգիւղի Նախակրթարանէն. Գրիգոր Ալպէյազի հետ ամուսնացած՝ Ազաւնի անունով աղջիկ մ'ունին: — դ) Ալէքսան (ծն. 1943 Մարտ 20) Սառնարանի մեքենագէտ է. այժմ (1964) զինուոր է: — ե) Հիլտա (ծն. 1946 Սեպտ. 26) յաճախած է Ֆէրիգիւղի վարժարանը: — 7) Զարեհ Պէյ՝ Պօղոս Պէյ Գնդապետի զաւակը՝ ծնած Էտիրնէ 1906ին՝ յաճախած է Մէրամէթճեան, Էսայեան եւ Բանկալթիի Մխիթարեան Վարժարանը եւ վերջնոյս Միջնակարգէն վկայուած է: Ի՛նքն է որ առաջին անգամ Թուրքիա ներմուծած է Պարիսէն *Duiant Pistolé* ինքնաշարժի ներկը.

ունեցած են. — ա) Մելինէ, որ նոյնպէս ամուսնացած է Կարպիս Պարոնեանի հետ. — բ) Լօժէնի, որ ամուրի է. — գ) Աղաւնի, որ մահացած է փոքր տարիքի մէջ: Զարեհ Պէյ Տատեան մեռած է 1964 Յունուար 31ին (Տէ՛ս Մարմարա, Կ. Պ. 1964, Փետր. 1): — Վերջին վայրկենին ծանօթացանք թէ Պօղոս Պէյ — Լօժէնի ութերորդ զաւակ մ'ալ ունեցած են. — Հրանդ (ծն. 1894, † 1897), որ Մաքրիգիւղի գերեզմանատան մէջ ունի տապանագիրս.

Աստ հանգչի
Փոքրիկն Հրանդ Պէյ
Տատեան որդի
Գնդապետ Պօղոս Պէյ
Տատեանի
1894—1897

Պօղոս Պէյ Գնդապետ մեռած է 1934 Օգ. 17ին եւ թաղուած Շիշլիի Հայոց գերեզմանատունը, իսկ Տիկ. Լօժէնի մեռած է 1941ին: Պօղոս Պէյ Գնդապետի կլիշէն շնորհեց ազնուօրէն Տիկ. Զարուհի Ֆէրուհխեան (Պոլիս):

Ինչպէս տեսանք՝ Տիկ. Զարուհի Ֆէրուհխանի համեմատ Գրիգոր Պէյ եւ Տիկ. Նուրիկ երեք զաւակ ունեցած են. — Թագուհի, Պետրոս, Պօղոս: Մեզի ծանօթ են երկու զաւակ եւս. — Յովհաննէս-Շաւասպ եւ Տիրուհի-Հռիփսիմէ, որոնց երկնանուն ըլլալէն՝ կը հետեւցնենք թէ նախորդներն ալ

*կրկնանուն ըլլալու էին*: *Տեսնենք, ուրեմն*. — դ) Յովհաննէս-Շաւասպ (*ծն*. 1873 *Յունիս* 14, *մեռած է* 1873 *Օգ*. 29*ին*) *ունի* «Եղերգ» *մը* Գ. Մանսուրեանցէ *ձօնուած*, 6 1941*ին* *ամուսնացած* Օր. Արմէնուհիի *հետ*՝ *քառեակ* (*Տե՛ս* Փունջ, *Կ*. *Պ*. 1873 *Թ*. 822, *Սեպտ*. 1): — ե) Տիրուհի-Հռիփսիմէ (*ծն*. 1862, † 1876 *Յունուար* 13) «անբուժելի ախտով» *մը հրաժեշտ տուած է կեանքին*՝ 14 *գարուններ տեսնելէ վերջ, որուն ձօնած է* Ստեփան Վրդ. Ոսկերիչեան «*Եղերգ*» *մը* 14 *տուն* (*Տե՛ս* Լոյս, *Կ*. *Պ*. 1876 *Թ*. *Ե*, *էջ* 72): — *Գրիգոր Պէյ եւ Տիկ*. *Նեւրիկ* վեցերորդ *զաւակ մ'ալ ունեցած են* — Սիմոն-Խոսրով, *զոր գտաւ* Պր. Գ. Բամպուքճեան (*Պոլիս*) Մաքրիգիւղի «Մկրտութեանց Տոմար»*ի մէջ*, *ահա*. «Սիմոն-Խոսրով, *որդի Գրիգոր էֆ*. *Տատեանի*, *ծնած* 1867 *Սեպտ*. 1*ին*»: *Սիմոն-Խոսրով* մանկամահ *եղած է ըստ Մաքրի-գիւղի* «Ննջեցելոց Տոմարի», *ահաւասիկ*. «1867 *Սեպտ*. 20 — Սիմոն-Խոսրով Գ. *Տատեան*, 19 *օրուան*, *հիւանդութիւն*՝ *չէնքէ* (*կղակ*), *եկեղեցւոյ բակը*»: *Սիմոն-Խոսրով եւ Յովհաննէս-Շաւարշ* տապանագիր *ունին* Պագրքէօյ:

*Հետեւաբար Գրիգոր եւ Նեւրիկ ունե-ցած են* վեց զաւակ. — Թագուհի, Պետրոս, Պօղոս, Յովհաննէս-Շաւասպ, Տիրուհի-Հռիփսիմէ, Սիմոն-Խոսրով: — Տիկ. Նեւրիկ *Թարմ հասակի մէջ վախճանած է* 1875 *Մայ*. 23*ին*: *Այդ առթիւ Գերդաստանի մտերիմ մը կը ողայ*, *յիշելով*. «...*վաղամեռիկ Տիկնոջ*

անստգիւտ կենցաղն, ընտիր կրթութիւնն, ամուսնական առաքինութիւններն ու խոնարհամիտ ու հեղահամբոյր բնաւորութիւնը... *Ամէնքն տխրադին կը նայէին* չորս մատաղաբոյս զաւակաց վրայ, զոր կը թողոյր նա որբ եւ երկարատեւ հիւանդութեանը մէջ մայրական սրտին մեծագոյն կսկիծն ու տառապանքն անոնց վրայ կը դառնար... *կը դիտէին* զվսեմ. Գրիգոր Պէյ Տատեան, որ այսքան աղետից առջեւ անընկճելի արիութեան պատկեր մը կը հանդիսար ամուսնական անպայլելի սիրոյ, որ կը հաւատայ հաստատութեամբ թէ Սէրը զօրաւոր է քան զմահ եւ գերեզմանէն անդին կը սլանայ՝ ոգի ընդ ոգի խառնելով...» (Մասիս, 1875 *թ.* 1687: — *Տե՛ս* Մամուլ, 1875, *էջ* 146): *Կը թաղուի* Մաքրիգիւղի եկեղեցւոյ *շրջապատին մէջ* (Փունջ, 1875 *թ.* 988):

*Գրիգոր–Միհրան Պէյ՝ Տիկ. Նուրիկի մահէն վերջ՝* երկրորդ անգամ *ամուսնացած է* 1876*ին* Օր. Նիկիար–Նեկտարի *հետ, որմէ ունեցած է.* Եազութ *եւ* Արուսեակ, *որոնց մասին կը գրէ ինծ* Պր. Գ. Բամբուքճեան՝ *քաղելով* Պր. Վահրամ Ճամուզեանէ (*Պոլիս*). — 1. Եազութ (*ծն.* 1877) *վկայուած է* Մաքրիգիւղի *Ֆրանս. վարժարանէն.* 1906 *Յուլ.* 13*ին ամուսնացած է* Յակոբ Թօփալեանի *հետ եւ* 1920*ին ընտանեօք* Ամերիկա *մեկնած, ուր Յակոբ* 1938—39*ին մեռած է, իսկ Տիկ. Եազութ կը մեռնի* 1961—62*ին:* *Անոնց զաւակներն են.* Շաքէ, Ալիս, Մելքոն: Տիկ. Եազութ Թօփալեանի *մանչը՝*

Մելքոն (*անգլ.* Malcolm), *որուն նամակ մ'ուղղած էի՝ հաճեցաւ տալ ծանօթութիւն մը իր մօր եւ ընտանիքի մասին՝* Նիւ Ճըրզիէն (*Ամերիկա*) 1964 *Յուն. 3ին*:

«*Մայրս՝* Եազուբ Տատեան Թօփալեան (*ծն. Մաքրիգիւղ* 1878 *Յունուար* 24) *յաճախած է Մաքրիգիւղի կաթողիկէ դպրոցը.*



Եազուբ – Յակոբ Թօփալեան ընտանիք

ամուսնացած Կեսարացի Յակոբ Թօփալեանի հետ՝ ունեցած են հինգ զաւակ, որոնցմէ 2 աղջիկ մանկամահ եղած են: Ողջերն են. 1. Նուքէ, ամուսնացած Եդուարդ Թուլուքեանի հետ՝ ունի մանչ մը՝ Ռոպէր, որ բժիշկ է եւ աղջիկ մը՝ Ճուլիէն, որ ամուսնացած է Մեսրոպեանի հետ: — 2. Ալիս՝ ամուսնացած Արմէն Սարգիսեանի հետ՝ ունի մանչ մը՝ Ռիքի: — 3. Մելքոն՝ ամուսնացած Անահիտ Նորեանի հետ՝ ունի 3 զաւակ. Սուզան (ծն. 1954), Էլիզ (ծն. 1956), Մարք (ծն. 1960): — 1922ին Նիւ Եորք փոխադրուած են ծնողքս. մայրս մեռաւ 1962 Փետր. 23ին ու թաղուեցաւ Նիւ Եորքի արուարձան Queens County ընտանեկան դամբարանին մէջ, ուր թաղուած էր նաեւ հայրս»:

Պր. Մելքոն սիրով տրամադրեց մեզ իր մօրը եւ ընտանիքին (1915ին) կլիշէները: — 2. Արուսեակ՝ կրկնանուն է — Հրուդա (Հոռ°ւթ) — Արուսեակ, ինչպէս Մաքրիգիւղի եկեղեցւոյ «Մկրտութեանց Տոմար»ի մէջ գրուած է. — «Վառօղապետ Գ. Պէյ Տատեանի դուստր Հրուդա–Արուսեակ, ծնեալ 22 Յունուար 1882, կը մկրտուի ձեռամբ Տ. Յովհ.ի եւ կնքահայրութեամբ Յովհաննէս Զայեանի. կինը՝ Նիկեար»: Հրուդա–Արուսեակ յաճախած է նախ Տատեան վարժարանը, յետոյ Փրանս. Քոյրերու դպրոցը: 1906 Յուլ. 13ին ամուսնացած է Կեսարացի կերպասավաճառ Հայկ Ճամուզեանի հետ. մեռած է 1949 Յունուար 30ին եւ թաղուած

Գաւառկիւղ։ Իր ամուսինը՝ Հայկ՝ ծնած 1876 Դեկտ. 5ին՝ յաճախած է նախ Կեսարիոյ Թաղային դպրոցը, յետոյ 1889ին մտած է Ս. Կարապետի գիշերօթիկ վարժարանը, որմէ չրջանաւարտ եղած է 1895ին։ 1897ին



Նազուք եւ Արուսեակ ամոլներ

անցած Պոլիս՝ զբաղած է զանազան գործերով, 1926—28ին եղած է Հողաբարձու Ազգ. Հիւանդանոցի: Մեռած է 1944 Մայիս 6ին եւ թաղուած Գատըգիւղ:

Արուսեակ – Հայկի զաւակներն են. ա) Հերմանն–Պետրոս (ծն. 1907 Ապր. 26) նախ զբաղած է գործագործութեամբ. 1925ին մեկնած է Ամերիկա՝ ուսանելու համար. 1931ին աւարտելով ուսումը՝ մեկնած է Պարիս, յետոյ Հոլանդա, ուր ամուսնացած է Հոլանդուհիի մը հետ: Մեռած է 1962 Հոկտ. 26ին: — բ) Եւփիմէ–Սեզարին՝ ծնած 1908 Յունիս 5ին՝ մեռած է 1917 Օգ. 30ին եւ թաղուած Գնալը: — գ) Վահրամ–Գրիգոր՝ ծնած Գատըգիւղ՝ յաճախ է Արամեանն վարժարանը, յետոյ Մօտայի Assomptionistesներու վարժարանը, որմէ վերջ Զիֆթէ–Հաւուզլար Bythinia High Schoolի Միջնակարգէն վկայուած է: Նախ հօրը մօտ աշխատած՝ յետոյ մտած է Mécanique եւ Wertheim հաստատութիւններուն մէջ: 1944ին ամուսնացած է Maria Caglia անուն Իտալուհիի մը հետ: Զաւակ չեն ունեցած: — դ) Արամ–Արմէն (ծն. 1911 Դեկտ. 26, † 1916 Օգ. 30): — ե) Պերճ–Անդրուշան (ծն. 1915 Յունիս 11, † 1916 Օգոստ. 18): — զ) Սեզարին՝ ծնած 1917 Հոկտ. 6ին՝ մեռած է 1920 Յուլ. 6ին՝ թաղուած է Գատըգիւղ: — է) Պերճ՝ ծնած 1919 Մարտ 26ին՝ մեռած է 1940ին թաղուած Գատըգիւղ»:

Գրիգոր–Միհրան Պէյ Տատեանի ընտա–

նեկան բնակարանը Մաքրիգիւղ եղած է, ուր Ստամպուլ–Ճատտէսիի վրայ փայտաշէն ընդարձակ տուն ունեցած է, որ տարիներ առաջ փլցուած է:

Գրիգոր–Միհրան Տատեան իր կեանքը կնքած է 1882 Դեկտ. 27ին: Պոլսոյ Հայրենիք (1882 Թ. 1211, Դեկտ. 28) կարճ լուր մը կու տայ: «Կը լսենք թէ Գրիգոր էֆ. Տատեան երէկ յանկարծամահ եղեր է»: Մասիս (1882 Թ. 3374, Դեկտ. 28) եւս կը գրէ. «Ցաւելով կ'իմանանք թէ... Գրիգոր էֆ. Տատեան կարճատեւ հիւանդութենէ մը յետոյ՝ երէկ իր մահկանացուն կնքեց 48 ամաց...»: Թէրճ. էֆքեար (1882 Թ. 1614) գրածը յառաջ բերած եմ ուրիշ տեղ. թերթը կը շեշտէ որ «Հանգուցեալը շատ բարեսիրտ եւ աղքատասէր անձ էր, շատ շատերուն օգնած ու բարիք ըրած էր»: Թաղուած է Մաքրիգիւղի Ս. Աստուածածին եկեղեցւոյ ընտանեկան դամբարանին մէջ: Իր կլիշէն շինեց թոռը՝ Պր. Մելքոն Թօփալեան (Նիւ Ճըրզի, Ամերիկա):

Տիկ. Նիկիար–Նեկտար, Գրիգոր Պէյ Տատեանի կինը ծնած է 1850ին. իր մայրն է Եւա: Տիկ. Նիկիար ամուսինին մահէն վերջ երկար տարիներ ապրեր է. Պետրոս Պէյի մահէն շատ ազդուելով՝ 1921ին կաթուածահար կ'ըլլայ. 1929ին Ամերիկա կը մեկնի եւ հոն 1936ին 86 տարեկան կը վախճանի:

8. Հոփիսիմէ. — Յովհաննէս Ամիրայ Տատեանի ութերորդ եւ վերջին զաւակը՝ Հոփիսիմէ՝ ծնած է 1836 Մարտ 6ին եւ 1852

Հոկտ. 14ին մեռած է: 1852 Հոկտ. 21ին կը գրէ Իզմիրի հայաթերթը. «Արքունի Վառօդապետ Վսեմ. Տատեան Յովհաննէս Ամիրային ծաղկափթիթ դուստրը՝ Հռիփսիմէ Օրիորդը ցաւալի հիւանդութենէ ետեւ ամսոյս 14ին առ Աստուած փոխեցաւ...» (Արշալոյս Արարատեան, Զմիւռնիա 1852 թ. 427):

*

Աստ կը վերջանայ Տատեան Գերդաստանի Ա. Տոհմի, այսինքն՝ Յովհաննէս Ամիրայի եւ իր սերունդի պատմութիւնը:

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

Հետեւեալ քանի մը լրացուցիչ ծանօթութիւնները գործիս ընթացքին ձեռք բերած ենք.

1. Տատ. Առաքել Ամիրայի Տիկնոջ մականունը երկու ձեւով յիշուած է. 1. Պեռենց եւ 2. Ալիքսանեան: Ակնի Կամարակապ Գիւղը ունեցած է «Ալիքսանեան» Գերդաստան մը, որուն ննջեցեալներու Տապանաքար-Արձանագրութիւնները կան Պոլսոյ Էտիրնէ-Գափուի Հայոց գերեզմանատան մէջ: Մեր ազնիւ բարեկամը՝ Պր. Գ. Բամպուքճեան (Պոլիս) մեր տրամադրութեան տակ դրած էր այդ Արձանագրութիւնները՝ հաւանական համարելով թէ Տատ. Ամիրայի Տիկինը կրնայ ազգականական կապ ունենալ Կամարակապցի Ալիքսանեան Գերդաստանի

հետ ։ Դժբախտաբար սակայն մեզի կը պակսի տեղ՝ տալու համար զանոնք հոս ։

2․ Մեր աչքէն վրիպած էր Սիմոն Ամիրայի ստացած արքայական նուէրը․ — «Շնորհեալ արքայ արքունի Վառօղապետ Սիմոն Ամիրային զնշան ականակապ եւ զգենուլ զկերպարանս զօրէն այլազգեաց» (1829ին) (Աւետիս Պէրպէրեան, Պատմ․, էջ 203) ։

3․ Սիմոն Ամիրայի որդին՝ Թովմաս ունեցած է Տիգրան անունով զաւակ մը, որուն մահուան թուականը կը կարծենք գտած ըլլալ․ — Սկիւտարի Ս․ Կարապետ եկեղեցւոյ Ննջեցելոց Տոմարին մէջ կայ յիշատակութիւնը 1867 Նոյ․ 10ին մեռած Տիգրան Պէյ Թովմասեանի մը, ուր նշուած է «Վառօղապետի ցեղէն» բացատրութիւնը ։ Հաւանօրէն հոս Տիգրան իր հօր անունը իբրեւ մականուն ունեցած է․ իսկ «Վառօղապետի ցեղէն» շատ լաւ կը յարմարի, զի Տիգրան թոռն է Սիմոն Ամիրայ Վառօդապետի ։

4․ Սիմոն Ամիրայի երկրորդ աղջկան (անունը անծանօթ) փեսայ՝ Անդրէասի մականունն է Եկէնեան, որ 1847ին Բերայի Ս․ Երրորդութիւն եկեղեցւոյ եկեղեցպանն է (Մարտիրոս Հանէսեան, Յիշատակարան 1932, էջ 61) ։ Թ․ Ազատեանի (Աստղաբերդ, էջ 163) յիշած Սիմոն Ամիրայի չորրորդ որդին — Անդրէաս — հաւանօրէն այս Անդրէաս Եկէնեանն է՝ Թ․ Ազատեանէ սխալ հասկցուած ։



